Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



8
ՕԳՈՍՏՈՍ
1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանքի՝ 51—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1988 թվականի հուլիսի 29-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։

Պլենումը քննարկեց «XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումների իրականացման գործնական աշխատանքի մասին» հարցը։ Այս հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԸ։

Պլենումի մասնակիցներին հնարավորություն էր ընձեռվել նախապես ծանոթանալ փաստաթղթերի նախագծերին, որոնք ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն պատրաստել էր՝ ելնելով XIX կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթներից։

Զեկուցման առթիվ մտքերի փոխանակությանը մասնակցեցին՝ Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, Ղազախստանի կոմկուսի Կուստանայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Պ. Դեմիդենկոն, ՍՄԿԿ Օմսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ե. Դ. Պոխիտայլոն, ՍՄԿԿ Ստավրոպոլի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Ս. Բուդիրևը, ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր ընկ. Ն. Ֆ. Վասիլևը, Ուկրաինայի կոմկուսի Ժիտոմիրի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Մ. Կավունը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ֆ. Սոլովյովը, ՍՍՀՄ առևտրի մինիստր ընկ. Կ. Զ. Տերեխը, ՍՄԿԿ Սարատովի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ա. Խոմյակովը, Կոստրոմայի Վ. Ի. Լենինի անվան վուշեղենի կոմբինատի ջուլհակուհի ընկ. Վ. Ն. Պլետնյովան, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Կ. Պուգոն, ՍՄԿԿ Բելգորոդի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ֆ. Պոնոմարյովը, ՍՍՀՄ ավիացիոն արդյունաբերության մինիստր ընկ. Ա. Ս. Լիսցովը, ՍՄԿԿ Կալինինի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ֆ. Տատարչուկը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ե. Ե. Սոկոլովը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Կոլբինը, ՍՍՀՄ բուժական և մանրէակենսաբանական արդյունաբերության մինիստր ընկ. Վ. Ա. Բիկովը։

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումը քննարկված հարցի առթիվ ընդունեց որոշում:

Պլենումը նաև ընդունեց «Կուսակցական կազմակերպություններում հաշվետվությունների և ընտրությունների մասին» և «Կուսակցական ապարատի վերակառուցման հիմնական ուղղությունների մասին» որոշումներ:

Պլենումն ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի նախագահությամբ ՍՄԿԿ Կենտկոմի հանձնաժողով կազմելու վերաբերյալ Կենտկոմի քաղբյուրոյի առաջարկությունը՝ սովետական հասարակության քաղաքական սիստեմի ռեֆորմի իրագործման հետ կապված առաջարկություններ նախապատրաստելու համար:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

---

# XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԳՈՐԾՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1988 թվականի հուլիսի 29-ին

Ընկերներ:

Քաղբյուրոն որոշեց սույն պլենումը հրավիրել քննարկելու XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումների կատարման գործնական միջոցառումները, կոնֆերանս, որը դարձավ վերակառուցման քաղաքական կարևորագույն բնագիծը:

Կոնֆերանսում բոլորս առանձնակի սրությամբ զգացինք, որ կուսակցության, հասարակության մեջ հաստատուն կարծիք է ստեղծվել վերակառուցման գործնական խնդիրների իրականացման աշխատանքն ուժեղացնելու անհրաժեշտության մասին: Այդ մասին ասվեց ամբողջ ձայնով, հատկապես արտադրական կոլեկտիվներ ներկայացնող պատգամավորների կողմից:

Միաժամանակ պահանջ հնչեց՝ կուչ ու ձիգ չանել, սպասողական դիրք չբռնել, ավելի սրությամբ վերաբերվել թերություններին ու վրիպումներին, գործել վճռականորեն, վերացնելով մեր շարժման ճանապարհին եղած բոլոր խոչ ու խութերը: Պատգամավորների ելույթներում ոչ միայն մտահոգություն էր արտահայտվում գործերի ընթացքի առթիվ, այլև, բացեիբաց խոստովանենք, դժգոհություն էր արտահայտվում այն բանից, թե ինչպես են գործում կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները, մեր ղեկավար կադրերը:

Պետք է ուղղակի ասել, ընկերներ. ժամանակը մեզ շտապեցնում է: Ինչի՞ հետ է դա կապված:

Նախ, սկսվում է հաշվետու-ընտրական կամպանիան կուսակցության մեջ:

Երբ մենք ձեզ հետ քննարկում էինք համամիութենական կոնֆերանս անցկացնելու ժամկետի հարցը, ապա ելնում էինք նրանից, որ այն տեղի ունենա կուսակցության մեջ հաշվետվությունների և ընտրությունների նախօրեին, որպեսզի կոմունիստների հաշվետու-ընտրական ժողովները և շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային, երկրամասային կուսակցական կազմակերպությունների կոնֆերանսներն անցնեն համակուսակցական համաժողովի քաղաքական հիմնադրույթների հիման վրա:

Այնուհետև: Կոնֆերանսում մենք պայմանավորվեցինք, որ արդեն այժմ առանց տարուբերումների պետք է կազմակերպել քաղաքական սիստեմի ռեֆորմի ամբողջ աշխատանքը, ընդ որում այն հաշվով, որ հաջորդ տարվա գարնանն ընտրություններն անցկացվեն նոր իրավական հիման վրա և գումարվի ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումար:

Կոնֆերանսի պատգամավորները վճռականորեն արտահայտվեցին տնտեսական

ռեֆորմի հետագա խորացման օգտին, քանի որ դրա հետ են կապված արմատական սոցիալ-տնտեսական խնդիրների իրագործումը և ժողովրդի կյանքի բարելավումը:

Այնպես որ, ինչ կողմից էլ մոտենանք, ժամանակ կորցնել չի կարելի, պետք է գործել և գործել վճռականորեն, բարձրացնել պահանջկոտությունը գործնական հարցերի լուծման համար, որոնք հետզհետե քաղաքական ավելի սուր բնույթ են ստանում:

Ընդհանուր առմամբ, ընկերներ, հասել է ձեռնարկումների, կոնկրետ գործերի ժամանակը, բոլոր կուսակցական կազմակերպությունների, մեր բոլոր կադրերի, բոլոր կոլեկտիվների, յուրաքանչյուր աշխատավորի հարաճուն պատասխանատվության ժամանակը:

Բոլորս հնարավորություն ունեինք այս շաբաթների ընթացքում վերստին խորհել կոնֆերանսի նշանակության շուրջը, հիմնավորապես գնահատել նրա արդյունքները, ընդունած որոշումները: Կարելի է ասել, որ տեղի ունեցավ կուսակցության կյանքի աննախադեպ իրադարձություն: Կոնֆերանսը ալեկոծեց ողջ հասարակությունը: Վերակառուցման անդաստանում խոշորագույն ներդրում հանդիսացավ հենց նրա մթնոլորտը. անկաշկանդվածություն, բանավիճայնություն, սկզբունքայնություն, պահանջկոտություն, հասունացած պրոբլեմների բացեիբաց քննարկում:

Բարոյաքաղաքական նոր մթնոլորտում, իրատեսության մթնոլորտում անցած կոնֆերանսը կուսակցությունը հարստացրեց համաժողովրդական քաղաքական դըպրոցի, հրապարակայնության և դեմոկրատիայի դպրոցի նոր փորձով: Կոնֆերանսի նկատմամբ հետաքրքրությունը չի թուլանում: Ծահագրգիռ կերպով քննարկվում են նրա առաջադրած և լուծած բոլոր հարցերը: Կոնֆերանսը լայն արձագանք հարուցեց նաև ամբողջ աշխարհում:

Կոնֆերանսը կրկին համոզչորեն ցուցադրեց մեր կուսակցության հզոր պոտենցիալը: Ես կասեի, որ կուսակցությունն ասես շտկեց ուսերը, ուղղվեց, վստահորեն խոսեց լիահունչ ձայնով, նորարարաբար, ժողովրդի հանդեպ հսկայական պատասխանատվության զգացումով: Կոնֆերանսը հավաստեց, որ ՍՄԿԿ-ն հանդես է գալիս որպես վերակառուցման հիրավի շարժիչ ուժ, նրա նախաձեռնող ու ճանաչված ղեկավար, որն արտացոլում է ժողովրդի և սոցիալիզմի արմատական շահերը: Սա է մեր կուսակցական կոնֆերանսի առավել կարևորագույն քաղաքական արդյունքը:

Մի խոսքով, այսօր կարելի է վստահությամբ ասել, որ կոնֆերանսից հետո թե կուսակցությունը, թե հասարակությունը այլևս այն չեն, ինչ երեկ էին: Կոնֆերանսի նախապատրաստումն ու անցկացումը նոր բարձունքների հասցրին երկրի թե անցյալի, թե ներկայի և թե ապագայի ըմբռնումը:

Պատգամավորները խստիվ դատապարտեցին անցյալի սխալներն ու հանցագործությունները: Դրա հետ մեկտեղ նրանք կտրականապես մերժեցին սովետական ժողովրդի պատմական նվաճումների վրա խաչ քաշելու փորձերը: Կոնֆերանսում սկզբունքային դիրքերից գնահատական տրվեց վերակառուցման ընթացքին, նրա նվաճումներին, թերություններին ու վրիպումներին: Կարելի է վստահորեն ասել, որ կոնֆերանսը մեզ հասցրեց հասարակության նորացման ուղիով մեր առաջընթացի պրոբլեմների ու խնդիրների նոր գնահատականների:

Կոնֆերանսը ցույց տվեց կոմունիստների, ողջ ժողովրդի անբավ ձգտումը՝ հետևողականորեն առաջ մղելու վերակառուցումը, անշրջելի բնույթ հաղորդելու նրան, եռանդագին լուծելու գործնական հարցերը ներքին և արտաքին քաղաքականության բոլոր ասպարեզներում:

Դրա հետ մեկտեղ այն ցույց տվեց, որ հասարակության մեջ դեռևս լիովին չեն հաղթահարված պահպանողական տրամադրությունները, անցյալի կարոտը, կասկածներ սերմանելու, վերակառուցումը ոչ թե որպես պատմական արարում, այլ համարյա թե հասարակության ապակայունացում ներկայացնելու փորձերը: Սա նույնպես չի կարելի հաշվի չառնել, եթե ուզում ենք իրատեսներ մնալ քաղաքականության մեջ:

Կոնֆերանսի պատգամավորները խիստ հաշիվ պահանջեցին այն կուսակցական կոմիտեներից, որոնք տակավին դանդաղ են փոխում իրենց գործունեության ոճն ու մեթոդները, շատ դեպքերում պատրաստակամություն և հմտություն չեն դրսևորում աշխատելու բացախոսության պայմաններում, բանավիճելու, փաստարկելու, համոզելու մարդկանց, բոլշևիկաբար ընդունելու քննադատությունը, ինչպես ուսուցանում էր Վ. Ի. Լենինը:

Ոմանց պարզապես վախեցնում է մարդկանց ոգեշունչ եռանդը, նրանց արթնացած հասարակական-քաղաքական ակտիվությունը: Խոսքով այդպիսիք վերակառուցման կողմն են, միայն թե գրպանի դեմոկրատիայով. հրապարակայնության կողմն են, միայն թե չափավորված քննադատությամբ. նորացման կողմն են, միայն թե պայմանով, որ անձամբ իրենց համար ամեն ինչ մնա սովորական, հին ձևով:

Մեծ դժվարությամբ է ընթանում պայքարը խնամառության դեմ: Բացակայում է կոնկրետ գործի համար կոնկրետ մարդկանցից խստիվ հաշիվ պահանջելը:

Պատգամավորները համոզչորեն ցույց տվեցին, որ արգելակման մեխանիզմը թեպետև բեկված է, բայց դեռևս մեծապես պահպանում է իր ուժը: Կոնֆերանսը օգնեց ավելի լավ հասկանալու այն, թե հին կառուցվածքներն ու մեթոդները որտեղ և ինչպես են կանգնած նորի ճանապարհին, ինչպես են խանգարում նրան, թույլ չեն տալիս ծավալվել: Բայց նա նաև ցույց տվեց, որ վերակառուցումը զսպող շատ գործոններ սկիզբ են առնում ձեռնարկվող որոշ քայլերի անբավարար չափով կշռադատված լինելուց, անձեռնհասությունից, սուբյեկտիվ այլ պատճառներից: Այդ ամենը միասին վերցրած մեզ տալիս է ճշմարտացի պատկերն այն բանի, թե մենք արդեն ինչի ենք հասել վերակառուցման այդ փուլում և թե ինչը պետք է դեռ նոր միայն լուծենք, ընդ որում՝ անհետաձգելիորեն:

Վերջին հաշվով, ընկերներ, և սա շատ կարևոր է Կենտրոնական կոմիտեի համար, կոնֆերանսը մեծացրեց բոլորիս իրատեսությունը վերակառուցման ընթացքի գնահատման խնդրում: Այն ցույց տվեց հասարակության վճռականությունը՝ ընթանալ առաջ, հաղթահարելով պահպանողականությունն ու արգելակումը: Միաժամանակ նա արտահայտվեց ամեն տեսակ կեղծ հեղափոխական, կյանքից կտրված լոզունգների, ամեն ինչ մի թափով վերակառուցելու մաքսիմալիստական պահանջների և ուտոպիական փորձերի դեմ:

Կոնֆերանսի նախապատրաստումը, բուն կոնֆերանսը վերածվեցին կադրերի հասունության, նրանց քաղաքական կուլտուրայի, գործողությունների դեմոկրատական ձևերին պատրաստ լինելու քաղաքական ստուգման: Առանձնապես պարզորոշ գծագրվեցին մեր անհետաձգելի գործերը, ռեզերվները, աշխատանքի առավել արդյունավետ ձևերն ու եղանակները: Մենք մշակեցինք և կոնֆերանսում ընդունեցինք որոշումներ, որոնք բովանդակում են բարեփոխումների մի լայն սպեկտր, որոնք պետք է ներառնեն սոցիալիստական հասարակության ազատ ինքնազարգացման պոտենցիալ ուժերը:

Վերստին խորհելով կոնֆերանսի ու տեղի ունեցած բանավեճի արդյունքների շուրջ, մենք, ընկերներ, պետք է հաստատապես տրամադրվենք վճռական շրջադարձ կատարելու դեպի գործնական ձեռնարկումները:

Կոնֆերանսը ցույց տվեց. թե կուսակցության մեջ, թե ժողովրդի մեջ վերակառուցմանը զորավիգ լինելուց հետո առանձնապես համառորեն է առաջ քաշվում խոսքի ու գործի միասնության, սեփական գործողությունների, հավասարապես նաև անգործության համար պատասխանատվության պահանջը, որը բազմիցս խախտվում էր անցյալում: Կուսակցության կադրերը կուսակցական այդ անխախտ օրենքը պարտավոր են նախ և առաջ ուղղել իրենք իրենց: Գործ է հարկավոր, հարկավոր է վերահսկել ընդունված որոշումների կատարումը: Հակառակ դեպքում անխուսափելի են հին սխալների կրկնությունները: Այսպիսին է, ըստ էության, պատգամավորների միահամուռ կարծիքը: Ես կսահմանափակվեի այս հակիրճ դիտողություններով, խոսելով կոնֆերանսի արդյունքների մասին: Բայց ուզում եմ դարձյալ ու դարձյալ կրկնել. ընկերներ, հասել է եռանդուն գործողությունների ժամանակը, և հապաղել չի կարելի: Կոնֆերանսի մշակած քաղաքական հիմնադրույթներն իրականացնելու գործնական ձեռնարկումները միայն անշրջելի բնույթ կհաղորդեն վերակառուցմանը:

Այդ ուղղությամբ ի՞նչ է անում քաղբյուրոն:

Նախ, մշակված է նախագծերի համալիր, որոնցում իրացված են կոնֆերանսի մասնակիցների առաջարկությունները: Դա նախ և առաջ վերաբերում է պարենամթերքին, առևտրին, ժողովրդական սպառման ապրանքներին ու սպասարկումներին, այսինքն այն ամենին, ինչ անմիջականորեն կապված է մարդկանց հետ, վերաբերում է նրանց ամենօրյա կարիքներին ու հոգսերին: Փաստաթղթերը ձեր ձեռքին են, դա ինձ ազատում է դրանք հանգամանորեն շարադրելուց:

Այնուհետև: Ուզում եմ ձեզ իրազեկ պահել, թե մենք ինչպես ենք մոտեցել պատգամավորների արած առաջարկությունների և քննադատական դիտողությունների իրականացմանը: Օպերատիվ լուծում պահանջող բոլոր հարցերի վերաբերյալ քաղբյուրոն հանձնարարություններ է տվել համապատասխան կազմակերպություններում աշխատող կոմունիստներին, ղեկավար կադրերին: Հանձնարարություններ են տրվել

ման հեռանկարային պրոբլեմների վերաբերյալ և սահմանվել են կոնկրետ առաջարկությունների նախապատրաստման ժամկետները: Այդ ամբողջ աշխատանքը քաղբյուրոն կպահի իր տեսադաշտում:

# I.

Ընկերներ: Կոնկրետ իրադրությունն այնպես է դասավորվել, որ կուսակցական կոնֆերանսի որոշումների իրագործումը զուգադիպում է կուսակցության հաշվետու-ընտրական կամպանիային: Կարծում եմ, դուք կհամաձայնեք, որ առաջիկա հաշվետվություններն ու ընտրությունները նման չեն լինի բոլոր նախորդներին:

Այդ ամենը թե Կենտրոնական կոմիտեին, թե տեղերի կուսակցական կոմիտեներին պարտավորեցնում է հիմնավորապես նախապատրաստվել և ամենաբարձր մակարդակով անցկացնել հաշվետու-ընտրական կամպանիան: Բոլորի համար պետք է պարզ լինի, որ կուսակցական կազմակերպությունները խստիվ ինքնաստուգման կենթարկվեն, պատասխանատու քննություն կբռնեն հասարակության առջև:

Ակներև է, որ դա կլինի շիտակ, անկեղծ ու ազնիվ, հիրավի կուսակցական խոսակցություն այն մասին, թե մեզանից յուրաքանչյուրը ինչպես է կատարում հանձնարարված գործը, ինչ ավանդ է ներդնում վերակառուցման մեջ, թե վերակառուցումը պաշտպանելու խոսքերն արդյո՞ք բոլորն են ամրապնդում անհրաժեշտ ձեռնարկումներով: Նման մոտեցումը պետք է խոսակցության հիմք հանդիսանա կուսակցական ժողովներում ու կոնֆերանսներում: Եվ դա, ընկերներ, ճիշտ է: Դա համապատասխանում է կոնֆերանսի պահանջներին՝ ավելի շատ գործարարություն, ավելի շատ արդյունքներ:

Ահա թե ինչու կուսակցական բանավեճի կենտրոնում պետք է դրվի այն հարցը, թե ինչ պետք է անել, որ ավելի շատ դինամիկություն, ավելի շատ արդյունավետություն հաղորդվի վերակառուցմանը, վերջ տրվի տարուբերմանը, որպեսզի վերջնական հարված հասցվի այն ամենին, ինչ մեզ խանգարում է առաջ շարժվել:

Ուստիև կարևոր է կուսակցական ժողովները, կոնֆերանսներն անցկացնել դեմոկրատաբար և հրապարակայնորեն, բացառել ամեն տեսակ կազմակերպամոլություն, լայն ասպարեզ բացել իրավիճակի, մարդկանց հուզող բոլոր հարցերի անաչառ գնահատումների համար:

Կարճ ասած, կոմունիստները հաշվետու-ընտրական ժողովներում, կուսակցական կոնֆերանսներում պետք է XIX կուսկոնֆերանսում սկսված խոսակցությունը շարունակեն նույնպիսի սկզբունքայնությամբ, պատասխանատվությամբ ու գործարարությամբ: Իրավիճակը պահանջում է հենց նման մոտեցում:

Կարելի է վստահորեն ասել, որ ներկայումս նորովի կանցնեն նաև ղեկավար կուսակցական մարմինների ընտրությունները: Լսելով կոնֆերանսի պատգամավորներին, մենք՝ համոզվեցինք, որ կոմունիստները շատ պահանջկոտ կլինեն կուսակցության ղեկավար կազմը ձևավորելիս: Նրանք սկզբունքային դիրքերից կվճռեն, թե ում պետք է հանձնարարել կուսակցական կազմակերպությունների ղեկավարությունը վերակառուցման այս կարևոր փուլում, երբ մենք պրակտիկ գործողությունների ժամանակաշրջանն ենք թևակոխել դրա կարևոր ուղղություններում:

Հարկավոր է արդեն այժմ գործի դնել կոնֆերանսի այն հանձնարարականները, որոնք վերաբերում են թեկնածուների առաջադրման ու քննարկման կարգին, գաղտնի քվեարկության թերթիկների մեջ սահմանված մանդատներից ավելի մեծ թվով թեկնածուներ մտցնելուն, իրագործել վերադաս կուսակցական մարմինների կազմում ներքևից թեկնածություններ առաջադրելու իրավունքը: Մի խոսքով՝ ամեն ինչ պետք է անել այնպես, ինչպես մենք պայմանավորվել ենք կուսկոնֆերանսում, և այնպիսի մթնոլորտում, որպիսին իշխում էր այնտեղ:

Հաշվի առնելով առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիայի լուծելիք խնդիրների կարևորությունը, քաղբյուրոն նպատակահարմար կհամարեր ՍՄԿԿ Կենտկոմի հատուկ որոշման ընդունումը այդ հարցի առթիվ: Նման քայլ մենք ձեռնարկում ենք առաջին անգամ, բայց այն թելադրում է բուն իրավիճակը: Միաժամանակ անհրաժեշտություն է առաջանում փոփոխություններ մտցնել ընտրությունների հրահանգի մեջ: Դրա վերաբերյալ առաջարկությունները ձեզ մոտ կան, և դուք, ըստ երևույթին, կարտահայտեք ձեր դատողությունները դրանց առթիվ:

Ուզում եմ ուշադրություն հրավիրել ևս մի հարցի վրա, որը օրինաչափորեն կառաջանա հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում: Խոսքը վերաբերում է կոնֆերանսի այն հիմնադրույթների կատարմանը, որոնք վերաբերում են ղեկավար



կուսակցական պաշտոններում գտնվելը երկու անընդմեջ ժամկետով սահմանափակելուն: Այդ կանոնը կոնֆերանսը հանձնարարեց կիրարկել սկսած առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիայից: Այստեղ ի՞նչ մոտեցում պետք է լինի:

Թվում է, որ ժամկետների հաշվարկը պետք է սկսել այս ընտրություններից: Ինչպես ասում են՝ օրենքը հակադարձ ուժ չունի: Թվում է այս հարցում ամեն ինչ պարզ է: Միևնույն ժամանակ հաշվետու-ընտրական կուսակցական ժողովների և կոնֆերանսների անցկացման ընթացքում կոմունիստների մեջ, իհարկե, կարող են հարցեր ծագել, թե ինչպե՞ս վարվել այն ընկերների հետ, ովքեր արդեն երկար ժամանակ գտնվում են ընտրովի պաշտոններում:

Սակայն կուսակցության կանոնադրությունը կոմունիստներին լիակատար իրավունք է տալիս ցանկացած կուսակցական աշխատողին ընտրելու կամ չընտրելու հարցը լուծել անկախ այս կամ այն պաշտոնում նրա գտնվելու ժամկետներից: Եվ այստեղ վճռական նշանակություն ունի ոչ թե այն, թե քանի տարի է աշխատել ղեկավարը, այլ այն, թե նա ինչպես է կատարում իր պարտականությունները, թե արդյոք վայելու՞մ է կոմունիստների, աշխատավորների վստահությունն ու պաշտպանությունը: Ահա գլխավոր չափանիշը, որով մենք պետք է առաջնորդվենք ընտրովի մարմինները կազմավորելիս: Այս մասին հարկավոր է ուղղակի ասել Կենտկոմի պլենումի որոշման մեջ:

Եվս մի հարց, որն արժե որոշակի դարձնել այստեղ՝ պլենումում, կապված է այն բանի հետ, որ կոնֆերանսն արտահայտվել է ՍՄԿԿ Կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողով և նրա տեղական մարմիններ ստեղծելու օգտին: Մենք արդեն հիմա, այս հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում չսկսե՞նք այդ մարմինների ստեղծումը ներքևից: Այդ ժամանակ մենք ոչ միայն կարագացնենք պրոցեսը, այլև կկարողանանք առաջին փորձը կուտակել, իմաստավորել նախքան համագումարը: Հնարավոր է նաև այլ տարբերակ. այդ բանն անել համագումարի նախօրեին: Եկեք խորհուրդ անենք:

Խոսելով առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիայի մասին, այն պրոբլեմների ու հարցերի մասին, որ մենք պետք է լուծենք այդ կամպանիայի անցկացման ընթացքում, կցանկանայի հատկապես անդրադառնալ սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեությանը:

Հենց նրանցից է սկսվում հաշվետու-ընտրական կամպանիան կուսակցության մեջ: Բայց բանը նույնիսկ ոչ այնքան դա է: Այլ ամենից առաջ այն, որ հիմա սկզբնական կուսակցական կազմակերպությունը նոր կացության մեջ է ընկնում թե տնտեսական ու սոցիալական ոլորտներում վերակառուցման պրոցեսների ծավալման կապակցությամբ և թե աշխատավորական կոլեկտիվների, ամբողջ հասարակության կյանքի դեմոկրատացումը խորանալու կապակցությամբ: Սա հասկանալի է: Բոլոր պրակտիկ գործերը լուծվում են տեղերում, աշխատավորական կոլեկտիվներում: Ուստի կուսակցական կոմիտեները պետք է պատշաճ ուշադրություն նվիրեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեությանը կուսակցության ու հասարակության կյանքի այժմյան բեկումնային փուլում: Այստեղ շատ բան պետք է վերաիմաստավորել, որպեսզի գործենք, կատարելով կուսակցության, որպես քաղաքական ավանգարդի, ֆունկցիաները, հաշվի առնելով թե տնտեսական ռեֆորմի անցկացումը և թե աշխատավորական կոլեկտիվների իրավունքների ընդլայնումը:

Ինչպես հայտնի է, կոնֆերանսին նախորդած դիսկուսիաների ընթացքում և հենց կոնֆերանսում շատ խոսվեց կուսակցության ընտրովի մարմինների դերի բարձրացման մասին:

Այս կապակցությամբ կցանկանայի ասել հետևյալը: Պետք է մտածել այն մասին, որ նորընտիր կուսակցական կոմիտեներն իրենց աշխատանքի առաջին իսկ օրվանից սկսեն իրագործել այն գաղափարները, որ առաջադրել է կոնֆերանսը: Մասնավորապես, հարկավոր է այնպես անել, որ ընտրովի կուսակցական մարմինների բոլոր անդամները մշտական հիման վրա մասնակցեն կուսակցական կազմակերպությունների կյանքի հանգուցային հարցերի ուսումնասիրմանը, ընդհանրացմանը և քննարկմանը:

Ընդ որում, մենք, հավանաբար, պետք է ընթանանք ոչ միայն այն ուղիով, որ կուսակցական կոմիտեների անդամներին ընդամենը մեկ անգամ ներգրավենք պլենումներում ու բյուրոների նիստերում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, այլ դրան կանոնավոր բնույթ հաղորդենք նախ և առաջ կուսակցական գործունեության կարևորագույն հարցերի համապատասխան հանձնաժողովների ստեղծման մի-

ջոցով: Նաև կարծում ենք, որ մենք պետք է հետևենք կուսակցական կոմիտեների բյուրոների աշխատանքի վերաբերյալ պլենումներին տրվող կանոնավոր ինֆորմացիայի կանոնադրական պահանջին:

Մենք կոնֆերանսում պայմանավորվեցինք քաղաքական սիստեմի ռեֆորմի շրջանակներում իրագործել կուսակցական կոմիտեների ու պետական, տնտեսական մարմինների ֆունկցիաների սահմանազատման բոլոր անհրաժեշտ միջոցառումները, և այս կապակցությամբ գործնական քայլերի դիմել կուսակցական ապարատի կառույցն ու գործունեությունը կատարելագործելու նպատակով:

Այս խնդրի լուծման ելակետային սկզբունքների քննարկման համար քաղբյուրոն առաջարկություններ է նախապատրաստել կուսակցական ապարատի վերակազմության հիմնական ուղղությունների վերաբերյալ: Դրանք դուք ունեք և մտքերի փոխանակության ընթացքում, ըստ երևույթին, կարտահայտեք ձեր նկատառումներն ու դիտողություններն այդ առթիվ:

Կոնֆերանսը արտահայտվեց այն բանի օգտին, որ պետք է անշեղորեն պահպանվի կուսակցության ընտրովի մարմիններին կուսակցական ապարատի խստիվ ենթակայության և հաշվետվության սկզբունքը: Նոր ապարատը պետք է նրանց, ամբողջությամբ վերցրած կուսակցությանը, նախ և առաջ ակտիվորեն աջակցի լիովին կատարելու հասարակության քաղաքական ավանգարդի ֆունկցիաները: Սրանում է ողջ էությունը: Հետևաբար, հարկավոր է կուսակցական ապարատը լիովին ազատել վարչատնտեսական ֆունկցիաներից, նրա աշխատանքը կենտրոնացնել ներքին ու արտաքին քաղաքականության հանգուցային ուղղություններում, ծանրության կենտրոնը տեղափոխել ղեկավարման քաղաքական մեթոդների վրա: Դա պետք է արտացոլում գտնի ապարատի թե կառուցվածքի և թե կադրային կազմի մեջ: Ապարատը պետք է լինի միանգամայն ձեռնհաս և զգալիորեն ավելի փոքր թվակազմով, քան հիմա: Բնական է, որ կծառանան ազատվող աշխատողների ճիշտ օգտագործման հարցերը:

Կուսակցական ապարատում կենտրոնացված են պատրաստված կադրեր: Նրանց գիտելիքները, փորձը պետք է առավելագույն արդյունավետությամբ օգտագործվեն ի շահ հասարակության, իհարկե, հաշվի առնելով իրենց՝ ազատվող ընկերների ցանկությունները: Այստեղ, կարծում եմ, մենք երկու կարծիք ունենալ չենք կարող:

Կուսակցական ապարատի կառույցի հիմնական պարամետրերի մշակումը կարելի է հանձնարարել քաղբյուրոյին, իսկ կառուցահաստիքային կոնկրետ հարցերի լուծումը, ինչպես բազմիցս առաջարկել են Կենտկոմի անդամները, հանձնել տեղական կուսակցական մարմիններին:

Այժմ՝ սովետների մասին: Նրանց գործունեության վերակառուցումը քաղաքական ռեֆորմի կարևորագույն խնդիրն է: Կուսակցության մեջ ընտրությունների անցկացումից հետո մենք պետք է անցկացնենք ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրություններ, վերակազմենք երկրի բարձրագույն պետական մարմինները, հանրապետությունների, երկրամասերի, մարզերի, օկրուգների, քաղաքների, շրջանների, ավանների ու գյուղական վայրերի իշխանության մարմինները: Եվ այս ամենը մենք պետք է անենք մեկ տարում:

Միանգամայն հասկանալի է, որ նման խոշորամասշտաբ գործերի կատարումը հնարավոր է միայն համապատասխան իրավական բազայի հիման վրա: Դրա համար անհրաժեշտ է նախապատրաստել և ՍՍՀՄ Գերագույն սովետի այս աշնանը կայանալիք նստաշրջանի քննարկմանը ներկայացնել սահմանադրության, ընտրությունների օրենսդրության մի շարք էական լրացումներ ու փոփոխություններ, ընդունել այլ իրավական ակտեր:

Դա կպահանջի մշակել համապետական շահերը շոշափող մեծաթիվ հարցեր: Քաղբյուրոն նպատակահարմար է գտնում, որ այս կապակցությամբ ստեղծվի Կենտկոմի մի հատուկ հանձնաժողով: Դրա վերաբերյալ առաջարկությունները բաժանված են: Եթե դուք ինչ-որ դիտողություն ունեք, խնդրում ենք դրանք արտահայտել: Միայն կցանկանայի ձեր համաձայնությունը խնդրել, որ հանձնաժողովի կազմի մեջ, բացի Կենտկոմի անդամներից, մտցվեն միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների չորս առաջին քարտուղարներ, որոնք այժմ կուսակցության կենտրոնական կոմիտեի կազմի մեջ չեն մտնում:

Ըստ երևույթին, հանձնաժողովը պետք է իր աշխատանքը կառուցի, հենվելով գիտնականների, պրակտիկների և հենց լայն հասարակայնության կարծիքի վրա: Դրանից հետո մենք, ըստ երևույթին, պիտի Կենտկոմի պլենումի հավաքվենք արդեն



ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի նախօրեին, որպեսզի ավարտենք այն առաջարկությունների նախապատրաստումը, որոնք ներկայացվելու են նստաշրջանի քննարկմանը:

Ձթվարկելով այն ամենը, ինչ անելու է հանձնաժողովը, կցանկանայի առանձնացնել ժողովրդական դեպուտատների կորպուսի կազմավորման հարցը, քանի որ դա հանգուցային հարցերից մեկն է: Մենք պետք է վերափոխումների մի ամբողջ կոմպլեքս իրագործենք, դրա համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելով ընտրությունների մասին օրենքի մեջ: Դրանց գլխավոր նպատակն է ապահովել սովետներում ժողովրդի բոլոր խավերի իսկական ներկայացուցչությունը, հասնել այն բանին, որ դեպուտատներ ընտրվեն այնպիսի մարդիկ, որոնք ընդունակ են նոր ֆունկցիաներ կատարելու սովետների դերի վճռական ուժեղացման պայմաններում:

Իհարկե, մենք պետք է հրաժարվենք դեպուտատների կազմի կանոնակարգումից: Չպետք է սահմանափակումներ լինեն թեկնածություններ առաջադրելիս: Պետք է ընտրողներին իրավունք ընձեռվի իրոք ընտրություն կատարելու ինչպես թեկնածությունների քննարկման ու առաջադրման ստադիայում, այնպես էլ քվեարկության ստադիայում: Սա նշանակում է, որ քվեաթերթիկներում պետք է լինեն, որպես կանոն, ավելի շատ թեկնածուներ, քան մանդատների թիվն է: Ըստ էության նման կարգի օգտին միանշանակ արտահայտվեց կուսկոնֆերանսը:

Եթե խոսելու լինենք բուն ընտրությունների կազմակերպման մասին, ապա փորձը ցույց տվեց, որ բազմամանդատ ընտրական օկրուգներում ընտրություններն ավելի հարմար են գյուղական, ավանային, օկրուգային, շրջանային և քաղաքային սովետների համար: Այստեղ ընտրողները ավելի լավ են ճանաչում իրենց թեկնածուներին և կարող են ճիշտ ընտրություն կատարել՝ ձեռքներին ունենալով նրանց ցուցակը: Կարծում ենք, իրեն արդարացնում է նաև ռեզերվային դեպուտատների հաստատությունը:

Իսկ ինչ վերաբերում է մյուս տեղական սովետներին, ինչպես նաև ՍՍՀՄ-ի, միութենական ու ինքնավար հանրապետությունների ժողովրդական դեպուտատներին, ապա, ըստ երևույթին, նպատակահարմար կլինի նրանց ընտրել ըստ մենամանդատ օկրուգների: Սակայն այստեղ էլ, իհարկե, հարկավոր է աշխատավորական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների համար ապահովել դեպուտատության անսահմանափակ թվով թեկնածուների առաջադրման հնարավորություն: Օկրուգի ընտրողների ժողովները դեմոկրատական ճանապարհով կվճռեն, թե ում անունը գրանցել քվեաթերթիկներում, ելնելով, անշուշտ, այն բանից, որ քվեարկության ժամանակ ևս ապահովված լինի առաջարկվող թեկնածուների ընտրությունը:

Եվս մի հարց: Մենք կոնֆերանսում պայմանավորվեցինք, որ ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընդհանուր թվի մեկ երրորդը ընտրվի անմիջականորեն հասարակական կազմակերպություններից: Ինչպես մեզ թվում է, երկրի բարձրագույն իշխանության կազմակերպման նման սկզբունքը որոշ ճշգրտումներով կարելի է տարածել միութենական ու ինքնավար հանրապետությունների վրա և դա, համապատասխանաբար, վավերացրել նրանց սահմանադրություններում:

Դեպուտատների ընտրությունների կարգի մեջ մեծ փոփոխություններ մտցնելու և տեղական սովետների լիազորությունների ժամկետը երկարացնելու կապակցությամբ աճում է տերիտորիալ ընտրական հանձնաժողովների դերը: Ըստ երևույթին, նպատակահարմար է այդ հանձնաժողովները դարձնել մշտապես գործող, ընդլայնել նրանց լիազորությունները թե ընտրությունների կազմակերպման և թե ժողովրդական դեպուտատների սովետների առաջին համագումարների ու նստաշրջանների գումարման գործում: Դա իրականում կնշանակի ընտրությունների կազմակերպումը հանձնել հասարակայնության ձեռքը:

Ընտրությունների մասին օրենքների նախապատրաստմանը պետք է մոտենալ ստեղծագործաբար, հաշվի առնել ռեգիոնալ և ազգային առանձնահատկությունները: Եթե, ասենք, տեղական սովետների ընտրությունների մասին օրենքներն ինչ-որ բանով զանազանվեն տարբեր հանրապետություններում, ապա դրանից միայն ավելի կհարստանա մեր դեմոկրատական փորձը, նոր հնարավորություններ երևան կգան ընտրական համակարգի հետագա զարգացման համար:

Պատրաստվող օրենսդրական ակտերում պետք է նախատեսել դեպուտատների իրավունք՝ նստաշրջաններում հարցերը լուծել գաղտնի քվեարկությամբ, որոշել, թե դեպուտատի աշխատանքը ինչ աղբյուրների հաշվին պետք է վարձատրվի արտադրական և պաշտոնեական պարտականություններից նրան ազատելու ժամանակա-

միջոցում: Սահմանադրական վավերագրման կարիք ունեն տեղական սովետների, նախագահությունների ստեղծման, ինչպես նաև սովետների նախագահների ընտրության հարցերը:

Որպեսզի սովետները և նրանց գործկոմները կարողանան նորմալ կատարել իրենց նոր ֆունկցիաները, անհրաժեշտ է նրանց համար ապահովել պատշաճ պայմաններ: Հարկավոր է ստեղծել նյութական ու իրավական համապատասխան բազա, կազմավորել այնպիսի ազդակների կոմպլեքս, որոնք սովետներին մղեին նորովի մոտենալ իրենց պարտականությունների կատարմանը:

Այդ կապակցությամբ, ըստ երևույթին պետք է անհապաղ ձեռնամուխ լինել տեղական ինքնակառավարման և տեղական տնտեսության մասին օրենքի նախապատրաստմանը, որը տեղական սովետները կամրապնդեր իրավական ու նյութաֆինանսական առումներով: Այստեղ մոտեցումը պետք է լինի մեկը՝ այն ամենը, ինչ կարող է վճռվել տեղերում, պետք է գտնվի տեղական սովետի տնօրինության ներքո:

Սովետների գործունեության դեմոկրատացման հետ սերտորեն շաղկապված է իրավական ռեֆորմը:

Դատարանների վերակազմումը մենք կարող ենք իրագործել կարճ ժամկետներում: Այժմ ավարտվում է այդ հարցերի վերաբերյալ համապատասխան ակտերի նախագծերի նախապատրաստումը:

Կարևոր նշանակություն ունի քրեական օրենսդրության վերանայումը, նրանում այնպիսի իրավախախտումների ցանկի նեղացումը, որոնց համար նախատեսվում է քրեական պատասխանատվություն, և ազատազրկման հետ չկապված պատիժների ավելի լայն կիրառումը: Քրեական նոր օրենքների նախագծերը ենթադրվում է հրապարակել համաժողովրդական քննարկման համար: Զուգահեռաբար կկատարվի միութենական հանրապետությունների քրեական դատավարական ուղղիչ աշխատանքային օրենսդրության և քրեական օրենսգրքերի վերանայման աշխատանքը:

Ինչ վերաբերում է փաստաբանական ծառայությանը և նախաքննությանը, ապա դրանց կատարելագործման նախագծերը այժմ պատրաստվում են և քննարկման կներկայացվեն ամենամոտ ժամանակներս: Հնարավորություն կա մինչև տարեվերջ նախապատրաստելու և ընդունելու այնպիսի ակտեր, որոնք վերաբերում են իրավաբանական ծառայությանը ժողովրդական տնտեսության մեջ, արբիտրաժի ֆունկցիաների ընդլայնմանը, ինչպես նաև իրավական պարտուսի կազմակերպմանը մեր երկրում:

Այսպիսով, ընկերներ, ստեղծվում է պետական շինարարության բնագավառում անհետաձգելի գործերի հետևյալ կարգը:

Նախ և առաջ պետք է նախապատրաստել և այս տարվա հոկտեմբերի սկզբին համաժողովրդական քննարկման ներկայացնել ՍՍՀՄ-ում ժողովրդական դեպուտատների ընտրությունների մասին ՍՍՀՄ օրենքի նախագիծը:

Ենթադրվում է նոյեմբերի երկրորդ կեսին գումարել ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջան և նրա հաստատմանը ներկայացնել ՍՍՀՄ սահմանադրության մեջ փոփոխություններ և լրացումներ մտցնելու նախագիծը և ընտրությունների մասին օրենքի նախագիծը: Այդ նստաշրջանում միաժամանակ կարելի էր պայմանավորվել ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունները 1989 թվականի մարտին անցկացնելու մասին: Նպատակահարմար է նստաշրջանում նաև քննարկել ՍՍՀՄ-ում դատակազմության մասին ՍՍՀ Միության ու միութենական հանրապետությունների օրենսդրության նոր հիմունքների և ՍՍՀՄ-ում դատարանների ստատուսի մասին օրենքի նախագծերը:

Եթե դուք, ընկերներ, զորավիգ լինեք, ապա առաջարկվում է, որ ՍՄԿԿ Կենտկոմը օրենսդրական նախաձեռնության կարգով նստաշրջանի քննարկմանը ներկայացնի XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումների լույսով պետական իշխանության և արդարադատության մարմինների կառույցի ու գործունեության կատարելագործման խնդիրների մասին հարցը: Անմիջապես պետք է ասել նաև այն հարցերի մասին, որոնք կարելի էր ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարի քննարկմանը ներկայացնել 1989 թվականի ապրիլին: Համագումարը պետք է ընտրի ՍՍՀՄ Գերագույն սովետ և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահ:

Այնուհետև Գերագույն սովետի նախագահի առաջարկությամբ կարող են հաստատվել Գերագույն սովետի նախագահի առաջին տեղակալը, ինչպես նաև Մինիստրների խորհրդի նախագահը, ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահը, Գերագույն դատարանի նախագահը, որոնց կհանձնարարվի ՍՍՀՄ Գե-



րագույն սովետի առաջարկություններ ներկայացնել այդ մարմինների կազմի վերաբերյալ: Ժողովրդական դեպուտատների համագումարը միաժամանակ կարող է նշանակել գլխավոր դատախազին, ՍՍՀՄ գլխավոր պետական արբիտրին և կազմել սահմանադրական հսկողության կոմիտե:

ՍՍՀՄ նորընտիր Գերագույն սովետի առաջին նստաշրջանում կպահանջվի կազմել ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդ, հաշվետու այլ մարմիններ: Կուսակցական կոնֆերանսում շատ ակտիվորեն քննարկվեցին երկրում երիտասարդական շարժման զարգացմանը արհմիությունների իրավունքներին, կամավոր ընկերություններին, մամուլին վերաբերող և մի շարք այլ հարցեր: Այս կապակցությամբ հարկավոր է գործն այնպես տանել, որ երկրի օրենսդիր, կարգադիր և վերահսկիչ բարձրագույն մարմնի գործունեության առաջին իսկ քայլերից այդ քաղաքական, օրենսդրական և իրավական կարևորագույն հարցերը գտնվեն նաև նրա տեսադաշտում:

Ընկերներ, այն փաստը, որ մեր պետությունը բազմազգ է, քաղաքական ռեֆորմին հաղորդում է հատուկ բնույթ, իր երանգն ու յուրահատկությունը: Ինչպես հայտնի է, կյանքում չեն լինում մեկ առ միշտ լուծված պրոբլեմներ: Եվ ամենից առաջ սա վերաբերում է ազգային պրոբլեմին:

Հազիվ թե հարկավոր է ապացուցել, որ ազգային հարաբերությունների զարգացման բնույթը առաջնակարգ նշանակություն ունի մեր միութենական պետության համար, որ ազգային քաղաքականությունը մեր կոմունիստական կուսակցության ու սովետական պետության համար ամենաբարդ, բայց և դրա հետ մեկտեղ կարևոր ու հարկավոր քաղաքականությունն է: Եվ սա օրինաչափ է, որովհետև այդ քաղաքականության մեջ ամուր հանգույց են կազմում թե տնտեսական, թե սոցիալական և թե հոգևոր պրոբլեմները:

Ինչպես հայտնի է, կոնֆերանսը պաշտպանեց ազգային հարաբերությունների հարցերին նվիրված Կենտկոմի պլենում անցկացնելու քաղբյուրոյի առաջարկությունը: Դրան հարկավոր է լրջորեն պատրաստվել, լայնորեն ներգրավելով հասարակայնությանը, գիտական շրջաններին, հանրապետությունների ներկայացուցիչներին, կուտակել գաղափարներ և առաջարկություններ:

Ի՞նչ կցանկանայի ասել նախնական կարգով, քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության վերջերս կայացած նիստում այդ պրոբլեմների բազմակի քննարկման ազդեցության տակ: Նախ և առաջ երկրի մի շարք ռեգիոններում ներկայիս բարդացած ազգամիջյան հարաբերությունների պատճառների մասին:

Այդ պատճառների թվում, անտարակույս, առաջին տեղում են մեր երկիրը կազմող բազմաթիվ ազգերի ու ազգությունների սոցիալ-տնտեսական ու հոգևոր յուրահատուկ պահանջմունքների նկատմամբ հանդես բերված բազմամյա անուշադրության հետևանքները:

Մյուս, ոչ պակաս կարևոր պատճառը մասսաների անբավարար արդյունավետ վերահսկողությունն է ղեկավար կադրերի գործունեության նկատմամբ, որի հետևանքով որոշ աշխատողներ կորցրել են հանձնարարված գործի համար պատասխանատվության զգացումը, ավելին, բռնել են իշխանության չարաշահման, մարդկանց հանդեպ քամահրական վերաբերմունքի, նրանց կարիքների ու շահերի անտեսման ուղին:

Եվ էլի մի պատճառի մասին: Ես նկատի ունեմ վերակառուցման նկատմամբ կաշառված խմբերի ակտիվ արձագանքը: Պետք է անկեղծորեն ասել, որ մի շարք վայրերում նրանց հաջողվել է բնական ազգային զգացմունքները փոխադրել կործանարար նացիոնալիստական հուն: Եվ դա, իհարկե, պատահական չէ: Ազգայնամոլ կրքերը ձեռնտու են բոլոր հակավերակառուցողական ուժերին: Բորբոքելով ազգամիջյան կոնֆլիկտներ, նրանք ուզում են շեղել հասարակական կարծիքը և պատասխանատվությունից խուսափել լճացման տարիներին իրենց արածների համար: Համոզված եմ, որ մեր ժողովուրդը, որը վիթխարի ինտերնացիոնալ փորձ է կուտակել, ոչ ոքի թույլ չի տա ոտնձգություն կատարել մեր դաշինքի միասնության, մեր հայրենիքի բոլոր ազգությունների մարդկանց բարեկամության ու եղբայրության վրա:

Պետք է մտածել նաև այդ հարցերի առթիվ սովետական օրենսդրության կատարելագործման մասին: Մասնավորապես ուժեղացնել պատասխանատվությունը ազգային երկպառակություն սերմանելու համար, ռասայական կամ ազգային բացառիկություն քարոզելու համար: Դա ուղղակիորեն բխում է ՍՍՀՄ սահմանադրության 36-րդ հոդվածից:

Հարկ չի լինում խոսել այն մասին, թե մենք պարտավոր ենք որքան ուշադիր լինել մայրենի լեզվի, ազգային մշակույթների զարգացման նկատմամբ, բնության,

պատմական հուշարձանների պահպանության նկատմամբ, այն ամենի նկատմամբ, ինչը կանխորոշում է յուրաքանչյուր ազգի և ազգության յուրահատկությունը, նրա անկրկնելի ավանդը սովետական մշակույթի ընդհանուր գանձարանում, մշակույթ, որին բնորոշ են ազգային գույների բազմազանությունն ու բազմերանգությունը, մի խոսքով, ամեն մի հարց, որտեղ էլ որ այն ծագի, մենք պետք է տեսնենք համամիութենական կյանքի փոխկապակցված համատեքստում, այն դիտենք կուսակցական և համապետական լայն դիրքերից:

Այժմ ինչ է պահանջվում առաջին հերթին: Պետք է անկյունաքար դարձնել մեր միության հետագա զարգացման և ամրապնդման խոշորամասշտաբ միջոցառումների մշակումն ու իրականացումը:

Պետք է առաջարկություններ նախապատրաստել ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների իրավասությունները սահմանազատելու, հանրապետություններին մի շարք կառավարչական պարտականություններ տալու վերաբերյալ: Պետք է սահմանել հանրապետությունների և ռեգիոնների տնտհաշվարկի սկզբունքներին հնարավոր անցում կատարելու, նրանց անմիջական կապերը զարգացնելու լավագույն տարբերակները՝ ընդհանուր միութենական ծրագրերի լուծման մեջ ավանդի հստակ կոնկրետացումով:

Միաժամանակ հարկավոր է ձեռնամուխ լինել միութենական և ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և օկրուգների մասին օրենսդրության նորացմանը: Խոսքը նաև իրենց պետական-տերիտորիալ կազմավորումների սահմաններից դուրս բնակվող կամ այդպիսիք չունեցող ազգությունների ազգամշակութային պահանջմունքների իրականացման իրավական երաշխիքների ընդլայնման մասին է:

Հստակ սահմանում են պահանջում ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի նոր պարտականությունները, անհրաժեշտության դեպքում բոլոր աստիճանների սովետներում ազգամիջյան հարաբերությունների հարցերի մշտական հանձնաժողովներ կազմելու կարգը:

Նկատի ունենալով լեզվի քաղաքականության պրոբլեմների առանձնահատուկ սրությունը, ըստ երևույթին, արժե նախապատրաստել և լայն քննարկման ներկայացնել ՍՍՀՄ ժողովուրդների լեզուների ազատ զարգացման և իրավահավասար օգտագործման մասին միութենական օրենքի նախագիծ:

Այսօր մենք պետք է կրկին հավաստենք նաև այն, որ կոմունիստական կուսակցության անդամ լինելը անհամատեղելի է նացիոնալիզմի և շովինիզմի հետ: Վ. Ի. Լենինը բոլշևիկյան կուսակցությունն ստեղծում էր որպես իր ոգով, իր ծրագրով և ազգային կազմով ինտերնացիոնալիստական կուսակցություն: Եվ չի կարող որևէ արդարացում լինել այն կոմունիստի համար, որը կանգնած է շովինիզմի կամ նացիոնալիզմի դիրքերում: Ըստ էության դա նահանջ է կուսակցության կարևորագույն քաղաքական սկզբունքներից մեկից: Դա պարտավոր է հիշել յուրաքանչյուր կոմունիստ:

## II.

Ընկերներ: Ինչպես դուք գիտեք, կոնֆերանսում առանձնակի սրություն ստացավ այնպիսի պրոբլեմների քննարկումը, ինչպիսիք են պարենը, բնակարանը, ապրանքներով և սպասարկումներով բնակչության ապահովումը: Ըստ որում, իրենց գնահատումներում պատգամավորները շատ խիստ էին: Եվ դա հասկանալի է, քանի որ ժողովրդի բարեկեցության մակարդակը կանխորոշող կարևորագույն հարցերի լուծումը շատ է ձգձգվել, իսկ թերացումն այստեղ շարունակական բնույթ է ստացել:

Անդրադառնամ նախ և առաջ պարենային հարցին: Քաղբյուրոն գտնում է, որ այստեղ հարկավոր են ինչպես ընթացիկ, այնպես էլ հեռանկարային բնույթի շտապ և արմատական միջոցառումներ:

Այս տարվա կոնկրետ իրավիճակում, երբ Պովոլժիեի, Ուրալի, Սիբիրի և Ղազախստանի շատ շրջաններում երաշտ է եղել, դրանք նպատակամղված են ոչ միայն պարենային մատակարարման մակարդակը պահպանելուն, այլև դրա բարելավման հասնելուն: Նման հարցադրումը ոչ միայն անհրաժեշտ է, այլև իրատեսական: Նախ, վերջին շաբաթներին վիճակը փոքր-ինչ շտկվել է: Եվ երկրորդ (և դա, թերևս, ամենագլխավորն է), տեղերում աշխատանքը այժմ նպատակամղված է այն բանին, որ լիովին հավաքվի ու պահպանվի, ռացիոնալ կերպով օգտագործվի աճեցված բերքը: Ըստ որում, ես նկատի ունեմ թե պարենային կուլտուրաները և թե կերաբույսերը:

Այստեղ է, ես կասեի, ընթացիկ տարվա ամբողջ աշխատանքի ծանրության



կենտրոնը: Առջևում դեռ շատ գործ կա, և դա պետք է անել կազմակերպված ձևով: Կարծում եմ, ոչ միայն գյուղի, այլ քաղաքների աշխատավորները լավ են ըմբռնում ստեղծված իրավիճակը և, ինչպես տեսնում ենք, ռեալ կերպով ամեն ինչ անում են պարենային ճակատում վիճակի վատթարացում թույլ չտալու համար: Եվ, վերջապես, անհրաժեշտության դեպքում մենք նաև արտաքին աղբյուրներ ենք օգտագործում երկրի պարենային ռեսուրսների համալրման համար:

Այս ամբողջ աշխատանքը պետք է կատարել հաստատակամորեն ու հետևողականորեն, քայլ առ քայլ լուծելով գործնական հարցերը: Ըստ երևույթին, արժե մեկ անգամ ևս ընդգծել, որ պարենային հարցը արմատական սոցիալ-քաղաքական հարց է, և այստեղ պետք է բացառվի դրա սկզբունքային կարևորության ամեն տեսակ թերըմբռնում:

Հիմա պարենային պրոբլեմի լուծման հեռանկարային խնդիրների մասին: Այս առնչությամբ ձեզ ներկայացված են Քաղբյուրոյի նկատառումները: Ո՞րն է դրանց էությունը:

Առաջին: Այս հարցերի ուսումնասիրումը ցույց է տալիս, որ մենք ռեալ հնարավորություններ ունենք մինչև ընթացիկ հնգամյակի վերջը մեկ մարդու հաշվով պարենային ծրագրով և սննդի ռացիոնալ նորմաներով նախատեսված սպառման մակարդակին հասնելու այնպիսի հիմնական մթերքների գծով, ինչպիսիք են հացաբույսերը, մակարոնեղենն ու հրուշակեղենը, ձավարեղենը, կարտոֆիլն ու բանջարեղենը, ձեթը և կենդանական յուղը, անարատ կաթնամթերքը, ձուն ու թռչնի միսը: Ներկա հնգամյակում մսի և մրգի գծով դրան հասնել չի հաջողվի: Բայց այստեղ էլ կարելի է վիճակը լրջորեն շտկել:

Այս հետևությունները հենվում են միութենական և ինքնավար հանրապետությունների, երկրամասերի և մարզերի հետ հարցերի ամբողջ կոմպլեքսի նախնական ուսումնասիրման վրա: Չեմ ուզում կրկնել այն ամենը, ինչ ասվում է ձեզ բաժանված առաջարկություններում: Բայց անհրաժեշտ եմ համարում բերել որոշ առավել կարևոր թվեր: Խոսքը, մասնավորապես, 1990 թվականին հնգամյակի առաջադրանքների համեմատ անասունների և թռչնի մսի գնումները 2,5 միլիոն տոննայով, կաթինը՝ 4,3 միլիոն տոննայով ավելացնելու մասին է:

Ընդսմին պետք է ընդգծել, որ այդ ամբողջ արտադրանքը որպես արտապլանային մնում է հենց հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի տնօրինության տակ: Հավելաճի նախատեսվող տեմպերն ապահովելը, իհարկե, բարդ խնդիր է, որը պահանջում է խելամիտ, հաստատակամ աշխատանք, բայց դրա լուծմամբ ամենքի շահագրգռությունն էլ ակնհայտ է:

Մեր ամենամեծ ռեզերվը պայքարն է կորուստների դեմ, հանուն բերքի և ֆերմաների արտադրանքի լիակատար պահպանության և բարձրորակ վերամշակման: Դա արդեն մոտ ժամանակներս պարենային մատակարարումը բարելավելու ամենակարճ ուղին է: Այս հարցի լուծումը մեզ կօգնի պարենի ռեսուրսներն ավելացնել առնվազն 15—20 տոկոսով: Եվ դրա համար անհամեմատ պակաս թե ժամանակ և թե ծախսեր կպահանջվեն, քան արտադրության ծավալների ավելացման համար: Կորուստների վերանայման ու վերամշակման գործում կատարվող երկարատև ներդրումները ամենաշահավետներն են և ամենաարդյունավետները: Ամբողջ հասարակությունը պետք է ձեռնամուխ լինի այդ պրոբլեմին:

Երկրորդ: Իրավիճակն այնպիսին է, որ վերջին հնգամյակներին մենք գյուղատնտեսության մեջ վիթխարի միջոցներ ենք ներդրել, բայց դրանցից աննշան հատույց ենք ստացել:

Վերջին 17 տարում, ընկերներ, գյուղատնտեսության զարգացմանը հատկացված կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 680 միլիարդ ռուբլի: Ճյուղի հիմնական արտադրական ֆոնդերի միջին տարեկան արժեքը 1986—87 թվականներին եղել է 2,7 անգամ, աշխատանքի էներգազինվածությունը՝ 2 անգամ, իսկ ֆոնդազինվածությունը՝ ավելի քան 3 անգամ ավելի, քան 1971—75 թվականներին: Անցյալ տարի հանքային պարարտանյութերի մատակարարումները 1970 թվականի համեմատությամբ ավելացել են 2,6 անգամ և մեկ հեկտար վարելահողի հաշվով կազմել 122 կիլոգրամ: Եվ դա բնավ էլ այն ամենը չէ, ինչ տրվել է գյուղատնտեսությանը: Սակայն դրա համախառն արտադրանքի ծավալը այդ 17 տարիներին ավելացել է ընդամենը 25 տոկոսով: Ըստ որում հացահատիկի արտադրությունը միայն 16 տոկոսով, բամբակինը՝ 6, շաքարի ճակնդեղինը՝ 12 տոկոսով, իսկ կարտոֆիլի բերքը նույնիսկ կրճատվել է 9 տոկոսով:

Առանձին ռեգիոններում վիճակը էլ ավելի վատ է: Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների հատույցը շատ ցածր է Ուզբեկստանում, Տաջիկստանում, Կիրգիզիայում, Թուրքմենիայում: Իսկ Պսկովի ու Նովգորոդի մարզերում 17 տարում ֆոնդապահովվածությունը 3—4 անգամ աճելու պայմաններում համախառն արտադրանքի արտադրությունը նվազել է 12—25 տոկոսով: Եվ բանն այստեղ միայն ոչ-սևահողային գոտու աննպաստ պայմանները չեն, որտեղ պատմականորեն զգալի դժվարություններ են ստեղծվել: Վերցնենք այնպիսի մարզեր, ինչպիսիք են Կիրովոգրադի, Չեռնիգովի, Վիննիցայի մարզերը: Այստեղ ֆոնդերի 2—2,5 անգամ ավելացման պայմաններում համախառն արտադրանքի արտադրությունը ըստ էության չի աճել: Ավելին, այդ մարզերում նվազել է շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի համախառն բերքը, աննշան չափով է աճել մսի ու կաթի արտադրությունը:

Մեզ չեն կարող չմտահոգել երկրի գյուղատնտեսության մեջ տեղի ունեցող տագնապալի պրոցեսները: Իսկ որո՞նք են այդ երևույթների պատճառները: Մենք, ընկերներ, այդ հարցին պետք է տանք այնպիսի պատասխան, որը կբացահայտեր պրոբլեմի էությունը:

Իհարկե, յուրաքանչյուր ռեգիոնում, ասենք նաև յուրաքանչյուր տնտեսությունում կան սեփական կոնկրետ պրոբլեմներ և դրանց կոնկրետ պատճառներ: Բայց կա նաև մեկ ընդհանուր, ես կասեի, գլխավոր պատճառ, որ գյուղատնտեսությանը, ագրարային հատվածին հատկացվող կապիտալ ներդրումները հարկ եղած հատույցը չեն տալիս, օգտագործվում են անարդյունավետորեն, իսկ շատ դեպքերում պարզապես մեռցվում են: Դա այն է, որ գյուղի նյութական բազայի ամրապնդման գործնական միջոցառումները միաժամանակ չեն ամրապնդվել գյուղում տնտեսական հարաբերությունների փոփոխման համապատասխան աշխատանքով: Այդ մասին, ընկերներ, մենք այսօր պետք է Կենտկոմի պլենումում հայտարարենք ամենայն որոշակիությամբ, քանի որ խոսքը ագրարային քաղաքականության գլխավոր ուղղության մշակման և դրա հետ կապված պրակտիկ գործողությունների մասին է:

Եկեք ի վերջո ուղղակի ասենք, որ մինչև օրս մեր կադրերի, գյուղական ղեկավարների մեծամասնությունը մթերքների արտադրության հետագա ավելացումը կապում է նախ և առաջ լրացուցիչ երկարատև ներդրումների, ռեսուրսների նոր մատակարարումների հետ և այլն: Եվ ուրիշ ուղի չեն տեսնում: Բայց չէ՞ որ մենք ունենք հարյուրավոր, հազարավոր կոլտնտեսություններ և սովխոզներ, որոնք միևնույն պայմաններում և ըստ էության ռեսուրսների նույնպիսի ապահովվածություն ունենալով հասնում են արտադրական ու տնտեսական հիանալի արդյունքների:

Իսկ դուք տեսեք, թե ինչ են անում ընտանեկան կապալով և վարձակալական պայմանագրով աշխատող մարդիկ: Նրանք միևնույն, իսկ երբեմն էլ ավելի վատ նյութական բազայի հիման վրա հասնում են անհամեմատ ավելի բարձր ցուցանիշների:

Ահա միայն այսօր ես «Սելսկայա ժիզն»-ում փոքր հոդված կարդացի Ստավրոպոլի երկրամասի վարձակալների աշխատանքի մասին: Խոսքը Գեորգիևսկի շրջանի «Բալկովսկի» սովխոզի մասին է: Գիտեմ այդ սովխոզը ծանր վիճակում գտնվող տնտեսություն է, որը մշտապես մարդկանց պակաս է զգում: Վարձակալման օգտագործումը թույլ տվեց շտկել գործը: Եվ պարզվում է, տեխնիկա էլ քիչ է հարկավոր, թեև արդյունքները ավելի լավ են: Այնպիսի բերք են ստանում, որ նախկինում չեն ստացել: Փոխվում է մարդկանց վերաբերմունքը գործի նկատմամբ. սա է գլխավորը: Սովխոզի դիրեկտորը հաշվել է. եթե վարձակալական հարաբերությունները զարգանան, ապա ներկայումս բերքահավաքով զբաղված 90 մեխանիզատորի փոխարեն կպահանջվի միայն 50 մարդ: Նշանակում է կադրերի պրոբլեմը ևս, որի մասին այսօր այդքան շատ է խոսվում, կլուծվի:

Վարձակալական հարաբերությունների մասին արդեն շատ է խոսվել ու բավական շատ է գրվում, և դրանց առնչվող փաստերն էլ հիմա բավական շատ են: Ըստ որում հիմա այդպիսի փորձ գոյություն ունի երկրի բոլոր ռեգիոններում, բոլոր գոտիներում, ագրարային հատվածի բոլոր ճյուղերում: Եվ ամենուրեք այն արդյունք է տալիս:

Մի՞թե այդ փորձը չի վկայում այն մասին, որ հաջողության բանալին աշխատանքի նկատմամբ մարդկանց վերաբերմունքի փոփոխումն է: Իսկ դրան կարելի է հասնել միայն գյուղում տնտեսական հարաբերությունները արմատապես փոխելով: Մեր խնդիրն է դրանք այնպես վերակառուցել, որ գյուղացին իրոք հողի տերը դառ-



նա և կարողանա այստեղ իսկապես կիրառել իր ուժերը, գիտելիքներն ու ընդունակությունները:

Վերափոխումների էությունն այն է, որ իրականում օգտագործվեն սոցիալիստական սեփականության իրացման ամենատարբեր ձևերը: Այս խնդիրը մենք կկարողանանք լուծել ամենուրեք և լայնորեն լրիվ տնտհաշվարկ և ինքնածախսածածկում, կապալ և վարձակալում արմատավորելու, այդ կապակցությամբ կոլտնտեսություններում ու սովխոզներում ներարտադրական կապերը փոփոխելու, կոոպերացիայի տարբեր ձևերը զարգացնելու, ընտանեկան ֆերմաներ և հողի երկարաժամկետ վարձակալման պայմաններում աշխատող այլ արտադրություններ ստեղծելու, ագրոարդյունաբերական կոմբինատները, ագրոֆիրմաները զարգացնելու և անձնական օժանդակ տնտեսությունը ամեն կերպ խրախուսելու հիման վրա:

Կարճ ասած, մենք պետք է լայն ճանապարհ բացենք արտադրողների ինքնուրույնության և պատասխանատվության համար, ըստ ամենայնի զարգացնենք գյուղատնտեսական շուկան:

Եվ թող մեզանից ոչ մեկին չշփոթեցնի այն փաստը, որ երկարատև օգտագործման համար գյուղացու տրամադրության տակ են մնում արտադրության միջոցները՝ տնտեսության հետ կնքվող պայմանագրի հիման վրա: Սրանում ոչ սոցիալիստական ոչինչ չկա: Դա ամենաիսկական սոցիալիզմ է, քանի որ այն մարդուն դուրս է բերում առաջին պլան: Սոցիալիզմը նախ և առաջ պետք է վերջ դնի արտադրության միջոցներից, քաղաքականությունից, մշակույթի նվաճումներից մարդու օտարացմանը:

Ասենք, չի էլ կարելի սահմանափակվել կոլտնտեսության կամ սովխոզի մակարդակով տնտհաշվարկ մտցնելով: Պետք է դրան երկրորդ շնչառություն տալ վարձակալման միջոցով: Մարդուն պետք է հնարավորություն ընձեռել ծավալելու տիրոջ իր տաղանդը, հողի վրա այնպես աշխատելու, ինչպես ինքն է անհրաժեշտ համարում, իսկ նա մեզանից լավ գիտե, թե դա ինչպես պետք է անել: Եվ թող դա ձեզ չշփոթեցնի: Այս ճանապարհին մենք պարտություն չենք կրի, այլ, ընդհակառակը, կհասնենք հաղթանակի: Անհրաժեշտ է, որ գյուղատնտեսության վարման կապալային և հատկապես վարձակալական ձևերը լայնորեն տարածվեն երկրում:

Այս հարցերը այնքան կարևոր են հիմա մեզ համար և գյուղում տնտեսական հարաբերությունների կատարելագործման բոլոր հետագա փուլերի համար, որ, ըստ երևույթին, ես պետք է լրացուցիչ ինչ-որ բան ասեմ: Մարզային և երկրամասային կուսակցական կազմակերպությունների ղեկավարների հետ կայացած զրույցներից, տեղերում վիճակի ուսումնասիրումից պարզվում է, որ բնավ էլ ոչ բոլորը, ովքեր պետք է լինեն այդ գործի ոգեշնչողները, իրենք հստակ պատկերացում ունեն հարցի էության մասին:

Մենք 1983 թվականից լայն աշխատանք ենք կատարում կոլտնտեսությունների ու սովխոզների ստորաբաժանումները կոլեկտիվ կապալի տարբեր ձևերի փոխադրելու ուղղությամբ՝ ըստ վերջնական արդյունքի աշխատանքի վարձատրությամբ: Կյանքը ցույց է տվել, որ դա տնտեսության վարման արդյունավետ ուղի է:

Բայց, դրա հետ մեկտեղ, ինչպես ես արդեն ասացի, պրակտիկան հուշեց նաև այն, որ ներկայումս առավել արմատական են տնտեսավարման այն ձևերը, որոնց հիմքում դրվում է օգտագործման երկարատև ժամկետով հողի և արտադրության մյուս միջոցների վարձակալումը վարձակալների լիակատար տնտեսական ինքնուրույնության պայմաններում: Ի դեպ, վարձակալումը մեզ մոտ լայնորեն կիրառվում էր մինչև 30-ական թվականների կեսերը, իսկ հետո այն վերացրին: Վարձակալելիս մարդը դառնում է հողի իսկական տերը և շահագրգռված է, որ իր կողմից վարձակալվող հողը և արտադրության մյուս միջոցները օգտագործվեն առավելագույն արդյունավետությամբ և առավել մեծ հատույց տան:

Իսկ տեսեք, թե ինչ է արվում արդյունաբերության մեջ, ընկերներ: Մարդկանց վարձակալման են տալիս վատ աշխատող արտադրամասեր, գործարաններ, և առաջին բանը, որ նրանք անում են, այն է, որ մեկ երրորդով կրճատում են աշխատողների թիվը, 2—3 անգամ նվազեցնում ղեկավար կազմը, սկսում են իրոք գործով զբաղվել և ձեռնարկությունը բարձրացնում են 7—8 ամսում, ամենաշատը մեկ տարում: Եվ մեր բանվորներն էլ պետականորեն են մտածում: Նրանք տրամադրված են բնավ էլ ոչ գռփողաբար: Նրանք մտածում են ոչ միայն վաստակի մասին, այլև այն մասին, թե ինչպես կարելի է զարգացնել արտադրությունը, ինչպես ստեղծել արտադրական ֆոնդեր արտադրությունն ավելացնելու, դրա տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար: Եվ այս առումով զարմանալի ոչինչ չկա: Չէ որ դա մեր սո-

լայն մասնակցության մասին: Զգալի արագացում է նախատեսված վճարովի սպասարկումների ոլորտում:

Մինիստրությունների ու գերատեսչությունների, հանրապետական և տեղական մարմինների մասնակցությամբ այդ հարցերի մշակումը ցույց տվեց, որ գոյություն ունի 1989—1990 թվականներին ժողովրդական սպառման ոչ պարենային ապրանքների արտադրությունը հնգամյա պլանի առաջադրանքներից դուրս 24 միլիարդ ռուբլով ավելացնելու իրական հնարավորություն, այդ թվում 1989 թվականին՝ 9 միլիարդ ռուբլով և 1990 թվականին՝ 15 միլիարդ ռուբլով:

Ձեզ առաջարկություններ են ներկայացված նաև բնակչությանը ցույց տրվող վճարովի սպասարկումների ոլորտի արմատական բարելավման միջոցառումների մասին: Կարևոր է ընդգծել, որ արդեն այս հնգամյակում դրանց ծավալը տարեկան 15—20 տոկոսով կաճի կոմպլեքսային ծրագրով նախատեսվածի համեմատությամբ: 1990 թվականին այդ ծավալը կկազմի ավելի քան 70 միլիարդ ռուբլի, իսկ մինչև տասներեքերորդ հնգամյակի վերջը այն կավելանա 1,6 անգամ և կգերազանցի 119 միլիարդ ռուբլուց:

Դրանք խոշորամասշտաբ միջոցառումներ են և համապատասխան աշխատանք կպահանջեն թե կենտրոնում և թե տեղերում: Սակայն, լուծելով ժողովրդական սպառման ապրանքների և վճարովի սպասարկումների ավելացման խնդիրը, մենք պետք է հիմնավորապես զբաղվենք նաև բաշխման ամբողջ համակարգի կատարելագործմամբ և առաջին հերթին առևտրով ու հասարակական սննդով:

Այդ մասին ասում եմ այն պատճառով, որ աշխատավորների բարեկեցությունը, նրանց բարոյաքաղաքական ինքնազգացողությունը կախված են ոչ միայն արտադրվող նյութական բարիքների և սպասարկումների քանակից ու որակից (ինչը, հիարկե, ինքնըստինքյան վճռական նշանակություն ունի), այլև այն բանից, թե մենք ինչպես ենք դրանք տնօրինում, ինչպես են կազմակերպված առևտուրը և սպասարկումների ոլորտը:

Այդ ոլորտի շատ թերություններ կապված են դրանց նյութական բազայի հետ մնալու, իսկ շատ դեպքերում՝ նաև բարձիթողության հետ, որը պահանջում է համակողմանի ընդլայնում և դրանց ժամանակակից տեխնիկական մակարդակի ապահովում: Նման առաջարկություններ մշակվել և ներկայացվել են ձեր քննարկմանը:

Բայց շատ ու շատ բան, ընկերներ, մենք կարող ենք և պետք է անենք անհապաղ, վճռական պայքար հայտարարելով անառողջ երևույթներին ու պրոցեսներին, որոնք մեզանում արդեն չափազանց խորն են արմատավորվել: Խոսքը, օրինակ, երկրում բավականաչափ ապրանքների առևտրում ընդհատումներ թույլ չտալու մասին է: Ինֆորմացիա ստանալով այն մասին, որ մշտապես մերթ այստեղ, մերթ այնտեղ առևտրի ցանցից անհետանում են աղը, շաքարը, ալյուրը և շատ այնպիսի բաներ, որոնք երկրում կան բավարար քանակությամբ, ակամա հանգում ես այն մտքին, որ ոմանք շահագրգռված են դեֆիցիտի պահպանմամբ կամ էլ, համենայն դեպս, լիովին զուրկ են մարդկանց հանդեպ պատասխանատվության զգացումից: Պետք է այդ բոլոր հարցերը դնել կուսակցական և սովետական մարմինների վերահսկողության տակ, աշխատավորների վերահսկողության տակ:

Կամ վերցնենք այնպիսի տարածված երևույթ, ինչպիսին է հերթը: Հերթեր կան ամենուրեք՝ և առևտրում, և սպասարկման ոլորտում, և տրանսպորտում, և կոմունալ տնտեսության ձեռնարկություններում, առողջապահության մեջ, և այն կազմակերպություններում ու հիմնարկներում, որոնք կապված են աշխատավորների այս կամ այն խնդրանքի բավարարման հետ: Պրոբլեմը այնքան սուր բնույթ է ստացել, որ մենք պետք է դրանով հիմնավորապես զբաղվենք և այստեղ պատշաճ կարգուկանոն հաստատենք: Խայտառակություն է, երբ շատ ղեկավար աշխատողներ հանգիստ նայում են հերթերին և անհրաժեշտ չեն համարում որևէ բան ձեռնարկել դրանք վերացնելու համար: Իսկ չէ որ դա ոչ այլ ինչ է, քան մարդկանց հանդեպ անհարգալից, անհոգի վերաբերմունք:

Ահա մենք ընկ. Լ. Ն. Զայկովի հետ օրերս եղանք Մոսկվայի «Զարյա» կոշիկի արդյունաբերական-առևտրական միավորման երկու ֆաբրիկաներում: Լավ տպավորություն է մնացել այդ այցելությունից: Հսկայական բավարարություն ստացա այն բանից, թե մարդիկ ինչպես են մտածում, ինչպե՞ս են նրանք գործում, ինչպես են քննարկում հիրավի պետական հարցերը:

Բայց ահա ես զրուցում եմ մի աշխատավորուհու հետ: Եվ նա, և ամուսինը լավ են վաստակում: Ունեն երկու երեխա: Եվ կարծես թե ամեն ինչ նորմալ է՝ բնակարանը, վաստակը: Իսկ ի՞նչն է նրան մտահոգում: Պատասխանում է. «Ամեն օր, Միխայիլ Սերգեևիչ, հարկ է լինում երկու, իսկ երբեմն էլ երեք ժամ հերթ կանգնել խանութներում: Դա հյուծում է: Աշխատանքում այնպես չեմ հոգնում, ինչպես հերթերում»:

Եվ չէ որ դա, ընկերներ, Մոսկվայում է, որտեղ, այնուամենայնիվ, ամեն ինչ կարելի է գնել: Բայց նույնիսկ այստեղ ստիպված ես կանգնել անվերջանալի հերթերում: Միևնույն խանութում՝ նախ մի դրամարկղի մոտ կանգնիր, հետո մյուսի, ապա վաճառասեղանի մոտ: Մարդիկ աշխատանքից հետո ժամերով հերթերում կանգնում են վաճառքում առկա հասարակ բաներ ձեռք բերելու համար: Մի՞թե այդպես կարելի է:

Այս բոլոր հարցերը, ընկերներ, սովետների հարցեր են: Եվ եթե սովետի ղեկավարը դա չի տեսնում, չգիտե, թե ինչպիսին է մարդկանց ինքնազգացողությունը, ապա մենք նրան իզուր ենք պահում ղեկավար պաշտոնում:

Մեկ անգամ ևս ուզում եմ ասել, ընկերներ, որ մենք պարտավոր ենք անհետաձգելիորեն և գործարար կերպով զբաղվել այդ սուր պրոբլեմների լուծմամբ: Այստեղ, իհարկե, կան նաև հարցեր, որոնք կապված են առևտրի ու կենցաղի ձեռնարկությունների թե տեղաբաշխման և թե նյութատեխնիկական հանդերձավորման բարելավման անհրաժեշտության հետ: Թույլ է տրվել մեծ թերացում:

Ինչպե՞ս մոտենալ այս հարցի լուծմանը:

Առաջինը, որ անցնում է յուրաքանչյուրի մտքով, առևտրի և կենցաղի հիմնարկների շինարարության համար դրամ կամ կապալ խնդրելն է: Ըստ երևույթին, դա ևս պետք է հաշվի առնել մեր պլաններում: Այդ ոլորտի թերացման պատճառով, այդ հարցին առնչվող մեր որոշման նախագծում էլ նախատեսված է նոր շինարարության ընդլայնում: Բայց եթե մենք գնայինք միայն այդ ուղիով, ապա պրոբլեմների՝ հատկապես անհետաձգելիների լուծումը կձգձգվեր տարիներ շարունակ: Իսկ մենք պետք է հնարավորություն գտնենք, որպեսզի մոտ ժամանակներս ջանանք շտկել գործը:

Ներկայումս Կենտկոմում և կառավարությունում խնդրանքներ են ստացվում այն առնչությամբ, որ այս կամ այն շինությունն օգտագործվի առևտրի և կենցաղային սպասարկումների ոլորտի ընդլայնման համար: Մենք դա վճռականորեն պաշտպանում ենք: Ըստ որում, այդ առումով քաղբյուրոն և կառավարությունը միանշանակ են արտահայտվել: Մենք կողմ ենք այն բանին, որ զանազան տնտեսական, ինչպես նաև կուսակցական և պետական հիմնարկների կառուցվող վարչական շենքերը հատկացվեն այդ նպատակներին, եթե միայն դրանց ծայրահեղ կարիքը չի զգացվում:

Ես վերջերս զրուցեցի գրող Վ. Պ. Աստաֆևի հետ: Խոսում էինք այն մասին, թե ժողովուրդն ինչպես է ապրում Կրասնոյարսկում: Որքան պրոբլեմ է այնտեղ կուտակվել: Հատկապես սուր են բուժսպասարկման պրոբլեմները, չեն բավականացնում ծննդատները: Եվ միևնույն ժամանակ քաղաքում ստեղծվում է հսկայական մարզահամալիր: Իհարկե, դա նույնպես անհրաժեշտ է: Բայց կան անհետաձգելի պրոբլեմներ, և դրանք պետք է լուծել առաջին հերթին: Քաղաքում կա երկրկոմի բավական լավ շենք, բայց կառուցել են նաև նորը: Հիմա ճիշտ են որոշել. այն հանձնել բնակչության սպասարկմանը:

Եվ առհասարակ, ընկերներ, պետք է վճռականորեն ազատվել տարբեր կարգի գրասենյակներից, կրճատել դրանց թիվը, դրանց շենքերը հատկացնել առևտրի ու կենցաղի ձեռնարկություններին, բուժհիմնարկներին: Դա, ինչպես ասում են, գործի մի կողմն է: Բայց կա նաև մյուս, ոչ պակաս կարևորը: Դա այն միջոցների իրացումն է, որոնք հատկացվում են այդ ոլորտի զարգացմանը: Եկեք պայմանավորվենք. այն, ինչ հատկացված է, պետք է իրացվի:

Եվ կուսակցական մարմինները պետք է դա առնեն իրենց վերահսկողության տակ: Թե չէ այնպես է ստացվել, որ մենք մեր աշխատանքում ներքաշվել ենք բազմաթիվ տնտեսական գործերի մեջ, իսկ մարդկանց բուն կյանքին առնչվող հարցերը երբեմն բաց ենք թողնում: Իսկ չէ որ նպատակն այն է, որ մարդն ավելի լավ ապրի, որ նրա ինքնազգացողությունը նորմալ լինի: Ահա թե ինչու կուսակցական մարմինների աշխատանքի վերակառուցման հիմնական իմաստն այն է, որ նրանք զբաղվեն իսկական կուսակցական գործերով, քաղաքական, կազմակերպչական, գաղափարախոսական աշխատանքով, ժողովրդին ավելի մոտիկ լինեն: Ինքը կյանքը պարզապես ճչում է այդ մասին: Ահա ամենագլխավոր փաստարկը, թե ինչու մենք պետք է վերակառուցվենք, ընկերներ:

Վերակառուցումը հենց նրանով է ուժեղ, որ նա մերկացրել է այդ բոլոր հարցերը, պայմաններ ստեղծել, որպեսզի մարդիկ կարողանան արտահայտել իրենց դի-

տողությունները ու առաջարկությունները, իրավիճակի գնահատումները: Վերակառուցումը մարդկանց համար իրական հնարավորություններ է ստեղծում հաշիվ պահանջել նրանցից, ում խիղճը մաքուր չէ կամ ովքեր սխալմամբ հայտնվել են ղեկավար պաշտոնում:

Ընկերներ, վերջիվերջո խոսքը միանգամայն լուծելի հարցերի մասին է, որոնք չեն պահանջում երկարաժամկետ ծրագրերի մշակում, գիտական մշակումներ: Այստեղ շատ բան կարելի է անել, հենվելով տեղական ռեսուրսների վրա, տեղական նախաձեռնության վրա, իսկ որ գլխավորն է՝ կարելի է կարգուկանոն հաստատել և մշտապես տեսադաշտում պահել այդ հարցերը:

Կարծում ենք, այս խոսակցությունը իզուր չի անցնի: Մենք բոլորս պետք է լուրջ դասեր առնենք և շտկենք գործը:

Մեծ ուշադրություն պահանջող հարցերի թվին պետք է դասել նաև շինարարական ինդուստրիայի բազայի զարգացումը: Այդ մասին ասվեց պատգամավորների ելույթներում: Ընդլայնելով բնակարանների, սոցիալական մյուս օբյեկտների շինարարությունը, մենք դժվարությունների բախվեցինք շինանյութերով, տեխնիկայով, սարքավորումներով և այլ բաներով այն ապահովելու գործում: Այս հարցը քննության է առնվել: Մշակվել են լրացուցիչ միջոցառումներ, որոնք նպատակամղված են շինանյութերի արտադրության զգալի աճին: Այս ամենը պահանջում է մեծ ջանքեր, մեծ ուշադրություն:

Մեր կողմից առաջարկվող բոլոր միջոցները, ընկերներ, համապատասխանում են կոնֆերանսի հիմնադրույթներին, որը հանձնարարեց տասներեքերորդ հնգամյակի պլանը մշակել մեր էկոնոմիկայի սոցիալական ուղղվածությունն ուժեղացնելու դիրքերից: Ըստ էության, մենք կարող ենք արձանագրել, որ արդեն այսօր այդ ուղղությամբ նոր խթան է տրվել մեր աշխատանքին:

Ընկերներ, մենք բոլորս ականատես եղանք այն սուր դիսկուսիային, որը կոնֆերանսում ծավալվեց արմատական տնտեսական ռեֆորմի պրոբլեմների շուրջ: Մենք ի՞նչ հետևություններ ենք անում դրանից:

Նախ և առաջ, հիմնական և գլխավոր հարցում տնտեսական ռեֆորմի ուղղությունները ճիշտ են ընտրված: Ավելին, մեկ անգամ ևս հաստատվեց, որ սոցիալ-տընտեսական վերափոխումների հաջողությունը կարող է ապահովվել միայն ռեֆորմի հետևողական իրականացման ու խորացման միջոցով: Ասենք, առհասարակ ռեֆորմը ոչ ոք կասկածի տակ չի էլ առել, թեև սրությամբ քննադատվել է դրա իրականացման ընթացքը:

Կոնֆերանսը հաստատեց նաև այլ բան. գոյություն ունի հակազդեցություն իներցիոն, պահպանողական ուժերի կողմից, որոնք կուզենային սուսուփուս ռեֆորմը իջեցնել արգելակների վրա, օգտագործելով դրա ճանապարհին ծագող նվազագույն հնարավորությունները, խոչընդոտներն ու սխալները: Կարծում եմ, կարելի է համաձայնել այդ հարցի առթիվ պատգամավորների արած առաջարկությանը. նման մարդկանց, այսինքն ռեֆորմի ճանապարհին կանգնողներին, պետք է հեռացնել ղեկավար աշխատանքից:

Իսկ մենք ի՞նչ պետք է անենք տնտեսական ռեֆորմի ընթացքն արագացնելու համար: Քաղբյուրոն քննարկել է այդ առնչությամբ կառավարության արած հետևությունները և դրանց հետ կապված առաջարկությունների կոմպլեքսը:

Առաջին: Նախ և առաջ պետք է վճռականորեն հաղթահարել տնտեսավարման նոր ձևերի ու մեթոդների էությունը խեղաթյուրելու փորձերը, արգելք կանգնեցնել տնտեսական մեխանիզմը նախկին հուն վերադարձնելու մտադրությունների առջև:

Դա մասնավորապես վերաբերում է պետական պատվերի հարցին, որը կոնֆերանսում այնքան թեժ քննարկվեց պրակտիկայում արտադրանքի ծավալի դիրեկտիվային պլանավորման քողարկված ձևի վերաճելու կապակցությամբ: Այս առումով կառավարության առաջարկություններն իրենց մեջ ամփոփում են արտադրության ընդհանուր ծավալում պետական պատվերի բաժնի էական նվազումը, ոչ թե ճյուղային մինիստրությունների, այլ պետպլանի ձեռքին պետպատվերի հանձնման իրավունքի կենտրոնացումը:

Առաջիկա երկու տարում առաջարկվում է սահմանել պետպատվերի մասին ժամանակավոր կանոնադրություն: Մինիստրների խորհրդի նախագահությունը այդ հարցը քննարկել է, հրավիրելով մի մեծ խումբ տնտեսավարների, գիտնականների: Լուրջ դիսկուսիայից հետո հանգել են այն հետևության, որ հարկավոր է պետպատվերի մասին ժամանակավոր կանոնադրություն, անցումային փուլը պահանջում է հենց



այդպիսի մոտեցում, նկատի ունենալով, որ պետպատվերի գաղափարի լիակատար մարմնավորումը կարող է իրականացվել միայն արտադրության միջոցների մեծածախ առևտրի անցնելու և գնագոյացման ռեֆորմի կապակցությամբ: Այստեղ, ինչպես ասում են, պարզապես չես ցատկի:

Երկրորդ: Պետք է բոլոր ճյուղերի ձեռնարկությունները փոխադրել լրիվ տընտհաշվարկի և ավարտել տնտեսական նոր մեխանիզմի ձևավորումը: Հարկ է ընդգծել, որ տնտեսական նոր մեխանիզմը կարող է լրիվ ուժով գործել միայն գների նոր հարաբերակցությունների բազայի վրա, արդյունավետորեն գործող սոցիալիստական շուկայի ստեղծման, ֆինանսների առողջացման, ճյուղավորված և ներգործուն բանկային համակարգի ստեղծման, մեծածախ առևտրի վարման պայմաններում, և, իհարկե, այն ենթադրում է կառավարման կառուցվածքի համապատասխան վերակազմում, արտաքին տնտեսական կապերի համակարգի վերակառուցում:

Կուզենայի այս կապակցությամբ ընդգծել ժողովրդական տնտեսության ֆինանսական առողջացման, դրամական շրջանառության ամրապնդման կարևորությունը: Արդեն եկող տարվա պլանն ու բյուջեն նախապատրաստելիս մենք պետք է սկսենք բյուջետային դեֆիցիտի կրճատումը, իսկ դրա համար հարկավոր է ուշադրությամբ քննության առնել կապիտալ շինարարության պլանները, դիմել բյուջետային ֆինանսավորումը բանկային վարկով լայնորեն փոխարինելուն, վճռականորեն կրճատել մյուս անարտադրողական ծախսերը: Կարճ ասած, կարևոր է ըստ միջոցների ապրել սովորել: Թող սկզբնական շրջանում մեզ մոտ նույնիսկ նվազի կապիտալ ներդրումների ծավալը, փոխարենը խիստ կկրճատվի նոր սկսվող և անավարտ կառույցների քանակը:

Իսկ ինչ վերաբերում է թույլ ձեռնարկություններին, որոնք ներկայումս կերակրվում են մինիստրական ողորմությունների հաշվին, այստեղ կարելի է լայնորեն օգտագործել որոշակի պայմաններով վարկերի տրամադրումը, անհրաժեշտության դեպքում կիրառել նման ձեռնարկությունների վերակազմում, իսկ ծայրահեղ դեպքում՝ նաև վերացում, դրանք վարձակալման հանձնել աշխատավորական կոլեկտիվներին կամ կոոպերատիվներին: Եվ պետք չէ դրանից վախենալ:

Էկոնոմիկայի առողջացմանը պետք է նպաստեն նաև բանկերի աշխատանքի վերակառուցումը, դրանց փոխադրումը լրիվ տնտհաշվարկի, առևտրային բանկերի ցանցի զարգացումը:

Երրորդ: Կոնֆերանսում շահագրգիռ կերպով քննարկվում էր կառավարման կազմակերպական կառուցվածքների վերակառուցման և հատկապես տնտեսավարման նոր համակարգում մինիստրությունների դերի հարցը: Թերևս դա ներկայումս առավել պատասխանատու ուղղությունն է կառավարման համակարգի վերակառուցման մեջ: Եվ հարկավոր է կշռադատված մոտենալ այդ հարցի լուծմանը, հենվելով ինչպես կառավարման մարմինների, այնպես էլ ձեռնարկությունների փորձի և նոր ֆունկցիաների վրա, որոնք պարտավոր են նախ և առաջ ենթարկվել օրենքներին և դրանցում սահմանված տնտեսական վարքագծի կանոններին:

Պետք է ուղղակի ասել, որ հենց այն բանից, թե նոր պայմաններում կառավարման մարմինները որքան արագորեն կգտնեն իրենց տեղը, որքան հաջողությամբ կկարողանան տիրապետել տնտեսավարման նոր մեթոդներին, ձեռնարկությունների հետ նորովի կառուցել հարաբերությունները, վճռական չափով կախված կլինի թե կառավարման բուն մարմինների և թե ապարատի կադրերի հեղինակությունը: Կոնֆերանսում ձևակերպվեց հստակ դիրքորոշում. մենք չենք կարողանա առանց կառավարման ժամանակակից ու բանիմաց, բարձր պրոֆեսիոնալ ապարատի: Բայց դրա հետ մեկտեղ այդ ապարատը պետք է իր աշխատանքը վճռականորեն վերակառուցի, նկատի ունենալով արմատական տնտեսական ռեֆորմի պահանջները և աշխատավորական կոլեկտիվների նոր դերը:

Չորրորդ: Քաղաքական սիստեմի ռեֆորմի կապակցությամբ ծառանում է ձեռնարկությունների և սովետների հարաբերությունների վերակառուցման խնդիրը: Սա ճիշտ հարցադրում է: Ըստ էության խոսքը ինքնակառավարման տնտեսական հիմք ստեղծելու մասին է՝ տեղական մարմիններին հանրային սեփականության հատկացվող մասի ձևով, որը ներառում է կոմունալ տնտեսությունը, սպասարկման համակարգը, բնակարանային ֆոնդը, քաղաքային տրանսպորտը և այլն:

Դա չպետք է հասկանալ այնպես, թե միութենական մինիստրությունների փոխարեն հիմա ձեռնարկություններին կհրամայեն հանրապետական և տեղական մարմինները: Դա կնշանակեր մի հրամայական համակարգի պարզունակ փոխարինում

մեկ ուրիշով: Բոլոր ձեռնարկությունները ու միավորումները իրավունք ունեն և պետք է աշխատեն երկրի միասնական շուկայի համար, իսկ նրանց փոխհարաբերությունները պետք է խարսխվեն արտադրանքի համարժեք փոխանակման վրա: Իսկ ինչ վերաբերում է տեղական մարմինների հետ նրանց հարաբերություններին, ապա դրանք պետք է ամրապնդվեն համապատասխան իրավական նորմաներով և տնտեսագիտական նորմատիվներով:

Անհրաժեշտ է լիովին օգտագործել աշխատանքի տարածքային բաժանման առավելությունները միասնական ժողովրդատնտեսական համալիրի շրջանակներում և, դրա հետ մեկտեղ, բյուջետային եկամուտների աճի միջոցով ապահովել հանրապետական ու տեղական մարմինների շահագրգռությունը ռեգիոնալ էկոնոմիկայի արդյունավետության բարձրացմամբ:

Հինգերորդ: Առաջարկվում է աշխատավորական կոլեկտիվներին իրավունք ընձեռել ինքնուրույն ընտրելու տնտհաշվարկի այս կամ այն ձևը, ուժեղացնելու շահագրգռությունը նրա երկրորդ տարատեսակի օգտագործմամբ: Դա կնշանակի հրաժարվել աշխատավարձի ֆոնդի գոյացման և շահույթի բաշխման նորմատիվները վերստին սահմանելուց: Ներարտադրական հարաբերությունները կկառուցվեն տնտհաշվարկային եկամտի բաշխման և օգտագործման հիման վրա, իսկ պետության և ձեռնարկությունների հարաբերությունները կկարգավորվեն հարկերի կոպարներով՝ զուգակցված պետական արտոնությունների համակարգի հետ: Դա շատ ցանկալի կլիներ, ընկերներ:

Տնտեսական ռեֆորմի պրոբլեմների քննարկման համատեքստում կկամենայի մեկ անգամ ևս ասել վարձակալական հարաբերությունների մասին: Պահպանելով ինչպես պետական, այնպես էլ կոոպերատիվ սեփականությունը, հենց դրանք են թույլ տալիս հաղթահարել նրանց այսպես ասած «ոչնքիությունը», ապահովել աշխատողների, աշխատավորական կոլեկտիվների իրական տնտեսական ինքնուրույնությունն ու պատասխանատվությունը, մարդկանց վաստակի անմիջական կապը նրանց աշխատանքի վերջնական արդյունքների հետ: Սկզբունքորեն կարևոր է, որ վարձակալական կապալի դեպքում տեղ չի մնում կառավարման հրամայական մեթոդների համար, քանի որ ենթակայության հարաբերությունները վերածում են պայմանագրային, փոխպատասխանատու պարտնյորական հարաբերությունների: Ուստի և վարձակալության մասին օրենքը, որի մասին ես արդեն ասացի, պետք է լինի մի ակտ, որը տարածվի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վրա:

Մենք պարտավոր ենք վերացնել վարձակալական հարաբերությունների տարածման ճանապարհին եղած բոլոր խոչընդոտները, անհապաղ լուծել անհրաժեշտ իրավական հարցերը, ներառյալ վարձակալության ժամկետների հարցը: Ես այդ մասին արդեն ասել եմ, բայց մեկ անգամ ևս ընդգծեմ, վարձակալության կարճ ժամկետները չեն խթանի ներդրումները արտադրության զարգացման ու արդիականացման գործում և կարող են նույնիսկ գուփողական տրամադրություններ հարուցել: Դա ակներև է: Հարկավոր են նաև վարձակալական վճարի հաստատուն կոպարներ, որոնք հաշվի առնեին թե բյուջեի, թե աշխատավորական կոլեկտիվների շահերը:

Վերջում, ընկերներ, կկամենայի շոշափել ևս մի քանի հարց, որոնք իրենց բովանդակությամբ տարբեր են, բայց, կարծում եմ, կարևոր են մեր աշխատանքի համար:

Առաջին հարցը վերաբերում է գիտությանը: Կոնֆերանսը սրությամբ դրեց այն զարգացնելու հարցը, նշեց, որ մեզ համար սկզբունքորեն կարևոր նշանակություն ունեցող մի շարք ուղղություններում մեզ մոտ նկատվել է նրա հետ մնալը թե գիտական մշակումների համաշխարհային մակարդակից, թե մեր հասարակության ժողովրդական տնտեսության պահանջներից: Դրա հետ, ընկերներ, չի կարելի չհամաձայնել, և դա մեզ պարտավորեցնում է ամենայն ուշադրությամբ վերաբերվել կոնֆերանսի գնահատականների ու պահանջների իրացմանը:

Կարծում եմ, որ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ղեկավարությունը պետք է կրկին անդրադառնա հիմնարար հետազոտությունները և հայրենական գիտության զարգացման մյուս ուղղությունները զարգացնելու իր ծրագրերին: Առանց գիտության ակտիվ օգնության մենք ի վիճակի չենք հաղթահարելու վերակառուցման խնդիրները:

Իրենց հերթին պետական մարմինները ևս, մասնավորապես ՍՍՀՄ պետպլանը և ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն, պետք է քննարկեն գիտության նյութական բազան արմատապես բարելավելու հարցերը, վերանայեն կա-



ռուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականությունը, որպեսզի ապահովվի նպաստավոր պայմանների ստեղծումը նրա առաջնային ուղղությունների զարգացման համար: Շատ հարցեր մենք արդեն լուծել ենք, ուրիշների գծով հարկավոր է արագացնել լուծումների նախապատրաստումը:

Առանձնահատուկ ուշադրություն են պահանջում հասարակական գիտությունները: Բոլորիս հաղորդվեցին կուսկոնֆերանսում արտահայտված տագնապն ու անբավարարվածությունը դրանց ներկայիս վիճակով: Պետք է մեկ անգամ ևս ասել, որ խնդիրը միայն բուն գիտությունը չէ: Ներկայիս իրավիճակը զգալի չափով բացատրվում է անցյալում հասարակական գիտությունների նկատմամբ եղած վերաբերմունքով: Բայց, այդուհանդերձ, մենք պետք է ասենք, որ այդ ոլորտում վերակառուցումը հետ է մնում ժամանակի պահանջներից, վերակառուցման բուն պրակտիկայից: Եվ դա չի կարող չանհանգստացնել մեզ:

Մենք պետք է ուղղակի ասենք, որ այսօր մեր բազմաթիվ խոշոր գիտական կենտրոններ բավարարվում են մեկնաբանների ու քննադատների դերով և առայժմ դեռևս քիչ են տալիս բուն վերակառուցման առաջադրած ժամանակակից պրոբլեմների խորացված մշակումներ, որոնց լուծումից են զգալիորեն կախված վերակառուցման թե ընթացքը, թե հաջողությունները, նրա արդյունքները:

Չեմ կարող չկիսել հետևյալ տպավորությունը. մեր որոշ գիտնականներ շարունակում են մնալ, ես կասեի, այն դիրքերում, որոնցում նրանք գտնվում էին վերակառուցման սկզբին և չեն նկատում, որ վերակառուցումն արդեն դուրս է եկել միտինգային փուլից և մտել խոր վերափոխումների հուն սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտներում: Իսկ դա պահանջում է երևույթների գիտական խոր վերլուծություն, ներթափանցում դրանց էության մեջ, տեղի ունեցող պրոցեսների իմաստավորում: Ինչպես ինձ թվում է, հենց սա է պակասում մեր հասարակագետներին:

Երկրորդ հարցը էկոլոգիան է: Կոնֆերանսում շատ ուշադրություն դարձվեց այդ ոլորտի անբարեհաջող վիճակին: Այդ պրոբլեմի սրությունն ու անհետաձգելիությունը խորապես գիտակցված են հասարակության մեջ, և գոյություն ունի այն հասարակական կարծիքը, որ այստեղ արմատական փոփոխություններ են պահանջվում մոտեցումների նկատմամբ:

Ես կցանկանայի այդ պրոբլեմը բաժանել երկու մասի: Որոշ հարցեր հսկայական կապիտալ ծախսեր ու ռեսուրսներ չեն պահանջում: Այստեղ խնդիրն այն է, որ աշխատանքը կազմակերպվի ինչպես հարկն է և իրականացվեն արդեն նախանշված միջոցառումներն ու ծրագրերը: Պետք է, որ այդ անհետաձգելի, կոնկրետ հարցերը լուծվեն համապատասխան կենտրոնական գերատեսչությունների ու տեղական մարմինների մասնակցությամբ: Ընդ որում, դրանք պետք է քննարկվեն և լուծվեն օպերատիվ կերպով:

Մյուս հարցերը կապված են խոշոր հատկացումների հայթայթման ու իրացման, տեխնիկայի և տեխնոլոգիայի համապատասխան փոփոխությունների հետ: Մի խոսքով, դա այն է, ինչ հեռանկարային բնույթ է կրում: Այս ամենը, ընկերներ, պետք է քննարկել շրջակա միջավայրի պահպանության և ՍՍՀՄ-ի բնական ռեսուրսների նպատակահարմար օգտագործման երկարաժամկետ պետական ծրագիր կազմելիս: Նման աշխատանք արդեն կատարվում է տասներեքերորդ հնգամյակի և մինչև 2005 թվականն ընդգրկող հեռանկարային պլանի նախապատրաստման շրջանակներում: Եվ հենց այդ աշխատանքի շրջանակներում պետք է քննարկվեն կոնֆերանսում արված բոլոր առաջարկությունները:

Երրորդ հարցը երիտասարդության նկատմամբ կուսակցության քաղաքականության մասին է: Սկզբունքային առումով այդ մասին ասվեց կոնֆերանսում: Խնդիրն այն է, որ ամեն ինչ փոխադրվի գործնական աշխատանքի հուն: Կարծում եմ, որ արդեն այժմ մենք պետք է ընդհուպ զբաղվենք այդ հարցերին նվիրված Կենտկոմի պլենումի նախապատրաստությամբ: Այդտեղ լուրջ աշխատանք կպահանջվի: Մենք չենք կարող սահմանափակվել սոսկ մակերեսին գտնվող պրոբլեմների քննարկմամբ: Մեզ հարկավոր է երկարաժամկետ քաղաքականություն, որը հիմնված լինի խոր վերլուծության վրա և կողմնորոշված լինի դեպի մեր հասարակության արմատական խնդիրներից մեկի լուծումը՝ արժանի հերթափոխի նախապատրաստմանը:

Եվս մի հարց, ընկերներ: Բուն կոնֆերանսը, նրա ընթացքում կայացած դիսկուսիան ցույց տվեցին, թե ներկայումս ինչքան կարևոր է շարունակել այն աշխատանքը, որ մենք գաղափարախոսության ոլորտում կատարում ենք բոլոր տարիներին ապրիլից հետո: Եվ դա ճիշտ է, քանի որ ձեռնամուխ լինելով պատմական մասշտա-

բի գործերի; մենք չենք կարող հաջողությամբ վարել դրանք, չիմաստավորելով անցյալն ու ներկան և չկանխատեսելով հասարակության ապագա զարգացման հիմնական միտումները:

Մենք այժմ առանձնակի խորությամբ ենք հասկանում հեղափոխական տեսության նշանակության մասին լենինյան մտքի ողջ խորությունը: Կարելի է ուղղակի ասել և այն, ինչ մեզ հաջողվեց անել քաղաքականության, գործնական աշխատանքի ոլորտում պատմական չափանիշներով այդ կարճ ժամանակամիջոցում, և այն, որ կուսակցությունը պատմական այդ շրջադարձային փուլում ամբողջությամբ վերցված ապահովում է քաղաքական ավանգարդի, գաղափարների գեներատորի դերը, գլխավոր բանում ընթանում է առջևից, այդ ամենին մենք չէինք կարող հասնել, եթե մշտապես և հետևողականորեն չզբաղվեինք տեսության, գաղափարախոսության հարցերով

Եվ, այդուհանդերձ, կոնֆերանսը կրկին ամբողջ ուժով ցույց տվեց, որ գաղափարախոսական ոլորտում չի կարող լինել ոչ մի թուլացում, առավել ևս ուշացում: Այստեղ չի կարելի սահմանափակվել հանպատրաստից ձեռնարկումներով, միանգամյա կամպանիաներով, մասնավոր խնդիրներ լուծելով վերակառուցման սկզբունքային նպատակների համատեքստից դուրս: Ոչ միայն էկոնոմիկայի ու սոցիալական քաղաքականության ոլորտի ընդհատումներն ու վրիպումները, այլև տեսական ու գաղափարախոսական ճակատում հետ մնալը, չխոսելով արդեն սխալների մասին, կարող են բարդացնել և անուղղելի վնաս հասցնել մեր հեղափոխական գործին: Ահա թե ինչու է հարկավոր, որ մենք այսուհետև էլ ընդլայնենք տեսական հետազոտությունների ճակատը, խորացնենք գաղափարախոսական աշխատանքը բոլոր ուղղություններում:

Տեսական պրոբլեմների լուծման համար մեր կուսակցության և հասարակության ներունակ հնարավորությունները հիրավի հսկայական են, ընկերներ: Ասենք, այսօրվա բարոյաքաղաքական մթնոլորտն էլ բոլոր պայմաններն ստեղծում է, որ ակտիվ ստեղծագործական պրոցես ընթանա հասարակական մտքի բոլոր ուղղություններում, որն անմիջական ազդեցություն ունի հասարակական գիտակցության ձևավորման վրա:

Բայց այդ ամբողջ պոտենցիալը, մենք այստեղ՝ Կենտկոմի պլենումում, պետք է դա ինքնաքննադատաբար խոստովանենք, կուսակցությունը դեռևս ինչպես հարկն է չի օգտագործում, շարժման մեջ չի դրել, չի մտցրել վերակառուցման հունի մեջ: Ի՞նչն է այստեղ խանգարում, ընկերներ:

Անշուշտ, տեսության, հասարակական մտքի զարգացումը, գաղափարախոսության նորացումը, նոր գիտակցության ձևավորումը շատ բարդ, ոչ միանշանակ, հակասական պրոցես է: Այն պահանջում է ժամանակ ու ջանքեր: Բայց և չի կարող ընթանալ տարերայնորեն: Այն մշտապես պետք է կողմնորոշվի կոլեկտիվ աշխատանքի հիման վրա, ստեղծագործական բանավեճերի, նոր գաղափարների որոնման, հայացքների համադրման, կարծիքների պայքարի միջոցով:

Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են տեսնել այդ խնդրի ամբողջ մասշտաբայնությունն ու բարդությունը, պարզունակացումն այստեղ անթույլատրելի է: Մենք չենք կարող սպասել, որ ամեն ինչ ընթանա ինքնահոսի կարգով, ասես ինքն իրեն: Այդ ոլորտում մեր աշխատանքը պետք է վճռականորեն ակտիվացվի, ընդ որում, ամենալայն ճակատով, հարկավոր են դիսկուսիաներ, սեմինարներ, կոնֆերանսներ, հրապարակումներ: Մի խոսքով, գիտական գործունեության ամենաբազմազան ձևեր, որոնք ընդունակ են արթնացնել ստեղծագործական միտքը:

Եվ, անշուշտ, անհրաժեշտ է գաղափարախոսական ակտիվ գործունեություն, որը պրակտիկայի փոխակերպի տեսության ու քաղաքականության բնագավառում արդեն եղած նվաճումները վերակառուցման ներկայիս փուլում: Պետք է նպատակասլաց ու խելամիտ աշխատանք տանել ուղղված այն բանին, որ վերակառուցման գաղափարները հետզհետե ավելի լայնորեն տիրապետեն մասսաներին, որպեսզի տեսությունը դառնա վերակառուցման հիրավի նյութական ուժը:

Եվ ես ահա թե էլ ինչ կասեի, ընկերներ: Ձայներ են հնչում, թե մեզ մոտ անչափ շատ են դիսկուսիաները: Կասեմ միանշանակ. մեզ հարկավոր են դիսկուսիաներ, հասունացած բոլոր պրոբլեմների լրջմիտ ստեղծագործական քննարկումներ: Միայն այդպես է հնարավոր ձևավորել հասարակական ակտիվ կարծիքը, ժողովրդի գիտակցությունը, առանց որի անհնար է լուծել հասարակության բարեփոխման մեծ խնդիրները:

Մի հարցի մասին էլ ընկերներ: Չպետք է վախենալ մեր ժամանակի, կենսական



պրոցեսների նորովի լինելուց: Թերևս, մենք դեռ նոր ենք սկսում իսկապես գիտակցել, որ վերակառուցումը հիրավի հեղափոխական, վերափոխիչ պրոցես է: Դեռ ավելին, ընկերներ, վստահ եմ, որ մեր շարժման նորությունը դեռ շատ անակնկալներ կմատուցի մեզ: Ուրեմն ինչպե՞ս վարվենք. խուճապի՞ մատնվենք, շտապենք գնահատականնե՞ր տալ կամ հետևություննե՞ր անել: Ոչ, ընկերներ, անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել կյանքը, ինչպիսին որ կա, զսպվածություն դրսևորել և մանրակրկիտ վերլուծության հիման վրա, վերջին հաշվով, ընդունել մտածված որոշումներ՝ ի շահ մեր հասարակության, ի շահ սոցիալիզմի:

Ես այդ ուղղությամբ լավ մտածված, խոր, հետևողական աշխատանքի կողմնակիցն եմ: Մենք, որպես Լենինի կուսակցություն, որպես քաղաքական հզոր օրգանիզմ, պետք է մեր ամբողջ մտավոր կարողությունը գործի դնենք և քայլ առ քայլ առաջ ընթանանք տեսության հարցերում, հարստացնելով քաղաքականությունն ու պրակտիկան: Իր հերթին պրակտիկայից վերցնելով նոր փորձը, այն իմաստավորենք և ճանապարհ հարթենք հետագա գործունեության համար, հետևողականորեն կենսագործենք ՍՄԿԿ-ի մշակած քաղաքական կուրսը:

Մենք պետք է լավ յուրացնենք, որ հին պատկերացումների չափանիշները չեն համապատասխանում նոր երևույթներին: Եվ ամենակարևորը. եկեք վերակառուցման պայքարի ընթացքում չկորցնենք գլխավոր ուղղությունները, չշեղվենք մասնակի խնդիրներով, ուժերս չվատնենք փուչ բաների վրա: Նոր գործում կորուստները անխուսափելի են, դրանց կողքով անցնել չի կարելի: Բայց մեր սեփական փորձն արդեն ցույց է տվել, որ միայն հեղափոխական վերափոխումների ուղիով վճռական և իսկական առաջընթացն է վերացնում այն հարցերը, որոնք դեռ երեկ անլուծելի և նույնիսկ սպառնալից էին թվում:

Անշուշտ, այդ ամենը մեզանից պահանջում է մտավոր աշխատանք, ստեղծագործական գործունեություն, հարատև ուշադրություն այն երևույթների ամբողջ սպեկտրի նկատմամբ, որոնց ամեն օր ծնում է վերակառուցումը: Դա պետք է բոլորը հասկանան, դրա համար պետք է ժամանակ գտնել, քանի որ առանց նման աշխատանքի անխուսափելի է հետ մնալը, կյանքը կարող է մեզանից առաջ անցնել: Իսկ դա թույլ տալ մենք պարզապես իրավունք չունենք, եթե ուզում ենք իրոք լինել մեր հեղափոխական ժամանակի քաղաքական ավանգարդը:

Սրանք են կոնֆերանսի որոշումների կատարմանն առնչվող որոշ նկատառումները: Եկեք քննության առնենք պլենումի քննարկմանը ներկայացված առաջարկությունները:

Ընդհանուր առմամբ, ինչպես տեսնում եք, մեր աշխատանքների ծրագիրը լարված է, այն բխում է վերակառուցումը խորացնելու հրամայական պահանջներից, կանխորոշվում կուսակցության XXVII համագումարի և XIX համամիութենական կուսկոնֆերանսի որոշումներով:

Մեզ արմատական տեղաշարժեր են հարկավոր հասարակության նորացման բոլոր տեղամասերում և առաջին հերթին սովետական մարդկանց կյանքի կենսական պրոբլեմների լուծման մեջ: Դա յուրաքանչյուր կուսկազմակերպության, յուրաքանչյուր կոմունիստի գործն է:

Տեղերը օժտելով մեծ լիազորություններով, հնարավորություններ ստեղծելով հասարակական-քաղաքական, տնտեսական և աշխատանքային նախաձեռնության զարգացման համար, մենք դրանով իսկ օժտում ենք նաև կուսակցական պատասխանատվությունը, կոմունիստների անձնական պատասխանատվությունը վերակառուցման կոնկրետ տեղամասերում աշխատելու համար:

Այսօր գործողությունների ժամանակն է: Եվ վերակառուցման մեջ յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատողի ավանդը որոշվում է կոնկրետ գործով և աշխատանքի կոնկրետ արդյունքներով:

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ՍՄԿԿ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԳՈՐԾՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

1. ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեն նշում է, որ ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը, որը դարձավ կուսակցության և երկրի կյանքի խոշոր իրադարձությունը, ընդունեց որոշումներ, որոնց իրագործումը թույլ կտա զգալիորեն արագացնել վերակառուցման, արմատական տնտեսական ռեֆորմի և սովետական հասարակության դեմոկրատացման պրոցեսները:

ՍՄԿԿ Կենտկոմի զեկուցման և կոնֆերանսի մյուս փաստաթղթերի շուրջ պատգամավորների բարձր ակտիվության պայմաններում անցած մտքերի փոխանակությունը անկեղծ ու սկզբունքային բնույթ էր կրում, տոգորված էր մեծ հոգատարությամբ ժողովրդի բարօրության, սոցիալիզմի ճակատագրի նկատմամբ: Արվեցին և մտցվեցին շատ առաջարկություններ վերակառուցմանը խանգարող և նորացման պրոցեսները զսպող թերությունների վերացման, քաղաքական սիստեմի ռեֆորմի անցկացման, հասարակության և կուսակցության կյանքի հետագա դեմոկրատացման վերաբերյալ: Դիտողությունների և գործարար նկատառումների զգալի մասը վերաբերում է աշխատավորական կոլեկտիվների գործունեության, բնակչության մատակարարումը բարելավելու, աշխատավորների սպասարկման բոլոր ոլորտների զարգացումն արագացնելու անհետաձգելի հարցերին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական կազմակերպություններին պարտավորեցնում է կենտրոնանալ կոնֆերանսի հիմնադրույթների կենսագործման վրա, ձգտելով հասնել այն բանին, որ դրանց կատարումը դառնա կուսակցության, պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների աշխատանքի առանցքը, մարդկանց մղի գործելու լիակատար նվիրումով ու հանձնարարված տեղամասի համար պատասխանատվությամբ: Վճռական նշանակություն են ձեռք բերում կոմունիստների նախաձեռնությունն ու կազմակերպվածությունը, կուսակցության յուրաքանչյուր անդամի ակտիվ դիրքորոշումը ծագող պրոբլեմների կոնստրուկտիվ լուծման, քաղաքական, տնտեսական, սոցիալական ու հոգևոր ոլորտներում նոր մոտեցումների հաստատման գործում, թերությունների, բյուրոկրատիզմի, անկարգապահության և անպատասխանատվության դրսևորումների դեմ մղվող պայքարում: Ամբողջ աշխատանքը պետք է կատարել կոնկրետորեն ու հաստատակամորեն, ձգտելով հասնել շոշափելի արդյունքների:

2. Հավանություն տալ երկրի պարենային ապահովումը բարելավելու միջոցառումների, ագրոարդյունաբերական համալիրում տնտեսական հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի մշակած առաջարկություններին:

Նպատակահարմար համարել, որ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդները, ժողովրդական դեպուտատների երկրամասային ու մարզային սովետների գործկոմները, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմ-



ներն ու մարզկոմները այդ առաջարկությունների հիման վրա մշակեն և իրականացնեն երկրի պարենային ապահովումը բարելավելու կոնկրետ միջոցառումներ:

Ընդունել ի գիտություն, որ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի հանձնարարականներին համապատասխան, առաջարկություններ է մշակել արմատական տնտեսական ռեֆորմը զարգացնելու և խորացնելու և նրա իրականացման ընթացքում ի հայտ բերված թերությունները վերացնելու միջոցառումների մասին: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հավանությանն արժանացած վերոհիշյալ առաջարկությունները դնել արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման հետագա աշխատանքի հիմքում:

Հավանություն տալ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ներկայացրած ՍՍՀՄ կառավարության որոշումների նախագծերին՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու, բնակչության առևտրական սպասարկումը բարելավելու և վճարովի սպասարկումների ոլորտը արմատապես վերակառուցելու հարցերի վերաբերյալ, որոնք արծարծվեցին XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսում:

3. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին և համապատասխան սովետական մարմիններում աշխատող կոմունիստներին՝ հաշվի առնելով XIX կուսակցական կոնֆերանսի որոշումները, մոտ ժամանակներս գործնական քայլեր իրականացնել կուսակցական կոմիտեների և ժողովրդական դեպուտատների սովետների ֆունկցիաները սահմանազատելու ուղղությամբ: Ընդ որում ապահովել սովետների պատասխանատվության բարձրացումը տարածքների սոցիալ-տնտեսական զարգացման, նրանց ինքնուրույնության ուժեղացման համար, օգնություն ցույց տալ սովետները կադրերով ամրապնդելու, տեղական գործերի ղեկավարման, կուսակցության և պետության քաղաքականության կենսագործման աշխատանքը կազմակերպելու գործում: Այսուհետև բացառել կուսակցական կոմիտեների և սովետների գործադիր-կարգադրիչ մարմինների համատեղ որոշումների ընդունումը, վճռականորեն կասեցնել սովետական մարմինների լիազորությունների իրականացմանը միջամտելու կուսակցական ապարատի աշխատողների փորձերը:

Հավանություն տալ կուսակցական ապարատի վերակառուցման հիմնական ուղղություններին և այդ աշխատանքը կատարել մինչև այս տարվա վերջը:

4. Նշելով կուսակցական կազմակերպությունների աշխատանքում ակտիվությունը բարձրացնելու և ինքնուրույնությունն ամրապնդելու կարևորությունը, Կենտկոմի պլենումն այն կարծիքին է, որ պետք է առանց լրացուցիչ ցուցումի կենսագործել ներկուսակցական հարաբերությունները դեմոկրատացնելու, ամենուրեք կուսակցական ընկերականության, բոլոր հարցերի ազատ քննարկման, բացահայտության, հրապարակայնության, կոլեկտիվիզմի, գիտակցական կարգապահության, անձնական պատասխանատվության մթնոլորտ հաստատելու ՍՄԿԿ կոնֆերանսի պահանջները: Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել կուսակցականների մի մասի պասիվության հաղթահարմանը, անշեղորեն բարձրացնել պահանջկոտությունը ՍՄԿԿ կանոնադրության կատարման համար: Արմատապես փոխել ընտրովի մարմինների աշխատանքը, որոնք պետք է լիակատար պատասխանատվություն կրեն կուսակցական կազմակերպությունների գործերի վիճակի համար, հաստատակամորեն կենսագործեն վերակառուցման քաղաքականությունը:

Պլենումը նշում է կուսակցության առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիայի սկզբունքային նշանակությունը: Այն պետք է անցնի կուսակցության՝ որպես ժողովրդի քաղաքական ավանգարդի դերի բարձրացման, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում արմատական բարեփոխումների իրականացման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համար կոմունիստներին մոբիլիզացնելու նշանաբանով: Կարևոր է, որ կուսակցական կոնֆերանսի ոգին, նրա դեմոկրատական մթնոլորտը, և քննադատական ուղղվածությունը հաղորդվեն տեղերին, ապահովեն վերակառուցման գաղափարների միահյուսումը յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության գործնական ձեռնարկումներին, ամբողջ ներկուսակցական կյանքի նորացումը, կուսակցական ղեկավարման դեմոկրատացումը: Հաստատել «Կուսակցական կազմակերպություններում հաշվետվությունների և ընտրությունների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը:

5. Անհրաժեշտ է անհապաղ իրականացնել իրավական ու կազմակերպական միջոցառումներ քաղաքական սիստեմի ռեֆորմի առնչությամբ: Այդ նպատակով.

Նախապատրաստել և 1988 թվականի նոյեմբերին համաժողովրդական քըն-

նարկման ներկայացնել ՍՍՀՄ սահմանադրության փոփոխությունների ու լրացում-սին օրենքի և ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների մա-սին օրենքի նախագծերը, այդ ընտրություններն անցկացնել 1989 թվականի մարտին: Միաժամանակ համապատասխան աշխատանք կազմակերպել միութենական և ինքնավար հանրապետություններում այն նկատառումով, որ պետական իշխանության հանրապետական ու տեղական նոր մարմինները իրենց լիազորությունների կատարմանը ձեռնամուխ լինեն 1989 թվականի դեկտեմբերին: ՍՍՀՄ սահմանադրության փոփոխությունների և ընտրությունների մասին օրենքները մշակելիս ելնել այն դրույթներից, որ բովանդակում են ՍՄԿԿ Կենտկոմի զեկուցումը XIX կուսակցական կոնֆերանսում, նրա ընդունած բանաձևերը, ինչպես նաև Կենտկոմի քաղբյուրոյի զեկուցումը ներկա պլենումում:

ՍՄԿԿ Կենտկոմի անունից ՍՍՀՄ Գերագույն սովետի մոտակա նստաշրջանի քննարկմանը դնել XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումների լույսով պետական իշխանության և արդարադատության մարմինների կառուցվածքն ու գործունեությունը կատարելագործելու խնդիրների հարցը: Նստաշրջանի քննարկմանը ներկայացնել օրենսդրական ակտերի նախագծեր և առաջարկություններ ՍՍՀՄ սահմանադրության մեջ այնպիսի փոփոխություններ մտցնելու մասին, որոնք կապված են քաղաքական սիստեմի ռեֆորմի իրականացման, գործող ընտրական սիստեմի նորացման և դատարանների գործունեության վերակառուցման հետ:

Կոնֆերանսի որոշումներին համապատասխան՝ նպատակահարմար համարել 1989 թվականի ապրիլին գումարել ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումար, որը կընտրի ՍՍՀՄ Գերագույն սովետ և կլուծի ընդհանուր միութենական պետական մարմիններ կազմելու նրա տնօրինությանը ենթակա մյուս հարցերը: Այնուհետև ՍՍՀՄ Գերագույն սովետում աշխատանք ծավալել երիտասարդության մասին, արհմիությունների իրավունքների մասին, կամավոր ընկերությունների, հասարակական ինքնագործունեության մարմինների և ինքնագործ այլ միավորումների մասին, մամուլի մասին օրենքների, մյուս օրենսդրական ակտերի նախագծերի վրա, որոնք բխում են քաղաքական սիստեմի ռեֆորմից:

Սովետների դերը բարձրացնելու, նրանց իրավական և նյութաֆինանսական բազան արմատապես ամրապնդելու նպատակով 1989 թվականին նախապատրաստել տեղական ինքնակառավարման և տեղական տնտեսության մասին օրենքի նախագիծ, նրա հիմքում դնելով ինքնակառավարման, ինքնաֆինանսավորման, ինքնաապահովման, ընդհանուր պետական շահերի հետ ռեգիոնալ շահերի փոխկապակցման, ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների, աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների և հասարակական կազմակերպությունների հետ տեղական սովետների կապերի ուժեղացման սկզբունքները: Նշված օրենքի նախագիծը ներկայացնել հասարակայնության լայն քննարկմանը:

Հասնել այն բանին, որ արդեն այժմ բոլոր մակարդակների սովետների գործունեության մեջ ավելի շատ դեմոկրատիզմ լինի, աճի դեպուտատների, մշտական հանձնաժողովների և դեպուտատական խմբերի դերը, որպեսզի լրիվին իրականացվեն XIX կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթները կառավարման մարմինների աշխատանքի վերահսկողությունն ուժեղացնելու, բյուրոկրատիզմի դեմ պայքարելու, հրապարակայնությունը զարգացնելու մասին:

6. Ազգամիջյան հարաբերությունների բնագավառում ուշադրությունը կենտրոնացնել առանձին ռեգիոնների զարգացման բնագավառի լճացման երևույթները վերացնելու, ազգերի և ազգությունների սոցիալ-տնտեսական ու հոգևոր պահանջմունքների թերագնահատումը վերացնելու վրա, վճռականորեն հակազդել վերակառուցմանը հակամետ ուժերին, որոնք ազգայնամոլ և շովինիստական կրքեր են բորբոքում: Իրականացնել ազգամիջյան հարաբերությունների իրավական բազան ամրապնդելու XIX կուսակցական կոնֆերանսի նախատեսած միջոցառումները, ուժեղացնել գաղափարական ու քաղաքական աշխատանքը, հաստատակամորեն ամրապնդել սոցիալիստական ինտերնացիոնալիզմը:

Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարել միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության համապատասխան երկրկոմների ու մարզկոմների, գիտական հիմնարկների հետ համատեղ մինչև 1989 թվականի սկիզբը նախապատրաստել ՍՍՀՄ-ում ազգամիջյան հարաբերությունների կատարելագործման հարցերի վերաբերյալ անհրաժեշտ նյութեր ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում քննարկելու համար:



7. Մինչև 1989 թվականի կեսերը հիմնականում իրականացնել դատական ռեֆորմը, դատավարության, արբիտրաժի, քննչական մարմինների, փաստաբանության, ժողովրդական տնտեսության մեջ իրավաբանական ծառայության գործունեության վերակառուցումը, աշխատանք տանել կատարելագործելու քրեական օրենսդրությունը: Լայնորեն ծավալել իրավական դաստիարակությունն ու իրավաբանական պարտուսը: Այդ միջոցառումները համարել առաջին քայլեր իրավական լայն ռեֆորմի իրականացման, սովետական սոցիալիստական իրավական պետության հիմքերի ամրապնդման ուղղությամբ:

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. ՍՄԿԿ կանոնադրությանը և XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումներին համապատասխան մինչև այս տարվա վերջը տեղի են ունենալու հաշվետու-ընտրական ժողովներ ու կոնֆերանսներ սկզբնական կուսկազմակերպություններում, կուսակցության շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային և երկրամասային կազմակերպություններում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը գտնում է, որ առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիան պետք է կարևոր փուլ դառնա վերակառուցումը խորացնելու, քաղաքական սիստեմի ռեֆորմն իրագործելու, հասարակության ու կուսակցության կյանքն էլ ավելի դեմոկրատացնելու վերաբերյալ կոնֆերանսի մշակած հիմնադրույթների գործնական իրականացման ճանապարհին: Կամպանիան կոչված է ըստ ամենայնի նպաստելու կուսակցական զանգվածների ակտիվացմանը, կուսակցական կազմակերպությունների ու կոմիտեների դերի և պատասխանատվության բարձրացմանը, նրանց գործունեության մեջ ղեկավարման քաղաքական մեթոդների հաստատմանը: Անհրաժեշտ է, որ կոնֆերանսի իր էությամբ հեղափոխական, դեմոկրատական մթնոլորտը, այնտեղ ծավալված դիսկուսիաների գործարար տոնը, անկեղծությունն ու սրությունը, թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքը, նորացման պրոցեսը անշրջելի դարձնելու ուղիների և միջոցների ստեղծագործական որոնումը տոգորեն կուսակցական ժողովների ու կոնֆերանսների ողջ աշխատանքը:

2. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին պարտավորեցնել հանգամանորեն նախապատրաստվելու հաշվետու-ընտրական կամպանիային, այն անցկացնելու գաղափարաքաղաքական ու կազմակերպական բարձր մակարդակով, կուսակցության, որպես ժողովրդի քաղաքական ավանգարդի դերի բարձրացման նշանաբանով, կոմունիստներին հասարակության բոլոր ոլորտներում արմատական վերափոխումների իրագործմանը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը մոբիլիզացնելու նշանաբանով:

Հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում անհրաժեշտ է խորապես և համակողմանիորեն վերլուծել կուսակցության XXVII համագումարի որոշումների իրականացման ընթացքը, կազմակերպչական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի վիճակը, ինքնաքննադատաբար և սկզբունքայնորեն մոտենալ կուսակցական կազմակերպությունների ու նրանց ընտրովի մարմինների գործունեության ոճի ու մեթոդների գնահատմանը, կոմունիստների ջանքերը կենտրոնացնել ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի առաջադրած խնդիրների կենսագործման պրակտիկ գործերի վրա:

Պետք է հատուկ ուշադրություն դարձվի սկզբնական կուսակցական կազմակերպությունների կազմակերպական-քաղաքական հետագա ամրապնդմանը և նրանց

դերի բարձրացմանը, ժողովրդական դեպուտատների սովետներում, արհմիություններում, կոմերիտական ու մյուս հասարակական կազմակերպություններում կոմունիստների գործունեության բարելավմանը, կադրերի ընտրության, առաջքաշման ու դաստիարակության կատարելագործմանը:

Խորապես և համակողմանիորեն քննարկել տնտեսական ռեֆորմի ընթացքը, արտադրության մեջ տնտեսական նոր մեխանիզմի ներդրման, տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման սկզբունքների հաստատման, սոցիալիստական ինքնակառավարման զարգացման հարցերը:

Հաշվետվությունների և ընտրությունների պրոցեսում պետք է հանգամանորեն քննարկել պարենային պրոբլեմի շուտափույթ լուծման ուղիները, հստակորեն սահմանել, թե դրա համար գործնականում ինչ է անհրաժեշտ ձեռնարկել յուրաքանչյուր ռեգիոնում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում: Մշակել այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեն կոլտնտեսային ու սովխոզային արտադրության հնարավորությունների արդյունավետ օգտագործումը կապալի, վարձակալման, կոոպերացման բազմազան ձևերի զարգացման հիման վրա: Կարևոր է գործարար մոտեցումը նաև մյուս կենսական խնդիրների քննարկմանը՝ շուկայի հագեցումը ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքներով, բնակարանային ու սոցիալ-կուլտուրական շինարարության ծավալների մեծացումը, առևտրի և սպասարկման ամբողջ ոլորտի բարելավումը, առողջապահության կատարելագործումը, միջնակարգ ու բարձրագույն դպրոցի ռեֆորմի անցկացումը, աշխատավորների հոգևոր ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը:

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն սովետական մարդկանց, հատկապես երիտասարդների գաղափարական, ինտերնացիոնալիստական կոփման հարցերը, աշխատանքի նկատմամբ բարեխիղճ, ստեղծագործական վերաբերմունքի դաստիարակումը, հասարակության հանդեպ ունեցած պարտքի խոր գիտակցումը, անհաշտ վերաբերմունքը անպատասխանատվության և բյուրոկրատիզմի ամեն կարգի դրսևորումների նկատմամբ:

3. Հաշվետու-ընտրական կամպանիան կոչված է առավելագույնս նպաստելու ամբողջ ներկուսակցական կյանքի հետագա դեմոկրատացման, կուսակցական կազմակերպություններում ստեղծագործական դիսկուսիաների մթնոլորտի, կարծիքների ազատության, ծավալուն քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտի ստեղծմանը, կոմունիստների նախաձեռնության, անձնական պատասխանատվության և գիտակցական կարգապահության բարձրացմանը:

Առաջնորդվելով XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթներով, ամենուրեք ապահովել թեկնածությունների լայն քննարկումը և գաղտնի քվեարկությունը կուսակցական կոմիտեների անդամների ու քարտուղարների ընտրություններում, քվեաթերթիկների մեջ ավելի շատ թեկնածուներ մտցնելու հնարավորությունը, քան մանդատների թիվն է, իրագործել կուսակցական կազմակերպությունների իրավունքը՝ առաջարկություններ անելու վերադաս կուսակցական մարմնի կազմում առաջադրվող թեկնածությունների վերաբերյալ, ընդսմին նկատի ունենալով, որ վերջին խոսքը վերապահվում է համապատասխան կոնֆերանսի պատգամավորներին:

Կարևոր է ղեկավար կուսակցական մարմինների ընտրությունները այնպես անցկացնել, որ այդ մարմինների կազմում ընտրվեն իրոք գործարար, նախաձեռնող, հեղինակավոր մարդիկ, որոնք ընդունակ են ոչ թե խոսքով, այլ գործով առաջ մղելու վերակառուցումը, հմտորեն կատարելու աշխատանքը մասսաների շրջանում, հասնելու ռեալ, պրակտիկ արդյունքների: Հաշվետու-ընտրական կամպանիան պետք է օգտագործել կուսակցական կադրերի կազմը նոր թարմ ուժերով համալրելու համար, կուսակցական ղեկավարման տարբեր օղակները քաղաքականապես հասուն, բարոյական բարձր հատկանիշներով օժտված ձեռնհաս աշխատողներով ամրապնդելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը անհրաժեշտ է համարում կուսակցական մարմինների միևնույն ընտրովի պաշտոնում մնալը երկու ժամկետով սահմանափակելու՝ XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի ընդունած դրույթը կիրարկել, ժամկետի հաշվարկն սկսելով առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիայից: Սրա հետ միասին կոմունիստներն իրավունք ունեն քննարկելու և լուծելու յուրաքանչյուր ղեկավարի հարցը անհատապես, անկախ նրանից, թե նա ինչքան ժամանակ է աշխատել տվյալ պոստում, այլ ուշադրության առնելով, թե նա ինչպես է կարողացել կատարել



հանձնարարված պարտականությունները և ընդունա՞կ է, արդյոք հասնելու գործի որակական բարելավման:

4. Ապահովել, որ կուսակցական կազմակերպություններում հաշվետվությունները և ընտրություններն անցնեն լայն հրապարակայնության մթնոլորտում: Կենտրոնական և տեղական մամուլի էջերում, հեռուստատեսությամբ և ռադիոյով սիստեմատիկաբար լուսաբանել ժողովների ու կոնֆերանսների ընթացքը, դրանց մթնոլորտը, կոմունիստների կողմից արծարծվող հարցերը, հասարակայնությանը հանգամանորեն տեղեկացնել ընդունված որոշումներին, ընտրված կուսակցական մարմինների կազմին, ցույց տալ, թե ինչպես են իրագործվում քննադատական դիտողություններն ու առաջարկությունները:

5. Ընդունել տեղական կուսակցական մարմինների առաջարկությունները՝ սկզբնական կուսակցական կազմակերպություններում հաշվետու-ընտրական ժողովները ընթացիկ տարվա սեպտեմբեր-հոկտեմբերին, շրջանային, քաղաքային, օկրուգային կոնֆերանսները հոկտեմբեր-նոյեմբերին, մարզային, երկրամասային կոնֆերանսները՝ նոյեմբեր-դեկտեմբերին անցկացնելու մասին:

6. ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարել, հաշվի առնելով պլենումում կայացած քննարկումը, հաստատել ղեկավար կուսակցական մարմինների ընտրությունների անցկացման հրահանգը:

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսը անհրաժեշտ համարեց արմատապես վերակառուցել կուսակցության ողջ գործունեությունը, կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները համապատասխանեցնել ՍՄԿԿ-ի՝ որպես հասարակության քաղաքական ավանգարդի, դերին և նոր խնդիրներին: Այդ առնչությամբ կարևորագույն նշանակություն են ստանում կուսակցական կոմիտեների և պետական, տնտեսական մարմինների ֆունկցիաների հստակ ու հետևողական սահմանազատումը, նրանց աշխատանքում զուգահեռականության և կրկնորդման հաղթահարումը, կուսակցական ապարատի կառուցվածքի արմատական փոփոխումը և որակի բարելավումը, նրա խստիվ ենթակայությունն ու հաշվետու լինելը կուսակցության ընտրովի կոլեգիաներին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը **որոշում է.**

1. Մինչև ընթացիկ տարվա վերջը իրականացնել ՍՄԿԿ Կենտկոմի ապարատի և տեղական կուսակցական մարմինների վերակազմումը, վերակառուցել նրա կառուցվածքը արդի պայմաններում կուսակցության ֆունկցիաներին համապատասխան, նկատի ունենալով հրաժարվել ապարատի մասնատումից ըստ կառավարման ճյուղերի և ամրապնդել այն ստորաբաժանումները, որոնք զբաղվում են ներքին և արտաքին քաղաքականության հիմնական հարցերով: Ընդ որում, աշխատողների ընդհանուր թվակազմը պետք է էապես նվազեցվի:

Ելնելով այն բանից, որ կուսակցական ապարատը, հանդիսանալով կուսակցության կազմակերպական կառուցվածքի անկապտելի բաղկացուցիչ մասը, կոչված է լինելու վերակառուցման ակտիվ ուժը, այն գործիքը, որի միջոցով կուսակցական ընտրովի մարմինները իրականացնում են իրենց քաղաքական, կազմակերպչական ու դաստիարակչական ֆունկցիաները, վարում ընդունված որոշումներն իրագործելու և դրանց կատարումն ստուգելու, ստորադաս կազմակերպությունների գործունեությանը օգնություն ցույց տալու ընթացիկ աշխատանքը:

Կուսակցական ապարատի վերակազմումը և նրա աշխատողների մի մասի ազատումը անհրաժեշտ է օգտագործել պետական, տնտեսական ու հասարակական գործունեության կարևոր տեղամասերը, ինչպես նաև ստորադաս կուսակցական օղակները ամրապնդելու համար: Ընդսմին առանձնակի ուշադրություն դարձնել ժո-

ղովրդական դեպուտատների սովետների ապարատի և ժողովրդական վերահսկողության մարմինների ամրապնդմանը, նկատի առնելով նրանց նոր դերը քաղաքական սիստեմում:

Ապահովել կուսակցական կոմիտեների ապարատի սկզբնական կուսակցական կազմակերպությունների ակտիվ մասնակցությունը նրա վերակառուցման իրականացմանը:

2. ՍՄԿԿ Կենտկոմը առաջնահերթ նշանակություն է տալիս կուսակցական կոմիտեների կողմից իրականացվող ղեկավարման քաղաքական բնույթի ուժեղացմանը, նրանց գործունեության մեջ հրահանգչահրամայական մեթոդների, տեխնոկրատիզմի դրսևորումների վճռական վերացմանը, կուսակցական ու հասարակական կյանքի դեմոկրատական սկզբունքների հաստատմանը:

Կուսակցական կոմիտեներից, նրանց ապարատից ներկայումս առանձնապես պահանջվում է հասարակության հեղափոխական նորացման կուսակցության գիծը հետևողականորեն կենսագործելու, ստեղծագործաբար, գաղափարադաստիարակչական ու կազմակերպչական աշխատանքի մեթոդներով գործելու հմտություն, չխնամակալելով և չկաշկանդելով կուսակցական ստորին օղակները: Ուշի ուշով ուսումնասիրել և ընդհանրացնել նոր պայմաններում կուսակցական աշխատանքի պրակտիկան, վերլուծել քաղաքական, տնտեսական, սոցիալական ու հոգևոր ոլորտներում տեղի ունեցող պրոցեսները, նպաստել լավագույն փորձի տարածմանը: Կուսակցական ապարատի աշխատանքը պետք է հենվի ավելի աչքի ընկնի գործարարությամբ, հրապարակայնությամբ, քննադատական միտվածությամբ, մասսաների հետ ամենօրյա կապով:

3. Կուսակցական կոմիտեները, դրանց բյուրոները, քարտուղարությունները պարտավոր են ուժեղացնել ուշադրությունը աշխատողներին ընտրելու և կուսակցական ապարատում առաջ քաշելու նկատմամբ: Այն կոմպլեկտավորել քաղաքականապես հասուն, լավ պատրաստված կոմունիստներով, որոնք օժտված են բարոյական բարձր հատկանիշներով և ընդունակ են աշխատանքը կազմակերպել նորովի:

Աշխատողներին կուսակցական ապարատում առաջ քաշելու պարտադիր պայման համարել սկզբնական կուսակցական կազմակերպության երաշխավորագիրը: Կուսակցական կազմակերպությունը, որը կոմունիստին երաշխավորել է կուսակցական աշխատանքի, իրավունք ունի դնելու զբաղեցրած պաշտոնից նրան ազատելու հարցը, եթե նա չի արդարացրել վստահությունը:

Անհրաժեշտ է ըստ ամենայնի պաշտպանել ու զարգացնել ապարատի աշխատողների նախաձեռնությունը, ավելի շատ օգնություն ցույց տալ նրան, հաստատել կուսակցական ընկերականության, ՍՄԿԿ կանոնադրության առջև բոլոր կոմունիստների հավասարության մթնոլորտ, վճռականորեն արմատախիլ անել բյուրոկրատիզմի տարրերը, անհամեստության, սնապարծության, քծնողության դրսևորումները:

4. ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարել քննարկել և հաստատել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ապարատի նոր կառուցվածքը, ինչպես նաև սահմանել տեղական կուսակցական մարմինների ապարատի հիմնական օղակները, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին իրավունք վերապահելով ինքնուրույնաբար լուծելու բոլոր կուսակցական կոմիտեների և կուսակցական հիմնարկների կառուցվածքահաստիքային հարցերը, հաշվի առնելով ֆունկցիաների փոփոխությունները, և հանրապետական, երկրամասային, մարզային կուսակցական կազմակերպության աշխատավարձի հաստատված ֆոնդի սահմաններում:

---

# ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ելույթը ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում 1988 թվականի հուլիսի 18-ին

Ընկերներ: Մենք պետք է չափազանց ուշադիր և պատասխանատու, ծայրաստիճան պատասխանատու լինենք այն հարցը քննության առնելիս, որը ներկայացված է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ներկա նիստի քննարկմանը: Խոսքը քաղաքական մեծ նշանակություն ունեցող հարցի մասին է, որը կենսականորեն կարևոր է մեր բազմազգ պետության համար: Բանը վերաբերում է մարդկային հարաբերությունների անչափ զգայուն ոլորտին, երկրի ազգերի և ազգությունների հարաբերություններին: Դա համամիութենական մասշտաբի պրոբլեմ է, քանի որ այն տեղը, ինչ տեղի է ունենում մեր պետության տարբեր մասերում, վերաբերում է ամենքիս: Մենք բոլորս կենսականորեն շահագրգռված ենք, որպեսզի ամենամեծ ու բարդ հարցերը լուծվեն հանգիստ, հիմնավորապես, մեր ընդհանուր շահերին համապատասխան: Դրան պետք է ավելացնել, որ մենք գործ ունենք մի պրոբլեմի հետ, որն իր արմատներով գնում է հեռավոր անցյալը: Մի խոսքով, ընկերներ, որ կողմից էլ մենք մոտենանք, նայենք այն բանին, ինչ մենք այսօր քննարկում ենք, այդ հարցը գերկարևոր է և գերբարդ: Թեև, ընդհանուր առմամբ, այն նաև հասարակ է: Բայց այդ հասարակ լուծմանը հանգելու համար պետք է շատ հաստատակամ և խիզախ քայլ կատարել, իսկ որ գլխավորն է՝ հարկավոր են հանդիպական քայլեր:

Ես կասեի, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության այսօրվա նիստը շատ կարևոր ուղենիշ է մեր վերակառուցողական պրոցեսում: Ավելին, ես այս նիստը կանվանեի պատմական: Չէ որ եթե մենք ձեզ հետ այսօր չգտնենք այս հարցի լուծման բանալին (իսկ մենք այն պետք է գտնենք), ուրեմն դա հեռագնա հետևանքներ կունենար և կանդրադառնար ամբողջ վերակառուցման վրա:

Մենք մեր երկրում չենք կարող որևէ գործ, որևէ պրոբլեմ լուծել, անտեսելով նույնիսկ ամենափոքր ազգության շահերը: Դա բխում է ազգային քաղաքականության լենինյան կոնցեպցիայից: Մենք այդպես ենք գործել և շատ բան արել: Եվ եթե մեր պետությունը ի զորու է եղել լուծելու պատմական խնդիրները, եթե հետամնաց Ռուսաստանը՝ անցյալում ժողովուրդների բանտը, այսօր դարձել է բոլոր առումներով՝ ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական, ռազմական, մտավոր, գիտական առումներով հզոր ժամանակակից տերություն, ապա դա հնարավոր է դարձել բոլոր ազգերի և ազգությունների հսկայական ջանքերի միաձուլման շնորհիվ:

Եթե մենք լենինյան այդ ուղեցույց մտքով, լենինյան այդ կողմնորոշիչով չղեկավարվեինք ազգային հարցի լուծման ասպարեզում, ապա այսօր մենք ձեզ հետ որևէ նման բան չէինք ունենա: Իհարկե, այս ամենով հանդերձ կուտակվել են զգալի թվով պրոբլեմներ: Անչափ երկար ժամանակ ներքին քաղաքականության այդ կարևոր տեղամասում մենք առաջ չենք շարժվել: Ինձ վրա ուժեղ տպավորություն գործեցին շատ ընկերների ելույթները, հատկապես կովկասցի իմ հին բարեկամինը՝ Ռասուլ Համզատովինը: Նա իրավացի է, որ մենք այժմ ըստ էության գործ ունենք շատ ծանր իրավիճակի հետ, երբ խախտվում է մեր պետության կյանքի հիմնական օրենքը՝ բարեկամության օրենքը: Իսկ չէ որ եթե մենք մինչև օրս հաղթահարել ենք բոլոր ամենա-

ծանր փորձությունները, այդ թվում նաև հաղթել ենք Հայրենական մեծ պատերազմում, ապա դա եղել է միայն բարեկամության օրենքի կիրառման շնորհիվ, այն բանի շնորհիվ, որ եղել ենք միասին, ընկերոջ հետ ուս ուսի տված: Պատերազմից հետո, երբ հարկավոր էր ոտքի կանգնեցնել ամբողջ հանրապետություններ, հսկայական տարածքներ, մեր կողքին միշտ եղել են ընկերոջ ուսը, փոխըմբռնումն ու օգնությունը:

Ահա այսօր էլ մի՞թե մենք կարող ենք առանց ժողովուրդների բարեկամության լուծել երկրի նորացման վիթխարի խնդիրները, բացահայտել սոցիալիզմի հեռանկարները՝ ի շահ աշխատավորների, հանուն նրանց կյանքի բարելավման, ամեն ինչ անել, որպեսզի յուրաքանչյուր մարդու ինքնազգացողությունը լինի այնպիսին, ինչպիսին այն պետք է լինի սոցիալիզմի երկրում, որպեսզի նա իրեն իրոք ազատ քաղաքացի զգա ազատ երկրում:

Ուստի և, ընկերներ, հարցը իրոք գերկարևոր է, և մեր նիստը, կրկնում եմ, պատմական է: Մենք այսօր պետք է այնպիսի պատասխան գտնենք այդ հարցին, որ այն նախադեպ դառնա ազգամիջյան հարաբերությունների ոլորտում ծագող ուրիշ շատ հարցերի համար:

Բոլոր ելույթ ունեցողները սկսում էին նրանից, որ վերլուծում էին տեղի ունեցող իրադարձությունների պատճառները: Եվ դա ճիշտ է, քանի որ միայն տեղի ունեցածի հետևանքներով զբաղվելը անբավարար է: Դասեր առնելու համար պետք է իմանալ այն բանի պատճառները, ինչ տեղի է ունենում:

Այս կապակցությամբ այստեղ նշվում էին մեր միութենական պետության ձևավորման սկզբնական փուլում պետական մարմինների գործունեության մեջ եղած որոշակի սխալները: Այս առումով կան տարբեր տեսակետներ: Դրանք մեզ հայտնի են: Եվ մենք հիմա կանգ չենք առնի մեր խորհրդածությունների այդ կետի վրա: Թեև արժե ասել, որ գուցե այն ժամանակ ամեն ինչ չէ, որ լուծվել է այնքան իդեալական կերպով, որքան կուզենայինք: Այդ ժամանակներից անցել է 65 տարի: Եվ այսօր Հայաստանը և Ադրբեջանը մեզ ներկայանում են որպես զարգացած հանրապետություններ, որոնք ունեն հսկայական պոտենցիալ՝ թե տնտեսական, թե մշակութային և թե մտավոր: Դա վկայում է այն մասին, որ անցյալում ընդունված որոշումները հիմնականում ճիշտ են եղել, թեև դրանք իդեալական չեն եղել: Ուստի և ես բոլոր ընկերներին կխնդրեի դա նկատի ունենալ, երբ մենք վճիռ ենք կայացնում այն բանի առնչությամբ, թե ինչպես է լուծվել: Ես նայում եմ գիտնականների կողմը. շատ է պետք պատասխանատու լինել: Եթե նախապես ամեն ինչ սխալ ու վատ լիներ, մի՞թե մենք կունենայինք այսպիսի արդյունքներ: Ոչ:

Ես կարծում եմ, որ երբ մենք խոսում ենք այն բանի պատճառների մասին, թե ինչ է տեղի ունեցել, ինչն է շարժման մեջ դրել հայ և ադրբեջանական բնակչությանը, պետք է տեսնել նաև անցյալի ծանր ժառանգությունը: Այդ բոլորը լուրջ, խոշոր վրիպումներ են ներքին քաղաքականության ոլորտում, այդ թվում այնպիսի կարևոր ուղղությունում, ինչպիսին է ազգային քաղաքականությունը: Չի կարելի ամեն մի հարց մեկընդմիշտ լուծված համարել: Ամեն մի հարց ունի իր դինամիկան, զարգացումը, և դա վերաբերում է նաև ազգային հարաբերությունների հարցին: Տեսեք, թե ինչպես է ամեն ինչ փոխվել: Այսօրվա մարդկանց 90 տոկոսը ծնվել է արդեն սովետական իշխանության պայմաններում: Ամեն ժողովուրդ ունի իր մտավորականությունը, գիտական ուժերը, իր մշակույթը, իր լեզուն: Դա հիանալի է: Եթե ինչ-որ մեկը այլ կերպ է մտածում, եթե ինչ-որ մեկը ուզում է, ինչպես ասում են, ամեն ինչ արդուկով հարթեցնել, ապա դա սխալ ուղի է, այն պետք է անմիջապես մերժել, ազգերի մերձեցումն ու բարգավաճումը, մեր ժողովուրդների մերձեցումը և ջանքերի զուգադրումը կընթանան յուրաքանչյուր ժողովրդի, յուրաքանչյուր մշակույթի հետագա ծաղկման, յուրաքանչյուր լեզվի զարգացման հիման վրա: Դա մեր հարստությունն է և ոչ թե թերությունը:

Կյանք է մտնում նոր սերունդ, աճել են մտավորականության ջոկատներ, որոնք ուսումնասիրում են իրենց պատմությունը. իսկ որտեղի՞ց է հայտնվել այս ժողովուրդը, որտեղի՞ց է նրա լեզուն: Ինչպիսի՞ փոխադարձ կապեր է նա ունեցել անցյալում, ինչպիսի՞ն է նա այսօր և ինչպե՞ս է նրան ներկայանում ապագան: Սրանք բոլորը կենդանի պրոցեսներ են: Եվ մի՞թե կարելի է դրանք ինքնահոսի մատնել: Այնինչ



զգալի չափով այդպես է ստացվել: Եվ Լեռնային Ղարաբաղի իրադարձությունների արմատներն այստեղ են: Եթե սրան նաև ավելացնենք, որ այս կամ այն ռեգիոնի ղեկավարությունում չեն գտնվել թե ինտերնացիոնալ, թե քաղաքական և թե բարոյական առումով պատշաճ բարձրության վրա գտնվող մարդիկ, ապա պարզ կդառնա, թե ինչու այս ամենը այդքան սուր ձևեր ընդունեց:

Ես հիմա խոսում եմ ոչ միայն Ղարաբաղի մասին, չէ որ դա եզակի երևույթ չէ: Այն սուր ձևեր է ընդունել և մեզ առիթ է տալիս խորհրդածելու ամբողջությամբ վերցրած երևույթի մասին:

Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը կապված է Ադրբեջանի ղեկավար մարմինների թույլ տված լուրջ խախտումների հետ, և ընկերները ինքնաքննադատաբար դա խոստովանում են: Ես գնահատում եմ ընկեր Վեզիրովի և մյուսների համոզված ինտերնացիոնալիստական դիրքորոշումը, որոնք հույզերին չեն հանձնվում: Եվ ճիշտ ասաց ընկեր Իբրահիմովը. եթե ուզում են պատժել մարդուն, պետք է նրան զրկել բանականությունից:

Պետք է իրականացվեն Կենտկոմի, կառավարության հիմնադրույթները, որոնք ընդգրկում են Լեռնային Ղարաբաղի սոցիալ-տնտեսական, մշակութային զարգացման ամբողջ կոմպլեքսը: Այդ փաստաթղթի նկատմամբ բացասական վերաբերմունքը մեզ համար անհասկանալի է: Ավելին, պարզվում է, որ այն թաքցնում են աշխատավորներից, խանգարում կատարել: Մեզ համար դա անընդունելի է, մենք դատապարտում ենք նման մոտեցումը: Վերլուծելով տեղի ունեցող երևույթների պատճառները, մենք պետք է տեսնենք. թե Ադրբեջանում և թե Հայաստանում կուտակվել են զգալի թվով սուր պրոբլեմներ, որոնք արդեն վաղուց մտահոգում են երկու հանրապետությունների աշխատավորներին: Այստեղ կան տնտեսական ու սոցիալական զարգացման լուրջ թերություններ, սրված էկոլոգիական հարցեր, կադրային քաղաքականության խոշոր վրիպումներ, գաղափարախոսական ոլորտի բարձիթողի վիճակ, ինտերնացիոնալ դաստիարակության թուլացում, սոցիալիստական բարոյականության սկզբունքների լուրջ խախտումներ: Դա դրսևորվել է շատ բաներում: Հանրապետություններում ծաղկում են հովանավորչությունը, կաշառակերությունը, «ստվերային էկոնոմիկան»: Վերակառուցումը այս ամենը ի հայտ բերեց, և մենք տեսանք, թե ինչպես այն անընդունելի եղավ այդ հանրապետություններում ոմանց համար: Այնտեղ ձևավորվել են որոշակի խմբեր, որոնք կուզենային կյանքի բոլոր գլխավոր ոլորտները պահել իրենց ձեռքում, այնինչ վերակառուցումը պահանջում է այլ բան, այն որպես վճռական, գլխավոր ուժ քաղաքական գործունեության ասպարեզ է հանում աշխատավորներին:

Ուստի և Լեռնային Ղարաբաղը թե մեկ և թե մյուս կողմի համար որպես առիթ օգտագործվեց առաջ մղելու ազգային զգացմունքները, դրանք հասցնելով մինչև նացիոնալիստական ձևի, նպատակ ունենալով քողարկել կուտակված, իրոք դժվար, ճնշող պրոբլեմները: Այս մասին մենք խոսեցինք հանրապետությունների նախկին ղեկավարների հետ, հրապարակային խոսակցություն եղավ նաև կուսակցության Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումում: Այնպես որ տեսեք, թե այստեղ ինչպես է ամեն ինչ միահյուսվել: Եվ չպետք է պարզունակացնել: Մի խոսքով, ես հիմա այս շեղումը ավարտում եմ այն խոր համոզմունքով, որ այս պրոբլեմի դժվարությունը, բարդությունն ու կարևորությունը, նրբությունը, զգայնությունը պահանջում են միմյանց նկատմամբ շատ պատասխանատու, հարգալիր վերաբերմունք: Դա, ընկերներ, պակասում է: Մենք պետք է ձեզ՝ թե Ադրբեջանի և թե Հայաստանի ներկայացուցիչներին, ասենք, պակասում է, դուք պետք է դա ընդունեք:

Այսօր մենք այստեղ՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում, ավելի շատ ինքնաքննադատություն ենք լսում Ադրբեջանի ներկայացուցիչների կողմից և պակաս չափով՝ Հայաստանի ներկայացուցիչների կողմից: Կշռադատեք դա, խորհելու բան կա թե մեկ և թե մյուս հանրապետությունում, խոր մտորումների և դասերի առիթ կա: Եթե դուք այս հանդիպումից, այս խոսակցությունից հետո էլ հեռանաք առանց ամեն ինչում կողմնորոշվելու և իրադարձություններն այժմ ուրիշ կողմ շրջելու ցանկության, ապա դա սխալ կլիներ: Դա, ես կասեի, նույնիսկ ծանր կլիներ:

Եվ վստահ եմ, որ այս խոսակցությունը ամենքիս համար էլ, ընկերներ, անհետևանք չի անցնի: Թե Գերագույն սովետի նախագահության համար, որը ներառնում է երկրի բոլոր հանրապետությունների և իշխանության կենտրոնական մարմինների

ներկայացուցիչներին, և թե երկու եղբայրական հանրապետությունների՝ Ադրբեջանի ու Հայաստանի ներկայացուցիչների համար: Եվ ես ձեզ կասեմ, թանկագին ընկերներ, որ ձեր դիրքորոշման բարձրությունն ու նշանակալիությունը կորոշվեն ոչ թե նրանով, թե դուք ինչ կասեք, ինչպես այստեղ դա արեցին որոշ ընկերներ, հույսը դնելով միայն այն բանի վրա, թե ձեզ ինչպես կլսեն Երևանում կամ Բաքվում: Ոչ, դրանք այսօր մեր Միության արմատական շահերը և ադրբեջանական ու հայ ժողովուրդների արմատական շահերը արտահայտելն են, իսկ դրանք համընկնում են, ընկերներ: Համընկնում են:

Ես կարծում եմ, որ կենտրոնը այս դժվար ամիսներին ջանացել է հետևել գլխավոր կողմնորոշիչին, լենինյան կողմնորոշիչին, պահպանել հարգանքը երկու ժողովուրդների հանդեպ, ամեն ինչ անել նրանց հարաբերությունների սրումը ծայրահեղ սահմանների չհասցնելու համար, վիրավորանք թույլ չտալ այդ ժողովուրդներից որևէ մեկի հանդեպ: Մենք ամբողջ ժամանակ գործում էինք այնպես, որ չխախտվի ստեղծվածը, և ավելին, գտնվի նոր հարցերի խելամիտ լուծում՝ ի շահ երկու ժողովուրդների և ի շահ ամբողջ Միության: Մենք ընկերներին քանիցս հանրապետություններ ենք գործուղել ռեալ իրավիճակը տեսնելու համար: Դա մեզ օգնեց կազմելու թե գնահատականներ և թե առաջարկություններ, կառավարական որոշում, որի մասին ես խոսեցի, մասշտաբային ու խոշոր որոշում: Երբ իրավիճակը սկսեց բարդանալ, և մենք տեսանք, որ կանգնած ենք ծանր փորձության, նույնիսկ արյունահեղության առջև, միլիցիայի ուժեր և զորքեր մտցրինք իրավիճակը վերահսկելու համար: Մենք գտել և գտնում ենք, որ դա մեր պարտքն է՝ կենտրոնական կառավարության, կենտրոնական իշխանության պարտքը և տեսեք, թե մենք որքան իրավացի էինք: Չէ որ բառացիորեն կես գիշերվա չափով, մի քանի ժամով ուշացանք (իսկ այդ ամենը սկսվեց գիշերը), և ամենը ինչպիսի ողբերգական հետևանքներ ունեցավ Սումգայիթում:

Ես պետք է ասեմ. դա մեր ընդհանուր ցավն է, դա շատ մթագնեց մեր այսօրվա կյանքը, որը լի է մեծ գաղափարներով, հույսերով: Դա մենք մարդկայնորեն ըմբռնում ենք. տեղի ունեցավ մեծ աղետ և այն հուզեց բոլոր մարդկանց:

Երևանի օդանավակայանի իրադարձությունները կրկին ցույց տվեցին, որ պետք է լինել շատ պատասխանատու, աչքից բաց չթողնել իրավիճակի սրումը: Արդեն չխոսելով այն մասին, որ պետք է սովորական վիճակի բերել երկու հանրապետությունների իրադրությունը:

Բայց տեսեք, ընկերներ, արդեն հիմա կրքերը ինչ-որ չափով վերահսկողությունից դուրս են գալիս: Հայտնվում են հակասոցիալիստական, հակասովետական, հակառուսական բնույթի լոզունգներ, զենք ագրեսիվորեն տրամադրված գրոհայինների ձեռքին: Մի խոսքով, այսօր մենք պետք է հավաստենք, որ սպառնալիք է ստեղծվել Ադրբեջանի և Հայաստանի բնակչության կյանքի և անդորրի համար: Այդ սպառնալիքը ռեալ կերպով գոյություն ունի: Նույն այդ ժամանակ ոմանք առաջ են մղում Երևանի քաղսովետի նստաշրջանը, որպեսզի այն որոշում ընդունի զորքերի դուրսբերման մասին: Իսկ չէ որ դա մեր բանակն է, որ հիմա այնտեղ ներկա է հանուն բարձրագույն շահերի, որպեսզի բացառվեն անկանխատեսելի հետևանքները:

Ահա թե ինչու, այս ամենը միասին վերցնելով, Գերագույն սովետի նախագահությունը, ես կարծում եմ, ճիշտ վարվեց, երբ այդ հարցը ներկայացրեց այստեղ և անկեղծորեն, շիտակորեն, միմյանց երեսին նայելով, մենք քննարկում ենք մեզ համար, մեր պետության համար կարևորագույն այս հարցը:

Մենք պետք է անհրաժեշտ որոշում ընդունենք Լեռնային Ղարաբաղին առընչվող իրադարձությունների վտանգավոր զարգացումը կանգնեցնելու համար: Ո՞րն է իրավիճակի առանձնահատկությունը, բացի այն բանից, ինչ ասվել է: Այն է, որ երկու հանրապետությունները այդ պրոբլեմին, այդ իրավիճակին մոտենում են տրամագծորեն հակառակ, ես նույնիսկ կասեի, վերջնագրային դիրքերից:

Ի դեպ, դա արտացոլվեց նաև դիսկուսիաներում, հանրապետությունների գերագույն սովետների նստաշրջաններում ընդունված փաստաթղթերում: Դրանք փոխադարձաբար բացառում են միմյանց, հիմք չեն տալիս համաձայնեցված որոշման համար և ընդհանուր առմամբ մեզ տանում են փակուղի: Բայց մենք, այնուամենայնիվ, ամբողջ բարդությամբ և դիրքորոշումների նման հակադրությամբ հանդերձ, պետք



է գտնենք մի լուծում, որը վնաս չէր հասցնի ոչ ադրբեջանական, ոչ էլ հայ ժողովուրդներին և ոչ էլ մեր ամբողջ սովետական ժողովրդի շահերին:

Այսօր այստեղ՝ նախագահության նիստում, ուժգնորեն բոլոր եղբայրական հանրապետությունների մտահոգությունն արտահայտվեց այն բանի առնչությամբ, ինչ տեղի է ունենում Հայաստանում և Ադրբեջանում: Ինչպես ես հասկանում եմ ընկերներին, ամենքիս մտահոգում են ոչ միայն բանավեճը, ոչ միայն փոխադարձ մեղադրանքներն ու վիրավորանքները, թեև դա արդեն ինքնըստինքյան ազգամիջյան հարաբերություններում անթույլատրելի է. թունավորում է դրանք, խանգարում քննարկել, լուծել հարցերը: Մեզ բոլորիս մտահոգում է այն, որ դա հսկայական վնաս է հասցնում մեր գլխավոր գործին՝ վերակառուցման, մեր հասարակության դեմոկրատացման գործին: Առհասարակ մենք, ուղղակի ասեմ, անցնում ենք փորձությունների ժամանակաշրջան: Կդիմանա՞ արդյոք վերակառուցումը նման իրավիճակի:

Վերակառուցումը պահանջում է մարդկանց մեծագույն համախմբվածություն, իսկ մեզ առաջարկում են երկպառակություններ և ազգային անվստահություն: Վերակառուցումը պահանջում է դեմոկրատացում ու հրապարակայնություն, իսկ այստեղ դեմոկրատացման դրոշի ներքո մենք տեսնում ենք անպատասխանատու անձանց կողմից գործադրվող անամոթ ճնշում աշխատավորական կոլեկտիվների, հանրապետությունների բնակչության վրա, ասենք նաև՝ ճնշում իշխանության մարմինների վրա, այդ թվում նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության վրա:

Տեսեք, թե պայքարի ինչ ձևեր են ընտրվել. մշտական բազմամարդ ցույցեր, միտինգներ և վերջապես գործադուլներ: Այլ կերպ ասած, մենք տեսնում ենք, որ դեմոկրատական իրավունքներն ու նոր պայմանները, որ ընձեռել ու ստեղծել է վերակառուցումը, օգտագործվում են ակնհայտորեն հակադեմոկրատական նպատակներով:

Ես կարծում եմ, ընկերներ, որ դա անընդունելի է, դա ոչ ոքի հարկավոր չէ և չի բխում մեր երկրի ժողովուրդների շահերից:

Կան մարդիկ, որոնք, չնայած XIX կուսակցական կոնֆերանսի կոչին, շարունակում են գործել ծայրահեղականորեն, հրահրում են աշխատավորներին, և կուսակցական կոնֆերանսից հետո իրադրությունը այդ առումով նույնիսկ սրվեց:

Մի խոսքով, մենք նախագահության այս նիստում կանգնած ենք դժվարին ընտրության առաջ, բայց այն պետք է կատարվի, որովհետև խոսքը վերաբերում է նաև երկու ժողովուրդների, պատմությամբ ու ճակատագրով մոտիկ, եղբայրական ժողովուրդների ապագային: Հայերն ու ադրբեջանցիները դարերով ապրել են միասին, ապրում են և այժմ, ու ապագան էլ, կարծում եմ, մենք այլ կերպ չենք էլ պատկերացնում, և դուք՝ երկու ժողովուրդների ներկայացուցիչներդ էլ չեք պատկերացնում այլ կերպ, քան միասին ապրելով:

Դե, եթե ապրելու են միասին, ապա ուրեմն այդ դեպքում պետք է մտածել, թե այսօրվա և թե ապագայի մասին: Մենք պատասխանատու ենք այսօրվա, բայց հատկապես ապագայի համար: Կամ ապրել հաշտ ու խաղաղ, վերականգնելով վստահությունը մարդկանց միջև յուրաքանչյուր քաղաքում ու գյուղում, յուրաքանչյուր փողոցում և ամեն մի տանը, կամ, մոռանալով այն ամեն բարին ու արբազանը, հանուն որի իրենց կյանքն են նվիրաբերել Ադրբեջանի և Հայաստանի լավագույն որդիների ու դուստրերի բազում սերունդներ, ընկղմվել գժտությունների և անվստահության պղտոր հորձանուտը: Դա պարզապես երկու ժողովուրդներին կշեղի պատմական զարգացման հունից: Դա կանդրադառնա նաև երկրի ամբողջ իրավիճակի վրա: Ես կասեի այսպես. եթե դա պատահեր, իսկ ես չեմ կարծում, որ դա այդպես կլինի, համոզված եմ, որ ամեն ինչ կբարեփոխվի, բայց եթե, այնուամենայնիվ, դա տեղի ունենար, պատմությունը մեզ երբեք չէր ների: Եվ մարդիկ էլ երբեք չէին ների. ոմանց այն բանի համար, որ այդպես անպատասխանատու կերպով նրանց հրահրում էին իրենց սխալ խոսքով ու լոզունգով, իսկ մյուսներին՝ նրա համար, որ չկանգնեցրին, չբռնեցին ձեռքը, իշխանություն չգործադրեցին:

Մեզ չէին ների ոչ ադրբեջանցիները, ոչ հայերը, ոչ էլ բոլոր սովետական ժողովուրդները: Մեր կուսակցությունն ինտերնացիոնալ է, մեր հեղափոխությունը ինտերնացիոնալ է, մեր երկիրը ինտերնացիոնալ է, և մենք պետք է հասնենք այն բանին, որ այդ տանը բոլոր ընտանիքներն ապրեն համերաշխ՝ անկախ իրենց ազգությունից:

Այդ առնչությամբ ես ուզում եմ նաև ասել ահա թե ինչ: Արդեն շատ ամիսներ ընթացող բանավեճում, և ես սա պետք է ասեմ, նաև այն բանավեճում, որ կայացավ

և ընթանում է Գերագույն սովետի նախագահության մեր այս նիստում, ակնհայտորեն թե մեկ և թե մյուս կողմից նկատվում է ամեն գնով հաղթանակ ձեռք բերելու, պես հաղթող իր հանրապետություն, իր հող վերադառնալու ձգտում: Հայաստանի ներկայացուցիչները՝ ձգտելով հասնել Լեռնային Ղարաբաղի միացմանն իրենց հանրապետության կազմին, իսկ Ադրբեջանինը՝ ոչ միայն թույլ չտալու ԼՂԻՄ-ի հանձնում, այլև ոչ մի բանում չզիջելով անգամ մի միլիմետր: Սա ես ասում եմ՝ նայելով ձեր աչքերին: Իմ մեջ ստեղծվում է այդպիսի տպավորություն, համոզմունք: Պետք է ասեմ, թանկագին բարեկամներ, որ դա թե առաջինների և թե մյուսների խոր մոլորությունն է: Այս հարցում հաղթանակը կարող է լինել միայն ընդհանուր: Այլ մոտեցումը քաղաքական փակուղի է, իրավիճակի հետագա սրում, կրքերի շիկացում, թշնամանքի ահագնացում: Իրադարձությունների նման զարգացումն ի չիք կդարձնի այն ամենը, ինչ ստեղծվել է բազում սերունդների կողմից, ժողովրդի գիտակցությունը կթունավորի ազգայնամոլ շմոլքով և դրանով իսկ նրանց հարաբերությունները կփչացնի շատ ու շատ տարիներ: Մի՞թե դրան են ձգտում Ադրբեջանում և Հայաստանում:

Մենք տեսնում ենք, իհարկե, որ կան նաև այնպիսիները, ովքեր հենց դա էլ ցանկանում են և դրան էլ ձգտում են: Նրանք հափշտակված են վայրենի, անմարդկային գաղափարով. թող նույնիսկ կործանվեն հարյուրավոր ու, թերևս, հազարավոր մարդիկ, բայց դա, իբր, կամրապնդի ազգի ոգին: Դա քաղաքական խելահեղություն է և անպատասխանատվության, անմարդկայնության բարձրագույն աստիճան: Դրանք արկածախնդիրներ են, որոնց հենց այդպես էլ պետք է անվանել, ընդ որում անուն առ անուն: Մի՞թե կարող է նման բան անցնել նորմալ մարդու ուղեղով: Առավել ևս այն մարդու, որը պատասխանատու է իր ժողովրդի հանդեպ, մյուս ժողովուրդների հանդեպ, մարդու, որը օժտված է որոշակի լիազորություններով:

Մենք պետք է ելնենք Հայկական ՍՍՀ-ի և Ադրբեջանական ՍՍՀ-ի միլիոնավոր աշխատավորների շահերից: Մի՞թե մենք հիմա, շփվելով Հայաստանի և Ադրբեջանի ներկայացուցիչների հետ, չենք տեսնում, որ թե նրանք և թե մյուսները խորապես վերապրում են պատահածը և ուզում, որ ամեն ինչ լուծվի լավ և ամենասեղմ ժամկետում: Եվ դեռ ինչքան մարդիկ կան, որոնց մեջ դեռ նոր է սկսվում հոգու շարժումը, ուժեղանում այն բանի ըմբռնումը, որ սրման ուղիով հետագա քայլերը կործանարար են: Իսկ այդ ժամանակ գտնվում են մարդիկ, որոնք հոգու այդ շարժումը ուզում են տեղնուտեղը մարել՝ ձայնարկելով, իբր դավաճանություն է, երբ մարդ ուզում է իր ձայնը բարձրացնել հօգուտ այն բանի, որ կանգ առնենք ու մտածենք. մենք ի՞նչ ենք անում և ու՞ր ենք գնում:

Պետք է ասեմ, որ բոլոր հանրապետություններում, ամբողջությամբ վերցրած երկրում մեզանից վճռական գործողություններ են սպասում Լեռնային Ղարաբաղում, Հայաստանում և Ադրբեջանում իրադարձությունների հետագա բացասական զարգացման ուղին պատնեշելու համար: Եվ մենք հասկանում ենք նրանց բաղձանքները: Մարդկանց պարզ իմաստնությունը պետք է կողմնորոշիչ ծառայի, երբ մենք որոշում ընդունենք Գերագույն սովետի նախագահությունում քննարկված հարցի վերաբերյալ: Այս ժամերին բոլորս միասին մտածում էինք, խորհում, միմյանց հարցեր տալիս, որ պարզենք կացությունը, այն ճիշտ գնահատենք և ելք գտնենք ստեղծված, ուղղակի ասենք՝ փակուղուց:

Ինձ թվում է, եթե վերանանք հույզերից, ցավից, կշտամբանքներից, որոնք այստեղ հնչեցին թե մեկ, թե մյուս կողմից, ապա այժմ այս նիստում մեր մեջ ստեղծվում է ընդհանուր կարծիք. ելնելով երկրի ժողովուրդների արմատական շահերից, բոլոր սովետական մարդկանց շահերից, նախ և առաջ մենք պետք է հավաստենք գոյություն ունեցող իրողությունը և այն փաստը, որ Լեռնային Ղարաբաղը մտնում է Ադրբեջանական ՍՍՀ-ի կազմի մեջ: Դա հարցի մի կողմն է: Ըստ իս, այն պարզ է դառնում բոլորիս համար, ընկերներ: Միաժամանակ այստեղ առաջարկություններ արվեցին Լեռնային Ղարաբաղի բնակիչների համար երաշխիքներն ուժեղացնելու վերաբերյալ, որպեսզի չկրկնվի այն, ինչը հանգեցրեց ներկայիս իրավիճակին: Անցյալում շատ խոստումներ են եղել, և դրանք շատ դեպքերում դատարկ հնչյուն դուրս եկան, դեռ ավելին, ըստ էության, խաբեության վերածվեցին Լեռնային Ղարաբաղի բնակիչների համար: Հարկավոր է, որ մեր որոշումը ներառնի նաև այդ տարրը՝ եղածի կրկնությունը թույլ չտալու երաշխիքներ:



Եվ այստեղ մենք մոտեցանք փոխզիջումների թեմային. այն հնչեց, և ես չեմ ուզում թվարկել այն ամենը, ինչ ասվեց: Բայց ես կարծում եմ, որ որոշման նախագիծը, որին ծանոթ են նախագահության անդամները և հանրապետությունների ներկայացուցիչները, հարկ է լրացնել մի դրույթով, որն ավելի լրիվ հաշվի առներ Լեռնային Ղարաբաղի կացությունը, նրա բնակիչների շրջանում հաստատեր այն վստահությունը, որ կյանքը կբարեփոխվի, որ կապահովվեն Ադրբեջանական ՍՍՀ-ի կազմում Լեռնային Ղարաբաղի նորմալ զարգացման երաշխիքները: Ըստ երևույթին, ժամանակ է պահանջվում լուծելու հասունացած հարցերը, այն, ինչ Լեռնային Ղարաբաղի զարգացման վերաբերյալ նախատեսված է Կենտկոմի և կառավարության որոշմամբ: Ժամանակ կպահանջվի նաև հարաբերությունների նորմալացման, ջանքերի համակցման համար, քանի որ կորսված են նույնիսկ աշխատանքային, մարդկային շփումները: Ըստ երևույթին հարկավոր է Գերագույն սովետի նախագահության, իսկ միգուցե միաժամանակ կառավարության, նույնիսկ ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացուցիչների ինչ-որ խումբ, թեկուզ ներկա լինի երեք մարդ, որը օգներ կազմակերպելու երկու հանրապետությունների համագործակցությունը այդ որոշման կատարման համար: Չէ որ այն մասշտաբային է, միանգամայն այլ մակարդակի է բարձրացնում ամբողջ իրավիճակի զարգացումը Լեռնային Ղարաբաղում:

Բացի այդ, այստեղ շատ առաջարկություններ արվեցին, որոնք վերաբերում են մարզի ստատուսի, նրա լիազորությունների և հնարավորությունների բարձրացմանը: Ըստ երևույթին, դա նույնպես չպետք է դեն նետել. այդ հարցերը պահանջում են, որ դրանք քննվեն: Մենք խորհրդակցեցինք հանրապետությունների ղեկավարների հետ, միգուցե որոշման առաջին մասում ասվածի հետ մեկտեղ կետ ավելացվի այն մասին, որ Ազգությունների սովետի շրջանակներում խումբ կամ հանձնաժողով կազմվի, որը քննարկեր այստեղ արված բոլոր առաջարկությունները: Հետո, ինչպես երևում է, Ազգությունների սովետում կարվեն նաև այլ առաջարկություններ: Այսպիսով, մենք կկարողանանք ավելի լավ ուսումնասիրել այդ պրոբլեմը: Առավել ևս, որ մենք գնում ենք դեպի քաղաքական սիստեմի ռեֆորմ, որը ենթադրում է միութենական հանրապետությունների իրավունքների, նրանց պատասխանատվության ու լիազորությունների բարձրացում, ինքնավար հանրապետությունների իրավունքների և ստատուսի ընդլայնում: Այդ հարցի ուսումնասիրման շրջանակներում մենք կկարողանանք հանգել այնպիսի լուծումների, որոնք դարձյալ կուժեղացնեին երաշխիքները, որոնց մասին խոսվեց այստեղ:

Ես կարծում եմ, որ եթե մենք այդ կերպ լրացնենք մեր որոշումը, ապա դա, այսպես ասած, այն կդարձնի փաստաթուղթ, որի հիմքի վրա կարելի է ծավալել նորմալացման լայն պրոցեսը:

Մենք Ադրբեջանի և Հայաստանի բոլոր քաղաքացիներին կոչ ենք անում հասունություն, իսկական հայրենասիրություն դրսևորել, առավելագույն ջանքեր գործադրել նորմալացնելու իրադրությունը, կարգավորելու մարդկանց լավ հարաբերությունները:

Իհարկե, Լեռնային Ղարաբաղին առնչվող իրադարձությունները արդեն խոր դրոշմ են թողել երկու ժողովուրդների հարաբերությունների վրա, և ժամանակ կպահանջվի, որպեսզի այդ հանրապետությունները դառնան հիրավի եղբայրական: Բայց պետք է գործել, պետք է ընդառաջ գնալ միմյանց՝ ղեկավարվելով բարձրագույն շահերով:

Ընդ որում, մենք մտքներովս անգամ չենք անցկացնում Ադրբեջանի հայ բնակչությանը մեկուսացնել Հայաստանից մշակույթի, կրթության, գիտության, ինֆորմացիայի, ընդհանրապես հոգևոր ոլորտում, ճիշտ այդպես էլ հավասարապես նույնպիսի ուշադրությամբ պետք է շրջապատված լինեն նաև Հայաստանում ապրող ադրբեջանցիները: Ահա, ընկերներ, իրական ուղին, ինչպես որ բոլոր հանրապետությունների համար: Պետք է ելնել կյանքից: Սա երկու հանրապետությունների կուսակցական, սովետական մարմինների սրբազան պարտքն է ոչ միայն իրենց ժողովուրդների, այլև մեր երկրի բոլոր ժողովուրդների հանդեպ:

Ես կարծում եմ, որ եկել է պատասխանատու ձեռնարկումների ժամը: Եվ մենք հույս ունենք, որ կոմունիստները բարձր պատասխանատվության օրինակ ցույց կտան: Մենք հույսով ենք, որ նրանց կաջակցեն պատերազմի, աշխատանքի վետերանները, որոնք կողք կողքի քայլել են փորձությունների, ճակատամարտերի դժնդակ ճանա-

պարհներով: Նրանց պետք է աջակցի երիտասարդությունը, քանի որ չի կարելի թույլ տալ, որ այսօր տեղի ունեցածը ընդմիշտ մթագնի նրա ապագան: Իսկ չէ որ եթե դա մնա երիտասարդության գիտակցության մեջ, դա կնշանակի, որ իրավիճակի նման ընթացքն ու զարգացումը ինչ-որ չափով ծրագրավորված կլինի ապագայում: Առողջացման այդ պրոցեսում իրենց ավանդը պետք է ներդնեն մտավորականության ներկայացուցիչները, որոնց խոսքն ունկնդրում են մարդիկ: Ես կարծում եմ, որ թե Ադրբեջանում և թե Հայաստանում ազնիվ, մտածող մարդկանց մեծամասնությունը հասկանում է նման հարցադրման արդարացիությունը: Մենք մեզ հաշիվ ենք տալիս, որ կգտնվեն մարդիկ, որոնք վերջին կես տարում կուտակված հույզերի ազդեցությամբ կփորձեն շարունակել առճակատման գիծը, շիկացնել կրքերը, ճնշում գործադրել բնակչության վրա: Ովքե՞ր են այդ մարդիկ: Դեպքերի զարգացումը, անկարգությունների կազմակերպման մեթոդները, ժողովրդին մշտապես լարվածության մեջ պահելու փորձերը առհասարակ ավելի ու ավելի հստակորեն են բացահայտում նրանց դեմքը թե բարոյական և թե քաղաքական առումով:

Ղարաբաղի պրոբլեմները չարարկում են վերակառուցման հակառակորդները, պահպանողական և կաշառակեր տարրերը, որոնք իրենց քսակները լցրել են լճացման ժամանակաշրջանում: Դա նույնպես մենք պետք է տեսնենք և հասկանանք, ընկերներ: Նրանց համար ձեռնտու է ուշադրությունը փոխադրել, իրենցից շեղել Լեռնային Ղարաբաղի հայերի ճակատագրի մասին մտացածին հոգատարությամբ: Մենք դա գիտենք, մենք դա տեսնում ենք և նույնպես տեսադաշտից դուրս չենք թողնի: Հենց նման տարրերի դեմ և միմիայն նման տարրերի դեմ պետք է ուղղված լինի սովետական օրենքների ուժը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշումը, որի նախագիծը ձեզ առաջարկված է, պետք է, իհարկե, անշեղորեն կատարվի դրա ընդունումից հետո: Մենք կարծում ենք, որ այն կարժանանա ամբողջ սովետական ժողովրդի պաշտպանությանը, և հաստատ հույս ենք դնում Ադրբեջանի ու Հայաստանի բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, բոլոր աշխատավորների ողջամտության, փորձի և իմաստնության վրա:

Իրենց կողմից ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Գերագույն սովետը, կառավարությունը ամեն ինչ անում են, որպեսզի իրադրության կարգավորման պրոցեսը ընթանա անընդմեջ և հաջողությամբ: Եկեք նիստից դուրս գանք այն համոզմունքով, որ մենք հանգել ենք միակ ճիշտ լուծմանը, և կգործենք այնպես, ինչպես մենք այսօր պայմանավորվում ենք: **(Ծափահարություններ):**

---

## ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշումը

# ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԻ ԱՌԹԻՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԵՎ ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, քննարկելով Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 1988 թվականի հունիսի 15-ի խնդրանքը ԼՂԻՄ-ի ժողովրդական դեպուտատների սովետի խնդրագրի կապակցությամբ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը Հայկական ՍՍՀ-ի կազմի մեջ անցնելու վերաբերյալ և Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետի 1988 թվականի հունիսի 17-ի որոշումը Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը Հայկական ՍՍՀ-ի կազմի մեջ մտցնելու անընդունելիության մասին, անհնար է համարում Հայկական ՍՍՀ-ի և Ադրբեջանական ՍՍՀ-ի սահմանների և սահմանադրական հիման վրա հաստատված նրանց ազգային-տերիտորիալ բաժանման փոփոխումը:

Ընդունելով այսպիսի որոշում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը ելնում է ՍՍՀՄ սահմանադրության այն դրույթից (հոդված 78), որին համապատասխան միութենական հանրապետության տարածքը չի կարող փոփոխվել առանց նրա համաձայնության: Այլ որոշումը կհակասեր երկու հանրապետությունների ժողովուրդների շահերին, լուրջ վնաս կհասցներ այդ ռեգիոնի ազգամիջյան հարաբերություններին:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը նշում է, որ սովետական իշխանության տարիներին լենինյան ազգային քաղաքականության իրականացման հիման վրա Լեռնային Ղարաբաղի աշխատավորները կուսակցական և սովետական կազմակերպությունների ղեկավարությամբ նշանակալի հաջողությունների են հասել տնտեսության, գիտության զարգացման ասպարեզում և սոցիալական կյանքի այլ ոլորտներում: Դրա հետ մեկտեղ ինքնավար մարզում երկար ժամանակ չէին լուծվում հայ բնակչության ազգային շահերը շոշափող շատ հարցեր, հատկապես մշակույթի, կրթության ոլորտում, կադրային քաղաքականության մեջ: Խախտվում էին ինքնավար մարզի սահմանադրական իրավունքները: Այդ բոլոր բացասական երևույթները ոչ միայն ժամանակին չէին վերացվում, այլև կուտակվում էին: Ադրբեջանական ՍՍՀ-ի, Հայկական ՍՍՀ-ի և Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի իշխանության մարմինները մակերեսորեն մոտեցան ստեղծված իրավիճակի գնահատմանը, չգիտակցեցին այդ ռեգիոնում գոյություն ունեցող ազգային-տերիտորիալ կառուցվածքը վերանայելու անհիմն կոչերի քաղաքական վտանգավորությունը, պասիվ, սպասողական դիրք գրավեցին: Հանրապետություններում սրվել է իրադրությունը, մեծ վնաս է հասցվել տնտեսությանը, Հայաստանի և Ադրբեջանի ժողովուրդների ազգամիջյան հարաբերություններին: Այդ ամենը արդարացիորեն դատապարտվեց մեր երկրի աշխատավորների կողմից:

Լեռնային Ղարաբաղում ստեղծված դրությունը շտկելու և լուրջ թերությունները վերացնելու համար ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներով խոշոր միջոցառումներ են նախատեսված Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի տնտեսության, մշակույթի հետագա զարգացումն ապահովելու, աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու,

սոցիալիստական օրինականությունն ու հասարակական կարգն ամրապնդելու, Ադրբեջանական ՍՍՀ-ի և Հայկական ՍՍՀ-ի բնակչությանը եղբայրական բարեկամության ու համագործակցության ոգով դաստիարակելն ուժեղացնելու համար: Անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծված Հայկական ՍՍՀ-ի հետ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի կապերն ընդլայնելու նպատակով: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը նպատակահարմար է համարում Լեռնային Ղարաբաղ ուղարկել իր ներկայացուցիչներին, որոնք, Ադրբեջանական ՍՍՀ-ի և Հայկական ՍՍՀ-ի ներկայացուցիչների հետ սերտ համագործակցելով, կգործեն ընդունված որոշումների պարտադիր կատարումն ապահովելու համար:

2. ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը Ադրբեջանական և Հայկական միութենական հանրապետությունների աշխատավորներին, կուսակցական ու պետական մարմիններին կոչ է անում հնարավոր ամեն ինչ անել, որպեսզի վերականգնվեն ադրբեջանական և հայ բնակչության բարի, եղբայրական հարաբերությունները:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, Ադրբեջանական ՍՍՀ և Հայկական ՍՍՀ ժողովրդական դեպուտատների սովետներին, նրանց գործադիր ու կարգադրիչ մարմիններին հանձնարարում է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել, որպեսզի նորմալացվի իրադրությունը Հայաստանում, Լեռնային Ղարաբաղում ու Ադրբեջանի մյուս ռեգիոններում, ապահովվի աշխատանքային կարգապահության ամրապնդումը, ՍՍՀՄ սահմանադրության և սովետական օրենքների անշեղ կիրառումը, վճռականորեն կասեցնելով ազգային թշնամանքի բորբոքմանը ուղղված ամեն տեսակ գործունեություն, դեմոկրատական իրավունքները հակադեմոկրատական նպատակներով օգտագործելու փորձերը:

Նպատակահարմար համարել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում դրված դրա հետ կապված հարցերի ուսումնասիրումը հանձնարարել Ազգությունների սովետի հատուկ ստեղծվող հանձնաժողովին, որն իր առաջարկությունները պատրաստ լինելուն պես կներկայացնի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քննարկմանը:

3. ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը գտնում է, որ այժմ, երբ ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը նոր խնդիրներ է առաջադրել մեր հասարակության հեղափոխական վերակերտումների պրոցեսները խորացնելու, այդ թվում և ազգամիջյան հարաբերություններն էլ ավելի ամրապնդելու ու զարգացնելու նպատակով, առանձնապես կարևոր է, որ բոլոր միութենական ու ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների նախագահությունները, ժողովրդական դեպուտատների տեղական սովետները մշտապես տեսադաշտում պահեն ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա սովետական մարդկանց բարեկամության և իրավահավասար համագործակցության ամրապնդման հարցերը: Անհրաժեշտ է հոգ տանել, որ յուրաքանչյուր սովետական մարդ, անկախ ազգությունից, իրեն լիիրավ քաղաքացի զգա երկրի ցանկացած շրջանում: Ազգամիջյան հարաբերությունների ծագող հարցերը պետք է լուծել ժամանակին, առավելագույնս հաշվի առնելով ինչպես յուրաքանչյուր ազգի և ազգության, այնպես էլ մեր ամբողջ սոցիալիստական հայրենիքի շահերը:

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության**
**նախագահ՝ Ա. ԳՐՈՄԻԿՈ**
**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության**
**քարտուղար՝ Թ. ՄԵՆԹԵՇԱՇՎԻԼԻ**

---

# Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթը հայկական հեռուստատեսությամբ 1988 թվականի հուլիսի 27-ին

Հարգելի ընկերներ:

Ինչպես դուք գիտեք, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը սույն թվականի հուլիսի 18-ին քննարկեց Լեռնային Ղարաբաղի հարցի առթիվ Հայկական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետների որոշումները:

Ընդունված որոշումը, նախագահության նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի ելույթը սկզբունքային նշանակություն ունեն, տոգորված են հայ-ադրբեջանական, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների բարօրության նկատմամբ մեծ հոգատարությամբ: Ընկեր Գորբաչովի ելույթում բովանդակվող դրույթներն ու եզրահանգումները արծարծում են մեր հասարակության զարգացման այդ փուլում կուսակցության ազգային քաղաքականության հանգուցային հարցերը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշումը խնդրի բոլոր կողմերի մանրամասն կոլեկտիվ վերլուծության, երկու հանրապետություններում ստեղծված բարդ և սուր իրավիճակի սթափ գնահատման, դրա խոր ու բազմակողմանի ուսումնասիրման արդյունք է:

Նախագահության որոշումն ընդունվեց դեմոկրատական լայն հիմքի վրա, եղբայրական բոլոր հանրապետությունների ներկայացուցիչների ակտիվ մասնակցությամբ: Նախագահության նիստին նախորդեց նախապատրաստական լայն աշխատանք, որի ընթացքում մեր հանրապետության ղեկավարությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետի՝ մեր հանրապետությունից ընտրված դեպուտատները Լեռնային Ղարաբաղի պրոբլեմների մասին հանգամանալից զրույցներ ունեցան երկրի կուսակցական ու պետական ղեկավարության հետ:

Նախագահության նիստում մեր հանրապետության ներկայացուցիչները արտահայտեցին Հայաստանի հասարակայնության կարծիքը: Նրանք ստեղծված վիճակից դուրս գալու նպատակով առաջ քաշեցին այլընտրական առաջարկներ: Նիստում, որը տևեց ութ ժամից ավելի, հանգամանալիորեն քննարկվեցին Լեռնային Ղարաբաղի խնդրի լուծման հնարավոր բոլոր տարբերակները:

Գերագույն սովետի նախագահությունը անհնար համարեց Հայկական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ սահմանների և սահմանադրական հիման վրա հաստատված նրանց ազգային-տերիտորիալ բաժանման փոփոխումը: Դա տվյալ պարագայում ամենահավասարակշռված որոշումն է, որը համապատասխանում է երկու հանրապետությունների ժողովուրդների շահերին, բոլոր սովետական մարդկանց շահերին:

Նիստում արդարացիորեն նշվում էր, որ այդ հարցում չպետք է լինեն ո՛չ հաղթողներ, ո՛չ պարտվողներ: Ամեն մի այլ որոշում ավելի կբարդացներ առանց այն էլ խիստ լարված իրավիճակը ռեգիոնում, լուրջ վնաս կհասցներ ազգամիջյան հարաբերություններին, կհանգեցներ իրադրության հետագա սրման, կրքերի բորբոքման, կտաներ քաղաքական փակուղի:

Նախագահության որոշման մեջ, Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի ելույթում տրըված է Հայաստանում և Ադրբեջանում ստեղծված իրադրության սկզբունքային գնահատականը, նշված են դրա կարգավորման իրական ուղիները: Այդ կարևորագույն փաստաթղթերում բացահայտվում են Լեռնային Ղարաբաղի տնտեսության ու մշակույթի հետագա զարգացման, բնակչության բարեկեցության բարձրացման, Հայաս-

տանի և Ադրբեջանի աշխատավորներին իսկական բարեկամության և համագործակցության ոգով դաստիարակելու հնարավորությունները:

Որոշումը անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի հետ մեր հանրապետության կապերը ըստ ամենայնի ընդլայնելու գործում: Շատ կարևոր է, որ նախագահությունը նպատակահարմար համարեց Լեռնային Ղարաբաղ ուղարկել իր ներկայացուցիչներին, որոնք Ադրբեջանի և Հայաստանի ներկայացուցիչների հետ սերտ համագործակցելով, ջանքեր կներդնեն ընդունված որոշումների անվերապահ կատարումը ապահովելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը արդեն Լեռնային Ղարաբաղ են գործուղել իրենց ներկայացուցչին՝ ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ՍՄԿԿ Կենտկոմի բաժնի վարիչ ընկեր Ա. Ի. Վոլսկուն: Նրա առջև խնդիր է դրված կազմակերպել և կոորդինացնել Ադրբեջանի, Հայաստանի և Լեռնային Ղարաբաղի կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների աշխատանքը այդ ուղղությամբ:

Ադրբեջանի ու Հայաստանի կոմկուսների կենտկոմներին, Ադրբեջանական ՍՍՀ և Հայկական ՍՍՀ գերագույն սովետների նախագահություններին ու մինիստրների խորհուրդներին, ինչպես նաև համապատասխան միութենական մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է համակողմանի օգնություն և աջակցություն ցույց տալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ներկայացուցչին՝ հաջողությամբ իրականացնելու իր առաքելությունը:

Եվ, վերջապես, խիստ կարևոր է, որ անհրաժեշտ է համարվել նախագահության նիստում դրված հարցերի ուսումնասիրությունը հանձնարարել Ազգությունների սովետի հատուկ ստեղծված հանձնաժողովին, որը իր առաջարկությունները պատրաստ լինելուն պես կներկայացնի ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քննարկմանը:

Այսպիսով, մենք առաջին անգամ լայն հնարավորություն ենք ստանում ամենաակտիվ մասնակցություն ունենալու Լեռնային Ղարաբաղի քաղաքական, տնտեսական, սոցիալական և մշակութային կյանքի հրատապ հարցերի լուծմանը: Եվ մենք այսուհետև մշտապես կզարգացնենք ու ամեն կերպ կամրապնդենք սոցիալ-տնտեսական, մշակութային, հոգևոր կապերը Լեռնային Ղարաբաղի հետ:

Ընկերներ:

Կուզենայի ձեր ուշադրությունը հրավիրել մի հարցի վրա, որն առանձին ուժով շեշտվեց նիստի բոլոր ելույթներում և հատկապես Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի ելույթում: Մենք ապրում ենք բազմազգ սոցիալիստական պետության մեջ և շաղկապված ենք պատմական բախտի ընդհանրությամբ: Ազգային հարաբերությունների կատարելագործումը և զարգացումը պետք է ընթանան՝ հաշվի առնելով երկրի բոլոր ազգերի և ազգությունների շահերը, մազաչափ անգամ չվնասելով մեր դաշինքի ամբողջականությանը, մեր ժողովուրդների անսասան բարեկամությանը:

Եկեք մինչև վերջ անկեղծ լինենք և անաչառ ու սթափ գնահատենք ներկայումս մեզանում ստեղծված իրավիճակը: Կարծում եմ, սխալված չեմ լինի, եթե ասեմ, որ վերջին շրջանում մեզ մոտ տեղի ունեցած միտինգները և ցույցերը, առանձին անպատասխանատու անձանց քաղաքականապես վնասակար կոչերը և գործողությունները ընդհանուր ոչինչ չունեն ո՛չ հրապարակայնության, ո՛չ դեմոկրատիայի, ո՛չ էլ ղարաբաղյան պրոբլեմի հետ: Դեմոկրատացման կոչերով ծպտված՝ փորձեր էին արվում կոպիտ ճնշում գործադրել աշխատավորական կոլեկտիվների և իշխանության մարմինների վրա: Իսկ գործադուլները տնտեսական զգալի կորուստներից զատ մեզ պատճառեցին բարոյական լուրջ վնաս: Պայմանագրային պարտավորությունների ձախողումը խիստ բացասաբար ազդեց երկրի մեծ թվով ձեռնարկությունների աշխատանքի վրա, արդարացի դժգոհություն հարուցելով հանրապետության հասցեին:

Այդ ամենը ոչ միայն չնպաստեց Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի լուծմանը, այլև ստվեր նետեց մեր տաղանդավոր և աշխատասեր ժողովրդի բարի անվան վրա:

Առանձին անպատասխանատու անձինք այժմ էլ փորձում են շարունակել առճակատման գիծը, բորբոքել կրքեր: Այդ պատճառով իրադրությունը հանրապետությունում մնում է լարված: Վերջին շրջանում Երևանում, մյուս քաղաքներում կայացած միտինգները, ցույցերը դուրս եկան օրինականության շրջանակներից, ստացան քաղաքականապես վտանգավոր բնույթ: Այդտեղ հնչում էին վնասակար, ծայրաստիճան վտանգավոր կոչեր:



Վերջին ժամանակներս ծայրահեղականորեն տրամադրված անձինք անթույլատրելի ձևով հանդես են գալիս ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշման դեմ: Ձգտելով աղավաղել նրա իմաստն ու բովանդակությունը, ազգի անունից հանդես գալու մարմաջով տառապող այդ մարդիկ խտրություն չեն դնում միջոցների միջև, ոտնահարում են մեր բարոյական արժեքները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, հանրապետության այլ ղեկավար մարմիններում ստացվում են բազմաթիվ նամակներ, որոնց հեղինակները՝ պատերազմի և աշխատանքի վետերաններ, հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորներ, մտավորականության ներկայացուցիչներ, դատապարտում են այդ անձանց հակասահմանադրական, հակադեմոկրատական գործողությունները և անհրաժեշտ համարում պատասխան պահանջել նրանցից:

Օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, քննության առնելով ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշումը, հանձնարարեց կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, պետական ու տնտեսական մարմիններին՝ խորապես և համակողմանիորեն վերլուծել ստեղծված իրադրությունը, ժողովրդական տնտեսության ճյուղերում ամենուրեք հասնել նորմալ աշխատանքային ռիթմի վերահաստատման, ուժեղացնել բնակչության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը:

Մենք գիտենք, որ հանրապետության աշխատավորների անհանգստությունն են հարուցում տնտեսական ու սոցիալական զարգացման լուրջ թերությունները, սրված էկոլոգիական պրոբլեմները, կադրային քաղաքականության խոշոր վրիպումները, սոցիալական արդարության սկզբունքների խախտումները:

Դրանք վաղեմի ու բարդ պրոբլեմներ են, որոնց լուծման համար անհրաժեշտ է մեր հասարակության առողջ ուժերի համախմբում, բոլոր աշխատավորական կոլեկտիվների ջանքերի միավորում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը վստահ է, որ կոմունիստները, աշխատավորները դասեր կքաղեն մեր վերապրած դժվար օրերից, ամեն ինչ կանեն հանրապետությունը ստեղծված բարդ վիճակից արագորեն դուրս բերելու, նրա սոցիալ-տնտեսական ու հոգևոր հետագա առաջընթացը ապահովելու համար:

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ մեր աշխատավորները, մեր ամբողջ հասարակայնությունը այս վճռորոշ պահին ճիշտ կգնահատեն ստեղծված կացությունը, հանդես կբերեն քաղաքական իրատեսություն ու քաղաքացիական հասունություն, վճռականորեն կմերժեն այն ամենը, ինչ խոչընդոտում է հանրապետության առաջընթացը, սրբությամբ կպահպանեն մեր ժողովրդի բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ:

---

## Խոսում է կոնֆերանսի պատգամավորը

# ՇԻՆԱՐԱՐԻ ՊԱՏՎԻ ՀԱՄԱՐ

**Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ XIX ԿՈՒՍԿՈՆՖԵՐԱՆՍԸ, որի պատգամավորը լինելու պատվին արժանացել էի նաև ես, խոր ու անջնջելի տպավորություն թողեց մեզ վրա: Եթե երկու խոսքով ասելու լինենք, կոնֆերանսը, իմ կարծիքով, վերակառուցման պրոցեսն անշրջելի դարձնելու՝ սովետական ժողովրդի անսասան կամքի հաստատումն էր:

Սովետական մարդիկ կենսականորեն շահագրգռված են այն բանում, որ վերակառուցման, հրապարակայնության, դեմոկրատիայի ոգով տոգորվեն մեր կենսագործունեության բոլոր ոլորտները: Իմ համոզմամբ կոնֆերանսն այդ ամենի համար միանգամայն հուսալի երաշխիքներ ստեղծեց: Նորություն հայտնած չեմ լինի, եթե ասեմ, որ պատգամավորներիս վրա մեծ տպավորություն գործեց այն, որ բոլոր ելույթներն ազատ ու անկաշկանդ էին, մի բան, որ հնարավոր չէր լճացման տարիներին: Ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը, նախընթաց ժամանակաշրջանում այսպիսի դիսկուսիոն ձևով ոչ մի համագումար, ոչ մի պլենում չի անցել, ինչպես անցավ կոնֆերանսը: Մարդիկ ասացին այն ամենը, ինչ ցանկանում էին, արտահայտվեցին այն բոլոր հարցերի շուրջ, որոնք հուզում էին իրենց:

Կոնֆերանսին տրված զեկուցումը տոգորված էր մեր երկրի առջև ծառացած խնդիրների լուծման վճռականությամբ, ժողովրդի ապագայի նկատմամբ անսահման հոգատարությամբ: Կուսակցության վերակառուցման կուրսն արժանացավ կոնֆերանսի մասնակիցների լիակատար պաշտպանությանը: Պատգամավորներիս սրտից էր բխում Մ. Ս. Գորբաչովի արտահայտած այն միտքը, որ «... կոնֆերանսի քաղաքական նպատակակետն է լենինյան ավանդույթների ոգով ու հենվելով կուտակված փորձի վրա, համակողմանիորեն և քննադատաբար իմաստավորել Կենտկոմի ապրիլյան պլենումից և ՍՄԿԿ XXVII համագումարից հետո անցած ժամանակաշրջանը, հաըստատել մեր վերափոխումների ստրատեգիան և կոնկրետացնել դրանց տակտիկան, սահմանել աշխատանքի այնպիսի ուղիներ, ձևեր և մեթոդներ, որոնք ապահովեին վերակառուցման անշեղ զարգացումն ու անշրջելիությունը»:

Հետաքրքրական էին մեր պատվիրակության և նրա մի խումբ անդամների մոսկովյան հանդիպումները: Մենք սրտաբաց զրույցներ ունեցանք ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ա. Գրոմիկոյի և ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար Ա. Յակովլևի հետ: Հետաքրքիր էր արտասահմանյան ժուռնալիստների հետ անցկացված ասուլիսը: Ջերմ էր մեր հանդիպումը Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի պատվիրակությունների հետ: Լեռնային Ղարաբաղի պատվիրակության հետ հանդիպման ժամանակ խոսակցություն ծավալվեց մարզի և մեր հանրապետության համատեղ ձեռնարկությունների փոխհարաբերությունների, Լեռնային Ղարաբաղի շրջաններում Հայկական հեռուստատեսության հաղորդումներից օգտվելու շուրջ: Խոսվեց այն մասին, որ մինչև այժմ կուլտուրայի, արվեստի, գրականության և այլ բնագավառների աշխատողների միջև հանդիպումներ շատ քիչ են եղել և հարկավոր է ամրապնդել նրանց կապերը:

Շատ օգտակար էին կոնֆերանսի մասնակիցների՝ ըստ պրոֆեսիայի հանդիպումները վերադաս մարմինների աշխատողների հետ: Այսպես, ՍՍՀՄ պետշինը հանդիպում կազմակերպեց կոնֆերանսի ավելի քան 200 շինարար պատգամավորների հետ: Այն տեղի ունեցավ հենց պետշինում, շինարարներիս համար ստեղծվել էր արտահայտվելու, սեփական մտահոգությունները կիսելու լավ մթնոլորտ: Արծարծվեցին շատ ու տարատեսակ հարցեր: Գլխավորը, թերևս, այն էր, որ շինմոնտաժային աշխատանքների այսօրվա տեմպերը չեն համապատասխանում արդի պահանջներին: Առաջ քաշվեցին շինանյութերի նոր ձեռնարկություններ, նոր հզորություններ գործարկելու, եղածներն ընդլայնելու, վերազինելու խնդիրները: Պետշինի ղեկավարներն ասացին, որ դրանք ծառացած են երկրի առջև և առայժմ հնարավոր չէ կատարել բոլոր պահանջները: Խնդրի լուծման ուղիներից մեկը համարվեց շենքերի միաձույլ կառուցման եղանակի լայն արմատավորումը:

Հարցադրումներից օգտվեցի նաև ես: Առաջադրեցի երեք հիմնական հարց, որոնք հույժ կենսական նշանակություն ունեն մեր միավորման և նրա շինարարական կազմակերպությունների համար: Առաջին, նշեցի, որ մեր միավորումն անցել է շենքերի հանձնման պետընդունման եղանակին, մինչդեռ ստանում է պետընդունում չանցած շինանյութեր: Իսկ դա հակասում է պետընդունման աշխատանքներին: Ինչպե՞ս կարելի է ստանալ ցածրորակ շինանյութեր և շենքը հանձնել պետընդունումով: Այստեղ ակնհայտ է հակասությունը:

Իմ հարցի առնչությամբ պատասխանեցին, թե հատուկ որոշում է ընդունվել այն մասին, որ երկրում պետընդունման անցած 20 քաղաքներ, որոնցից մեկը Երևանն է, պետք է ստանան նաև պետընդունմամբ անցած շինանյութեր: Ասացին, որ այդ սխալը պետք է շտկել: Հաջորդ օրը պետշինից զանգահարեցին և հայտնեցին, որ Պետշինը կընդունի համապատասխան որոշում և կուղարկի Հայաստանի պետշինին. այդ հարցը կլուծվի դրականորեն:

Երկրորդ հարցը վերաբերում էր տարբեր ռեգիոններում շինարարների վարձատրությանը:

Մյուս հարցը զուտ ներկուսակցական բնույթի էր: Ի՞նչն է պատճառը, որ երիտասարդ շինարար ինժեներները ինստիտուտն ավարտելուց հետո գալիս են շինարարություն, և մենք ի վիճակի չենք լինում նրանց ընդունել ՍՄԿԿ շարքերը: Մեկ-երկու տարի աշխատելուց հետո մեր լավ, ապագա խոստացող կադրերը թողնում են ու հեռանում: Դա մեզ շատ է վնասում: Որպես կուսբյուրոյի քարտուղար այսպիսի օրինակ նշեցի. մեր շինվարչությունից վերջին տասը տարում, կենսաթոշակի անցնելու կապակցությամբ, հեռացել են տասից ավելի կոմունիստ ինժեներներ, մինչդեռ նրանց փոխարեն միայն մեկին ենք ընդունել կուսշարքերը: Պատասխանեցին, որ ՍՄԿԿ շարքերի ընդունելության տոկոսային հարաբերությունը, ինչպես այդ մասին ասվեց կոնֆերանսում, վերացվում է, այսօր ՍՄԿԿ շարքերը կարող են ընդունվել նրանք, ում առաջին հերթին կերաշխավորի կոլեկտիվը: Կոլեկտիվի երաշխավորությունը կուսկազմակերպության հավանությանն արժանանալուց հետո տվյալ անձնավորությանը կուսակցության մեջ ընդունելու հարցը կդրվի քննարկման: Հուսով եմ, որ այդպես էլ կլինի:

Շինարարի գործը իմ տարերքն է, կոչումը: Նվիրումով եմ մասնակցում այն քաղաքի կառուցապատմանը, որի պատվավոր քաղաքացին եմ: Ես և իմ շինարար գործընկերները լավ ենք հասկանում, որ կառուցում ենք մեր ժողովրդի, գալիք սերունդների համար և ջանում ենք բարձր պահել շինարարի պատիվը, ուզում ենք, որ մարդիկ գոհ լինեն մեր կառուցածից: Բայց միշտ չէ, որ մեզ հաջողվում է կառուցել մեր ուզածի պես և շենքը շահագործման հանձնել նախատեսված ժամկետներում:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը մեկ անգամ ևս կարևորեց տնտեսավարման նոր եղանակների արմատավորման անհրաժեշտությունը մեր էկոնոմիկայի զարգացման և սոցիալական ոլորտի խնդիրների լուծման գործում: Մեր միավորումը, ինչպես նաև նրա ստորաբաժանումները, այդ թվում և իմ ղեկավարած կոմպլեքսային բրիգադը աշխատում են տնտհաշվարկի պայմաններում: Նոր եղանակի հաջողության համար հարկավոր է ապահովել շինանյութերի անխափան մատակարարումը: Սակայն դրանք ստանում ենք ընդհատումներով, ուշացումով, որակն էլ բնավ այն չէ: Իմ բրիգադն այժմ կառուցում է Սպանդարյանի շրջանի պիոներպալատը: Արդեն անցել է 9 ամիս, սակայն այսօրվա դրությամբ վերելակի ոչ մի հորան չենք ստացել, իսկ դա բացասաբար է անդրադառնում շինարարության ընթացքի ու որակի վրա և հետագայում մեծ դժվարությունների առաջ կկանգնեցնի մեզ: Տնտհաշվարկի պայմաններում, դա անհանդուրժելի է: Պետք է լինի ինչպես կոմպլեքսային մատակարարում, այնպես էլ կոմպլեքսային կատարում: Թե չէ ի՞նչ է ստացվում.

ԱԲՐԱՀԱՄՅԱՆ ՀՈՎԻԿ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ — «Երևանշին» կապալային շինմոնտաժային միավորման բրիգադավար, ՀԿԿ Երևանի հաղկոմի բյուրոյի անդամ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ

# ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ՀԵՐԹԱՓՈԽԸ

Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

ԴԺՎԱՐ Է ԳԵՐԱԳՆԱՀԱՏԵԼ վերակառուցման պաթոսով համակված մեր ժողովրդի ստեղծարար եռանդը, որը աշխատանքային սխրանքներ է գործում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Նրա միտքն ու հոգին, ողջ էությունը տոգորված են վերակառուցման շնչով՝ դրսևորելով բարոյահոգեբանական կենսահաստատ հատկանիշներ ամենատարբեր ոլորտներում:

Վերակառուցման շարժումն ընդգրկել է տարբեր տարիքի ու զբաղմունքի մարդկանց, որոնք պարտքի ու նվիրումի ավյունով ձեռնամուխ են եղել արարման վիթխարի ծրագրերի իրականացմանը՝ ի հայտ բերելով մարդկային տաղանդի անսպառ հնարավորություններ:

Նոր կյանքի կառուցման տարեգրությունը հարուստ է ոգեշնչման ու ընդօրինակման արժանի դրվագներով, որոնք վկայում են մեր ժողովրդի բոլոր սերունդների միասնության ու համախմբվածության մասին, որոնց անձնական աշխատանքային ներդրումը սոցիալիստական աշխարհի կառուցման գործում հիրավի հիացմունքի ու երախտագիտության հույզեր են արթնացնում:

Ինչպես նշվեց կուսակցության XXVII համագումարում, ութսունական թվականների երիտասարդներն աչքի են ընկնում լայն մտահորիզոնով, կրթվածությամբ, եռանդով: Նրանք լիցքավորված են գործելու համար, փնտրում են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում իրենց դրսևորելու հնարավորություններ:

Ամեն նոր սերունդ, յուրացնելով իր նախորդների աշխատանքի արդյունքները, հանդես է գալիս իբրև ակտիվ ուժ, մուծելով այդ պրոցեսում անփոխարինելի ավանդ, ապահովելով առաջադիմական հաջորդայնության կապը հասարակական զարգացման մեջ: Ժամանակի ընթացքում նոր սերունդը, գրավելով ակտիվ սոցիալական դիրք, կոչված է առաջ տանելու պապերից ու հայրերից ժառանգած էստաֆետը:

Կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը մշտապես կարևորել են սերունդների հաջորդայնության նշանակությունը, համակողմանիորեն նախապատրաստելով ու ներգրավելով երիտասարդ սերունդը ակտիվ արտադրական ու հասարակական գործունեության ոլորտը, նրանում ներարկելով բարձր գաղափարական, բարոյական հատկանիշներ:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման կուրսի իրականացման երաշխիքը կուսակցությունը զգալի չափով առնչում է երիտասարդ սերնդի հետ: Ամեն մի նոր սերունդ որակական առավել բարձր աստիճանի է բարձրացնում արտադրաուժերը և արտադրահարաբերությունները: Այն իր գործունեությունն իրականացնում է փոփոխված սոցիալական իրավիճակում, որը պայմանավորվում է նախորդ պատմական զարգացմամբ, հաշվի առնելով հաջորդայնության ու բացասման բարդ դիալեկտիկան: Սոցիալական փորձի յուրացումը ժամանակի առումով պայմանականորեն ենթադրում է երեք սերնդի մասնակցություն. անող, երիտասարդ և ավագ: Վերջիններս որոշակի սոցիալ դեմոգրաֆիական խմբեր են, գտնվում են անխզելի կապի մեջ, իրարից տարբերվելով տարիքային սահմաններով, հոգեկան-բնախոսական առանձնահատկություններով, կենսափորձի յուրացման աստիճանով, ինչպես նաև դրանից բխող սոցիալական համակարգում գրաված դիրքով: Հաջորդայնության պրոցեսը, սերունդների հերթափոխը անընդհատ են ինչպես կյանքը: Սերունդները հարաբերականորեն ինքնուրույն խմբեր են, որոնց միագումարը կազմում է հասարակությունը իբրև ամբողջական իրողություն:

Ինչպես նկատել են գիտական կոմունիզմի հիմնադիրները, գլխավորը հասարակության զարգացման մեջ հաջորդայնությունն է նյութական արտադրությունում: «Գերմանական գաղափարախոսության» մեջ նրանք գրել են. «Պատմությունը ոչ այլ ինչ է, քան առանձին սերունդների հետևողական հերթափոխ, նրանցից յուրաքանչյուրն օգտագործում է նյութերը, կապիտալները, արտադրական ուժերը, որոնք փոխանցվել են նախորդ սերունդների կողմից (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 3, с. 44—45):

Սոցիալական զարգացումը հիմնվում է սերունդների հաջորդայնության օրինաչափության վրա: Այստեղ մի կողմից այդ հաջորդայնությունը հանդես է գալիս իբրև սոցիալական փորձի փոխանցում, ինչպես և պատմական պրոցեսի կրկնություն, որն ապահովում է հասարակության զարգացման կայունությունը, անընդհատությունը և առաջընթացը:

Ընդհանուրը սերունդների հաջորդայնության մեջ դրսևորվում է նրանց օբյեկտիվ հերթափոխի մեջ, երբ հրապարակ եկող սերունդը, հենվելով ավագների փորձի վրա, բացասում է իր դարն ապրած արժեքները, կատարում առաջընթաց քայլ: Հաջորդայնությունը մշտապես ենթադրում է այն բոլորի իմաստավորում, քննադատաբար մշակում ու յուրացում, ինչ կենսական է ու արժեքավոր: Սերունդների հաջորդայնությունը, լինելով օբյեկտիվ կապ, բովանդակում է նաև սուբյեկտիվ իրողություն, որը ներմուծվում է նոր սերունդների գիտակցված գործունեությամբ:

Հասարակական տնտեսական ֆորմացիայի տեսության մեկնակետից ընդհանուրը սերունդների հաջորդայնության մեջ առաջին հերթին դրսևորվում է դասակարգային դիրքորոշումներում: Մարդը, պատկանելով այս կամ այն սերնդին, միաժամանակ որոշակի դասակարգ է ներկայացնում: Միևնույն սերնդի տարբեր դասակարգերի ներկայացուցիչների սոցիալական փորձը տարբեր երանգավորում ունի, որը դրսևորվում է գիտակցության ու հոգեբանության մեջ:

Կապիտալիստական աշխարհում սերունդների հաջորդայնությունը կրում է շեշտված դասակարգային բնույթ: Բուրժուազիան ձգտում է, որպեսզի երիտասարդ սերունդը նախ և առաջ ժառանգի հավատը կապիտալիստական արտադրաեղանակի անսասանության նկատմամբ, ներշնչում «ազատ ձեռներեցություն» գաղափարի սրբությունը, հարգանք մասնավոր սեփականատիրության հանդեպ իբրև գերագույն «բարոյական» արժեք: Նա ձգտում է իր ժառանգորդներին ներարկել շահատենչության, ընչաքաղցության կիրքը: Հարստանալու կուռքը սեփականատիրական աշխարհում փոխանցվում է սերնդից սերունդ՝ հանդիսանալով բուրժուական ապրելակերպի բարձրագույն չափանիշը:

Միմյանց հակադրելով երիտասարդ ու ավագ սերունդները, բուրժուական գաղափարախոսները փորձում են նենգափոխել երիտասարդության դասակարգային պատկանելիության ու դիրքավորման գիտակցությունը տարիքային բնութագրով, հոգեբանական առանձնահատկություններով, ներկայացնելով կապիտալիստական հասարակության ճգնաժամն իբրև սերունդների միջև համընդհանուր ճգնաժամ: Արևմուտքում լայն տարածում է գտել այն տեսակետը, թե դասակարգային պայքարին գալիս է փոխարինելու սերունդների պայքարը, որտեղ պատմական պրոցեսի գլխավոր ուժը դառնում է ոչ թե բանվոր դասակարգը, այլ երիտասարդությունը: Վերջինս ներկայացվում է իբրև սոցիալական հատկանիշներից զերծ, ընդհանրացված «սերնդի կերպար»: Բուրժուական հասարակության պաշտպանները երիտասարդությանը տարանջատում են սոցիալական իրողությունից, նրան դիտում վերացական հասկացությունների համակարգում, լռության մատնում այնտեղ առկա քաղաքական խմբավորումները: Պատանիների ու աղջիկների սոցիալական բողոքները տիրող կարգերի դեմ բնութագրվում են իբրև ենթագիտակցական ատելություն ավագ սերնդի նկատմամբ:

Մարքսիստական գիտությունը բացասում է «սերունդների կոնֆլիկտ» տեսության բացարձակացման փորձերը, ժխտում պատմական պրոցեսի պարբերացման ելակետը սերունդ հասկացությունը համարելը: Յուրաքանչյուր նոր սերունդ անցյալի ժառանգությունից վերցնում է ինչ պիտանի է, յուրացնում ու զարգացնում է այն, առանց որի անհնար է իր գոյությունն ու առաջընթացը, բացասում հնացածն ու կենսազուրկը: Ամեն մի նոր հասարակական-տնտեսական ֆորմացիա էական սրբագրություն է մտցնում սերունդների հաջորդայնության ընդհանուր համակարգում:

ՍԻՄՈՆՅԱՆ ԱՐԱՄ ՍԻՄՈՆԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր, փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Սոցիալիզմի օրոք սերունդների հաջորդայնության ուղղվածության և իրացման մեխանիզմն էապես տարբերվում է բուրժուական հասարակության սոցիալական կառուցվածքից: Այնտեղ սերունդները դասակարգայնորեն բաժանված են, տարբեր են նրանց փոխհարաբերությունները, սոցիալական նպատակները: Սոցիալիզմը, հաղթահարելով դասակարգային ներհակությունները, սերունդների միջև ստեղծել է այնպիսի հասարակական հարաբերություններ, որոնք օբյեկտիվորեն համընկնում են սոցիալական առաջընթացի հասունացած պահանջներին:

Սոցիալիստական հասարակության սերունդները բնութագրվում են սոցիալական միասնությամբ, որը հիմնվում է սոցիալիստական սեփականության, սոցիալիստական արտադրական հարաբերությունների վրա: Դրանք այն անսասան հիմքն են, որոնք ապահովում են սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլում տարբեր սերունդների գաղափարաքաղաքական, աշխատանքային, բարոյական ու կազմակերպական միասնությունը: Սոցիալիզմը սերունդների առաջընթացի համար ստեղծում է բարենպաստ պայմաններ, ժառանգության նկատմամբ նրանց մոտ ձևավորում նոր վերաբերմունք: Վերջինս կարևոր տարր է նախորդ սերունդների գործունեության արդյունքների գիտակցված օգտագործման ու վերափոխման համար:

Սոցիալիստական հասարակության առանձնահատկություններից է սերունդների սոցիալ-տնտեսական ու քաղաքական հավասարությունը, սոցիալական լավատեսությունը, որը վաղվա օրվա հանդեպ մարդկանց տոգորում է վստահությամբ: Այն բխում է հասարակության արտադրողական ուժերի դինամիկ ու պլանաչափ զարգացման օրենքների իմացությունից՝ ժողովրդի բարեկեցության անշեղ աճի հիման վրա: Սովետական մարդկանց սոցիալական օպտիմիզմի հավաքական լիցքը դրսևորվում է նաև նրանում, որ մեր հասարակությունը մշտապես նպատակամղված է առաջադիմության:

Այսօր հրատապ խնդիր է հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական վերակառուցումը, որին ակտիվորեն մասնակցում է երիտասարդությունը: Արդի երիտասարդ սերունդը ամենակրթված սերունդն է մեր երկրի ողջ պատմության ընթացքում: Պատանիներն ու աղջիկները իրենց նպաստն են բերում երկրի բարգավաճման գործին, պարտքի խոր գիտակցումով պաշտպանում սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը:

Երկար ժամանակ մեզանում չարդարացված բարեհոգի վերաբերմունք կար երիտասարդության աշխարհայացքի ձևավորման, ընդհանրապես դաստիարակության հարցերի նկատմամբ: Դա է պատճառը, որ մինչև այժմ չեն հաղթահարվել սխալ պատկերացումները երիտասարդական պրոբլեմների շուրջ: Ոչ ուշ անցյալում ամենաբարձր ամբիոններից հիմնականում խոսք էր լինում ձեռքբերումների մասին, այն դեպքում, երբ չլուծված հարցերն ամենուր իրենց զգացնել էին տալիս: Խզում առաջացավ խոսքի ու գործի միջև, գաղափարախոսական այն դրույթների միջև, որոնք ուղղված էին պատանիներին ու աղջիկներին: Նրանք, իհարկե, չէին կարող չտեսնել, չզգալ այդ խզումը: Կարևոր է կուսակցության այսօրվա պահանջներից, վերակառուցման դիրքորոշումից քննել, թե երիտասարդության շրջանում ինչպես է պրոպագանդվել մարքսիզմը: Այս առնչությամբ նկատենք, որ մակրոմիջավայրի մակարդակով իրոք մեծ մասամբ ժխտվում էր սոցիալիզմի օրոք հանցագործության պատճառների գոյությունը: Շատ հետազոտողներ մշակում էին այլընտրանքային տեսակետ, որի համաձայն միկրոմիջավայրը կարող է դառնալ հակաօրինական վարքագծի աղբյուր:

Երիտասարդությունը մշտապես որոնումների ու փնտրումների մեջ է: Նա ժխտում է քարացածությունը, սկզբունքների ու հիմնադրույթների անվերապահ ընդունումը: Դրան եթե ավելացնենք նաև այն արգելքների շարանը, որ մատուցվում է հասարակական կյանքի համարյա բոլոր բնագավառներում, ապա պատկերը պարզ կդառնա: Երբ խոսք էր լինում հասարակական շահերի, հանրության հանդեպ պարտքի զգացումի մասին, այն ասվում էր այնքան վերացական ու չանձնավորված, որ տեղ չէր հասնում:

Գովաբանությունը, ապոլոգետիկան այլասերում են: Ակնհայտ է, որ ի վերջո աշխարհայացքը դրսևորվում է վարքագծում: Մեզանում չկան հակամարտ դասակարգեր, հող չկա գաղափարական երկպառակության համար, բայց հրամայական պահանջ է սահմանազատվելու մակաբուծությունից, քաղքենիությունից, ընչաքաղցությունից: Առանց նման սահմանազատումի աշխարհայացքային դաստիարակությունը կարող է վերածվել քարոզի, խրատաբանության: Դաստիարակչական աշխատանքը երիտասարդության շրջանում հարկավոր է քննել հայրերի ու որդիների պրոբլեմի համատեքստում: Հիշենք, որ տակավին հին աշխարհում հայրերը դժգոհ էին որդիներից, շատ հարցերում ժխտում էին նրանց ակնկալիքները, գործելակերպը: Ասենք նաև, որ իբրև կանոն երիտասարդությունն իր արժեքային կողմնորոշումը ձևավորում է հայրերի հետ համեմատության մեջ: Վերջինիս մեխանիզմը գործում է երկակի՝ կամ հետևել հայրերի պատգամներին, կամ չընդունել դրանք: Այդ մեխանիզմի առկայությունը հանգեցնում է սերունդների արժեքային կողմնորոշումների փոխանցման, որոշակի հաջորդայնության:



Դեռևս հին աշխարհի իմաստասերները զգուշացնում էին, որ չի կարելի իրարից տարանջատել միտքը, խոսքը և գործը: Իսկ մենք դաստիարակության համակարգի հիմնական միջոցը երկար տարիներ համարում էինք խոսքը, որը չէր թարմացվում կենդանի կյանքից վերցրած փաստերով ու ընդհանրացումներով:

Աշխարհայացքը սոսկ գաղափարների, հայացքների ու գնահատումների միագումար չէ: Այն իրենից ներկայացնում է գիտակցության այն մասը, որը բնորոշում, ուղղություն է տալիս մարդկանց պրակտիկ գործունեությանը: Այդուհանդերձ, այսօր մեզանում դաստիարակչական աշխատանքը հիմնականում կողմնորոշված է դեպի գիտելիքը: Հենց դրանում է գիտելիքի ու վարքագծի երկփեղկվածության արմատը, որից միակողմանի է դառնում ինքը գիտելիքը: Դեռևս դպրոցական ուսուցումը ելնում է ոչ թե կյանքի պահանջներից, որոնք մարդուն անխուսափելիորեն հանդիպում են դպրոցի պատերից դուրս, այլ ուսումնական առարկաների ինֆորմացիոն գերհագեցվածությունից: Դպրոցի տեսադաշտից դուրս են մնացել բարոյագիտությունը, գեղագիտությունը, սոցիալական հոգեբանությունը, էկոլոգիան: Հետևանքը՝ երիտասարդության մտածողության տեխնոկրատացում, հուզաշխարհի աղքատացում, գեղագիտական անճաշակություն, «մասսայական կուլտուրայի» թափանցում, վարքագծի ապամարդկայնացում: Երիտասարդության մոտ թուլանում է ձգտումը՝ նվաճելու իսկական կուլտուրայի բարձունքները:

Այսօր քսանամյա երիտասարդի ծնողները կենդանի են, հաճախ ապրում են նաև պապերը: Նրա առջև կա երկու սերունդ, որոնք իրենց ձեռքում են պահում հասարակական կյանքի հիմնական լծակները: Դա լուրջ հարց է, չմոռանանք որ մարդը չափահաս է դառնում այն ժամանակ, երբ պատասխանատվություն է զգում իր կյանքի համար: Մանկության արհեստական երկարացումը հղի է վտանգավոր հետևանքներով: Այն երիտասարդները, ովքեր իրենց լրջորեն չեն դրսևորել հասարակական գործունեության մեջ, նրանց մոտ ինչպես հարկն է չի մշակվում հասուն մարդուն հատուկ պատասխանատվության զգացում: Ինչպես հայտնի է մշտական խնամակալության տակ գտնվելու սովորույթը ծնում է նման իրավիճակի պահանջմունք, անվճռականություն, ծագող պրոբլեմների ինքնուրույն լուծման անընդունակություն:

Տեղաշարժերը արտադրության բնույթում, հասարակական հարաբերությունների համակարգում դրսևորվում են տարիքային խմբերի փոխհարաբերություններում՝ կանխորոշելով սոցիալական դերերի յուրօրինակ բաշխումը: Հիշենք, որ հեղափոխության ու քաղաքացիական պատերազմի տարիներին 17—20 տարեկանները զինվորական ստորաբաժանումների հրամանատարներ էին, իսկ ավելի ուշ դարձան արտադրության պետեր: Դա այն ժամանակն էր, երբ հեղափոխականներից առաջին հերթին պահանջվում էր համարձակություն, վճռականություն, անձնազոհության պատրաստակամություն, ամբողջական բնավորություն, հատկանիշներ, որոնք լիովին բնորոշ են երիտասարդությանը:

Այսօր դրությունն այլ է: Ընդհանուր առմամբ արտակարգ բարդացել է տնտեսության ու երկրի կառավարումը: Լուծել դրանք կարելի է միայն գիտության հիման վրա, սոսկ խանդավառությունը բավական չէ: Այժմ առկա են բավականին պատրաստված ու հասուն կադրեր: Այստեղից էլ տնտեսական ու քաղաքական գործունեության ոլորտում ղեկավար աշխատողների միջին տարիքի բարձրացումը: Այժմ դժվար է պատկերացնել քսանամյա գեներալի կամ ձեռնարկության պետի: Նշանակու՞մ է արդյոք, թե երիտասարդության տեղը օժանդակ դերերն են: Հասարակական կյանքի զարգացման արագ տեմպերը ստեղծում են աշխատանքի նոր ոլորտներ, որոնք իրենց բնույթով ավելի հարմար են երիտասարդությանը: Վերջինս գլխավոր դեր է խաղում բոլոր նորակառույցներում, նոր հողերի յուրացման և շատ ուրիշ մարզերում: Երիտասարդությունը առաջատար դեր է գրավում գիտության ու տեխնիկայի արագ զարգացող ճյուղերում: Հայտնի է, որ ճշգրիտ գիտություններում մեծ հայտնագործությունների հեղինակների տարիքը քսանհինգից մինչև երեսունն է: Այժմ ՍՍՀՄ-ում գիտաշխատողների ավելի քան կեսի տարիքը երեսունից չի անցնում:

Մեր զարգացող հասարակությունն օբյեկտիվորեն լայն հնարավորություն է ընձեռում երիտասարդության կյանքի ու գործունեության համար: Նրա առջև բաց են կրթության, ստեղծագործական աշխատանքի, բազմազան հասարակական գործունեության բոլոր ուղիները: Կյանքը հաստատում է, որ այդ հնարավորություններն ակտիվորեն կենսագործվում են: Բազմաթիվ սոցիոլոգիական հետազոտությունները և հարցումները նույնպես վկայում են սովետական երիտասարդության բարձր գաղափարական նպատակասլացության, սեփական ապագայի նկատմամբ վստահության մասին:

Սխալ կլիներ սովետական երիտասարդության կյանքը պատկերացնել ինչ-որ անկոնֆլիկտ իրողություն: Անհատի ձևավորումը, անցումը անհոգ մանկությունից հասուն մարդու պատասխանատու կյանքին, բարդ ու հակասական պրոցես է, որը պատանեկան հասակը դարձնում է առանձնապես լարված: Գտնել ինքն իրեն, նշանակում է գտնել իր տեղը կյանքում, ընտրել գործունեության բազմաթիվ հնարավորություններից ու ձևերից այն, ինչը առավելապես համապատասխանում է տվյալ անձի հակումներին, անհատականությանը: Դա շատ բարդ է: Բարդ է այն առումով, որ արդի հասարակությունն ընտրության ավելի լայն հնարավորություն է ընձեռում, քան, ասենք, ֆեոդալիզմը: Այնտեղ մարդու կենսական ուղին իր հիմնական գծերով նախապես կանխորոշված էր գոյություն ունեցող սոցիալական կառուցվածքով և ավանդույթներով: Մասնագիտական ոլորտում իբրև կանոն, պատանին ժառանգում է ծնողների զբաղմունքը: Նրա սոցիալական ձգտումները կրում էին շրջապատի կնիքը: Նրա համար հարսնացու ընտրում էին ծնողները՝ առանց հաշվի առնելու պատանու հակումներն ու զգացումները: Դուրս գալ այդ սոցիալական փակուղուց կամ նույնիսկ գիտակցել այն, կարող էր անել միայն բացառիկ անհատը:

Այժմ նշանակալիորեն ընդլայնվել են անձի ընտրության հնարավորության սահմանները: Դա վերաբերում է և՛ մասնագիտության, և՛ կնոջ, և՛ ապրելակերպի ընտրությանը: Ընտրության մեծ ազատությունը, սոցիալական նվազ սահմանափակվածությունը նպաստում են ավելի ճկուն սոցիալ-հոգեբանական բնավորության ձևավորմանը, ապահովում անհատական վարքագծերի բազմազանությունը: Այդ առաջընթացի հետադարձ կողմը ինքնորոշման պրոցեսի հոգեբանական դժվարությունն է, երբ հնարավոր շատ ուղիների ընտրությունը պայմանավորվում է բուն անհատով: Սակայն միայն գործնականում է պարզվում, թե տվյալ մասնագիտությունը համապատասխանու՞մ է արդյոք այսինչին, թե՞ ոչ: Եթե անձը երբեք չի փորձել հավուր պատշաճի որակել իր գործնական կարողությունները, որտեղից իմանա իր պոտենցիալ հնարավորությունների մասին: Պարզապես անհնարին է փորձել գործունեության բոլոր ձևերը: Բայց մարդ կարող է ունենալ չբացահայտված տվյալներ: Նույնիսկ շատ տաղանդավոր մարդիկ միանգամից իրենց չեն գտել: Նկատենք, որ ինքնորոշումը միաժամանակ ինքնասահմանափակում է: Մասնագիտական առումով դպրոցականը դեռևս անդեմ է: Նա կարող է լինել և՛ խառատ, և՛ բժիշկ, և՛ տիեզերագնաց: Մասնագիտության ընտրությունը մարդուն որոշակի է դարձնում, նա ստանում է գործունեության որոշակի ոլորտ, որտեղ առարկայորեն իրականացվում են նրա ուժերն ու ընդունակությունները: Դա չի նշանակում գործունեության մյուս տեսակներից հրաժարում, բայց և այնպես մասնագիտացումը ենթադրում է գիտելիքների ու փորձի կենտրոնացում: Ասենք, որ այդ պատասխանատու ու ինքնասահմանափակող ընտրությունը հեշտությամբ չի ստացվում:

Պատանին կյանքի բոլոր ոլորտներում կանգնած է ընտրության առջև, առաջին հերթին իր համար պետք է ընտրի աշխատանքային գործունեության բնագավառ, որոշի իր բարոյական իդեալը, մշակի ապրելակերպի սկզբունքները: Այդ ամենը նա մենակ չի անում, շատ բան պայմանավորվում է նախորդ դաստիարակությամբ ու շրջապատի ազդեցությամբ:

Պատանին, որ կյանք է մտնում, դեռևս իրեն չի գիտակցում հասարակական հարաբերությունների տեր և իրականում այդպիսին չէ: Ինքնուրույն կյանքի համար նախ հարկավոր է սովորել ապրել, աշխատել, ձեռք բերել հոգեհարազատ գործ, այլ կերպ ասած՝ չափահաս դառնալ: Մինչդեռ, սկզբնական շրջանում երիտասարդի սոցիալական ակտիվությունն ընդունում է սոցիալական քննադատության ձև: Կարծես կողքից քննելով հասարակական հարաբերությունները, նա մոռանում է, որ ինքը նույնպես այդ հասարակության անդամն է: Պատանին հակված է ուշադրություն դարձնել իրեն չբավարարող և իր իդեալին չհամապատասխանող երևույթների վրա: Իրականությունից չբավարարված լինելը բնական է, պատմականորեն արդարացված: Այն ստեղծարար, վերափոխիչ գործունեության նախապայման է: Ճշմարիտ է ասված, որ կյանք մտնող սերունդը, եթե լիովին բավարարված զգա իր ժառանգած կենսապայմաններից, կնշանակի նրա համար առաջընթացի հեռանկար չկա:



Սոցիալական պատասխանատվությունը պահանջում է, որ երիտասարդը լավ նախապատրաստվի ինքնուրույն կյանքի, ակտիվ աշխատանքային գործունեության: Մարդկանց, մեքենաների ու կառավարման համակարգի սերունդները դիալեկտիկորեն փոխկապակցված են: Նոր սերունդները՝ երրորդ հազարամյակի առաջին տասնամյակների արարիչները, օգտագործելու են այն տեխնիկան ու տեխնոլոգիան, կառավարման այն համակարգերը, որոնք ստեղծվելու են դեռևս չձևավորված գաղափարների ու գիտելիքների հիման վրա:

Սոցիալ-տնտեսական զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, մարդկային գործոնի առավել լիովին դրսևորումը ենթադրում են հոգևոր ոլորտի արմատական վերափոխում: Այստեղ առաջնային նշանակություն ունի անհատի աշխարհազգացման, հոգեբանության, մտածողության, վարքագծի վերագնահատումը: Խոսքն ըստ էության վերաբերում է սովետական մարդկանց ապագա սերունդների դաստիարակության ծրագրին, որոնք ոչ թե նվաճելու են նոր բարոյական ու մտավոր բարձունքներ, այլ շատ առումներով դառնալու են որակապես այլ, քան այժմ ապրող սերունդները:

Երիտասարդության դերի աճը սովետական հասարակության կյանքում օրինաչափ պրոցես է, որը մեծապես դրսևորվում է արդի փուլում արագացման պայմաններում: Այդ ընթացքն ինքնաբերաբար չէ, այն նվաճում է որակական նոր իրողություն: Երիտասարդ մարդու դիմագծի բնորոշ հատկանիշներից են գաղափարայնությունը, կուսակցության ու սոցիալիզմին նվիրվածությունը, հասարակության առջև պարտքի, պատասխանատվության զգացումը:

Ժամանակն իր շեշտն է դրել սերունդների միջև սահմանների վրա, բացահայտել ոչ միայն նրանց տարբերությունները ճաշակներում, հայացքներում, այլև հոգևոր դիրքորոշումներում ու արժեքային կողմնորոշիչներում: Մեր օրերի բնորոշ առանձնահատկություններից է երիտասարդության մեծամասնության քաղաքական գիտակցության ու հասարակական ակտիվության բարձրացումը: Դրա հետ մեկտեղ նկատելիորեն ավելացել է այն պատանիների ու աղջիկների թիվը, որոնց շրջանում բացակայում է քաղաքական գիտելիքների նկատմամբ հետաքրքրությունը, նիհիլիստական վերաբերմունք է ցուցաբերվում ապագայի հանդեպ, անտարբերություն՝ սոցիալական իրականության երևույթների ու իրադարձությունների գնահատման ժամանակ: Սոցիալիստական ապրելակերպի նորմերից նահանջը բացասաբար է ազդում երիտասարդության բարոյական գիտակցության ձևավորման վրա: Երիտասարդության որոշ շրջաններում, ինչպես տեղեկացնում են մամուլը, ինֆորմացիայի մյուս միջոցները, տեղ են գտել սպառողական տրամադրությունները, խնամառությունը, հարբեցողությունը, նարկոմանիան: Պատանիների ու աղջիկների շրջանում զգալի տոկոս են կազմում նրանք, ովքեր աշխատում են առանց հետաքրքրության՝ չցանկանալով բարձրացնել իրենց որակավորումը, մասնագիտական մակարդակը: Նրանց միակ մտահոգությունը ոչ թե ինչ դառնալն է, ինչպես աշխատելը, այլ սոսկ շատ ստանալը:

Բազմիցս է ասվել ու ասվում, որ շատ տեղերում երիտասարդության համար չկան աշխատանքի, կենցաղի, ուսման, հանգստի ու ժամանցի անհրաժեշտ պայմաններ: Հանրապետության շատ գործարաններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, ուսումնական հաստատություններ ունեն ամեն ինչ նպատակամետ դաստիարակչական աշխատանք կազմակերպելու համար: Սակայն դա չի արվում, որովհետև չկա այն եռանդն ու նվիրումը, որով պետք է օժտված լինեն բոլոր նրանք, ովքեր առնչվում են երիտասարդության հետ, ում համար աշխատանքը ջահելության շրջանում գերագույն կոչում է, կյանքի իմաստ:

Այսօրվա մեր կյանքն իր դրական ու բացասական կողմերով շատ ու շատ պարագաներում օգնում կամ ի չիք է դարձնում նույնիսկ ամենաառաջավոր մանկավարժական հնարքները: Այստեղ մեծ դեր է խաղում սոցիալական արդարության սկզբունքների անխախտ կիրառումը: Երիտասարդության՛ որոշ մասի հնարավորությունը՝ օգտվելով ծնողների ծառայողական դիրքից ստանալ լրացուցիչ նյութական բարիքներ ու սոցիալական արտոնություններ, ծնում է սոցիալական անարդարության ու բողոքի զգացում, հանգեցնում երիտասարդական միջավայրում, ընդհանրապես հասարակության մեջ, բարոյահոգեբանական մթնոլորտի վատացման:

Երիտասարդության կենցաղային պրոբլեմները (բնակարանների, մսուրների ու մանկապարտեզների պակասը, ցածր աշխատավարձը և այլն) ծայրահեղ սրում են երիտասարդ ընտանիքի պրոբլեմը: Երիտասարդության մեծամասնությունը կողմնորոշվում է ունենալ մեկ երեխա, իսկ հինգ տոկոսը՝ երեք, որը և խոչընդոտում է ազգաբնակչության աճին:

Կուսակցության XXVII համագումարն առաջարկեց նորովի մոտեցում ցուցաբերել երիտասարդության ու կոմերիտմիության դերին հասարակական կյանքում: Խնդիր դրվեց հատուկ ուշադրություն դարձնել երիտասարդության սոցիալական պրոբլեմների, հասարակական նշանակալի շահագրգռությունների ու պահանջմունքների վրա: Միաժամանակ կարևորվեց աշխատանքի ու կենցաղի, կրթության ու կուլտուրայի, մասնագիտական ու ծառայողական ազատ ժամանակի խելամիտ օգտագործման հարցը: Նման մոտեցումն ուշագրավ է արդեն նրանով, որ նշանակում է վճռաբար հրաժարվել այն թյուր պատկերացումներից, թե իբր դասակարգերի ու սոցիալական խմբերի կյանքում ցանկալի հավասարության հաստատումը երիտասարդ մարդկանց ու մեծերի տնտեսական իրավիճակում երաշխիք է ստեղծում լուծելու աճող սերնդի մեկնարկի ու կենսապայմանների իրական պրոբլեմները: Կյանքը վկայում է, որ դա այդպես չէ:

Գլխավորը իրերի ռեալ դրությունն է: Սոցիալիզմի հռչակած սոցիալական հավասարության գաղափարը երիտասարդ մարդկանց կողմից գիտակցվում է կոնկրետ գործերի միջոցով հանուն իրենց բարօրության: Սոցիալական պրոբլեմները լուծելիս խոսքի ու գործի միասնությունը ներազդում է երիտասարդության սոցիալական ինքնազգացողության ու տրամադրության, ինչպես և վարքագծի, աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի, հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման վրա:

Այժմ առանձնապես կարևորվում է կոմերիտմիության դերը սովետական հասարակության քաղաքական սիստեմում: ՍՄԿԿ XXVII համագումարի ծրագրային փաստաթղթերում սահմանված են կոմերիտմիության հասարակական քաղաքական խնդիրները, գործունեության շրջագծի ընդլայնումը: Երիտասարդության հետ առնչվող հարցերը քննարկելիս պետական մարմինները պետք է կոմերիտմիության հետ համատեղ կամ նրա աջակցությամբ ընդունեն համապատասխան փաստաթղթեր: ՀամԼԿԵՄ-ին իրավունք է վերապահված անհրաժեշտության դեպքում կանխել կառավարչական որոշումների իրականացումը: Կուսակցության հոգատարության այս նոր վկայության նպատակը երիտասարդության շրջանում կոմերիտմիության աշխատանքը որակական նոր աստիճանի բարձրացնելն է:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը հատուկ շեշտեց, որ երիտասարդությանը պետք է վստահել, զուգակցելով օգնությունը թերությունների ազատ ընկերական քննադատության հետ, թույլ տալով երիտասարդ մարդկանց դրսևորելու աշխատանքի, ուսման, կենցաղի, հանգստի կազմակերպման մեջ ավելի ինքնուրույնություն, պահանջել ավելի պատասխանատվություն իրենց գործերի ու արարքների համար: Չկա ուրիշ ռեալ ուղի նրանց ձևավորման, երիտասարդ մարդու քաղաքացիական դիրքորոշման համար, քան նրա անմիջական ներգրավումը հասարակական գործերի մեջ: Ոչ թե խոսքով, այլ գործով պետք է ճանաչել մեր հասարակության կյանքում արագացման ու ինտենսիվացման պայմաններում երիտասարդության հարաճուն դերի օբյեկտիվ օրինաչափությունը, անհրաժեշտությունը մշակելու ավելի ուժեղ երիտասարդական քաղաքականություն՝ իբրև այդ օրինաչափության գիտակցական իրականացման եղանակ:

Արդիականության նկատմամբ երիտասարդության վերաբերմունքը շատ բանով պայմանավորվում է անցյալի հանդեպ նրա մոտեցումով: Այդ ժամանակահատվածն էական նշանակություն ունի ապագայի հանդեպ հարաբերությունների ձևավորման ընթացքում, քանզի անընդհատ է բոլոր ժամանակների շարժումն ու կապը: Եթե պատանին խեղաթյուրված, սխալ է բնութագրում անցյալից արդիականություն տանող ուղին, նրա համար շատ դժվար է ճիշտ գնահատել այն, ավելի դժվար է դառնում օբյեկտիվորեն պատկերացնել արդի հասարակության ընթացքը: Դա միասնական պրոցես է, որն արտահայտված է մարդու սոցիալական կողմնորոշման ու դաստիարակության համակարգում: Այսօր կուսակցությունը խնդիր է դնում դաստիարակել գիտակցական վերաբերմունք ժողովրդի, պետության տարեգրության նկատմամբ, ճիշտ ըմբռնել պատմական պրոցեսի բարդ ծալքերը, որոնք մեծապես նպաստում են լավ հասկանալու արդիականության միտումները:

Մեր գաղափարական հակառակորդները ամեն կերպ փորձում են խեղաթյուրել պատմությունը, կամայականորեն մեկնաբանել նրա բարդ, դժվար վերծանվող էջերը:



Հակակոմունիզմը միջոցներ չի խնայում սևացնելու առաջին սոցիալիստական պետության անցած ուղին՝ ծուռ հայելու մեջ ներկայացնելով նոր կյանքի հաստատման համար մղվող պայքարը, նրա դեպքերն ու դեմքերը: Արդարությունը պահանջում է սթափ, օբյեկտիվորեն վերլուծել ու բնութագրել մեր երկրի պատմության չգրված էջերը, լրացնել բաց թողած հատվածները՝ չսահմանափակվելով լոկ անհատների գնահատմամբ: Երիտասարդության ճիշտ կողմնորոշման համար հարկավոր է սերունդների հերթափոխի օբյեկտիվ լուսաբանում, այն բոլորի վերամշակում ու վերանայում, ինչը խանգարում է պատմական ճշմարտության վերականգնմանը, անցյալի համայնապատկերի ամբողջական ներկայացմանը:

Պատմության իմաստը մարդկային կյանքի ինքնատիպ ու անկրկնելի ձևերի արարումն է, այլ ոչ նրա սոսկ վերարտադրությունը: Հիրավի, մարդու կյանքը անկրկնելի է, անփոխարինելի, որի էության մեջ դրսևորվում են նրա առավել շեշտված անհատական հատկանիշները: Որքան շատ են ու բազմազան ինքնատիպ անհատականությունները, այնքան ուժեղ է հասարակությունը: Անհատը զարգանում է ու ձևավորվում հասարակական միջավայրում, ստեղծագործական պրոցեսի խոր անհատականացման հիման վրա, որը իսկական կոլեկտիվիզմի կարևորագույն պայման է: Կոլեկտիվի ներքին միասնությունը ծնվում ու ամրապնդվում է այն դեպքում, երբ այդտեղ հաջողությամբ զարգանում ու առաջադիմում են առանձին անհատականություններ: Մարդկային ուժերի բազմապիսության ու ազատ շարժման մեջ են դրսևորվում սոցիալիստական հասարակության կենսահաստատ ուղին, նրա զարգացումն ու առաջընթացը: Ընդհանուր իդեալի համար պայքարում լայն հնարավորություն է ստեղծվում անհատի կատարելագործման ու առաջադիմության համար:

Դա բնավ չի նշանակում, որ սոցիալիստական հասարակության պայմաններում երիտասարդությունը չունի իր պրոբլեմները: Դրանք կան, սակայն երբեք հանդես չեն գալիս անհատի ու սոցիալական միջավայրի անլուծելի հակասությունների ձևով: Ակնհայտ է, որ սոցիալիստական հասարակությունը երիտասարդության նկատմամբ դրսևորում է հոգատարություն, միևնույն ժամանակ երիտասարդ մարդը պետք է հոգա ներկայիս արագ փոփոխվող իրականության մեջ իր անձնական ճակատագրի մասին: Առանց դրա ոչ մի պետական միջամտում գործին չի օգնի: Իսկ դրա համար անհրաժեշտ է հատկապես երիտասարդներին հնարավորություն ընձեռել նախապատրաստվելու ինքնուրույն կյանքի:

Ցավալի իրողություն է, որ անցյալում (այսօր էլ լրիվ չի հաղթահարված) մարդիկ երկար տառապանքից հետո են գիտակցել, թե կյանքի ճիշտ ուղի չեն ընտրել: Ի՞նչ սոցիալական հասունության մասին կարող է խոսք լինել, երբ տասնվեց-տասնութ տարեկան քաղաքացին դեռևս չի գտել իր կոչումը, շարունակում է սովորել լոկ իներցիայով, որովհետև այդպես է «ընդունված»: Նյութական կորուստները, որ հասարակությունը կրում է «անհոգ մանկության» արհեստական ձգումից, հսկայական են: Սակայն դրանք ոչ մի չափով չեն համեմատվում բարոյական վնասի հետ: Տասնութամյա «մանուկը» աստիճանաբար սովորում է իր անբնական վիճակին, խորշելով հանրօգուտ աշխատանքից: Մասնագիտության ընտրությունը հաճախ կանխորոշում է երիտասարդ մարդու ողջ հետագա ճակատագիրը, բնորոշում նրա ապագա ապրելակերպը: Քիչ չեն և նրանք, որոնք իրենց անհաջողակ են զգում՝ զբաղվելով չսիրած, իրենց հակումներին չհամապատասխանող գործով:

Բնութագրելով սոցիալական իրականության առանձնահատկությունները, Կ. Մարքսը նշել է հասարակական ձևերի մարդկային բնույթը: Եթե բնական աշխարհը չի կարելի հասկանալ պատմությունից դուրս, սոցիալական իրականությունն առավել ևս չի կարելի առանձնացնել իր սուբյեկտից, պատմության գործող անձից: Հասարակական հարաբերությունները, հաստատությունները ըստ էության ոչ այլ ինչ են, քան մարդկային գործունեության դրսևորման ու գոյության ձև: Ընդ որում ոչ թե մարդը գոյություն ունի սոցիալական ձևերի ու հաստատությունների համար, այլ, ընդհակառակն, դրանք գոյություն ունեն մարդու համար ու պետք է ծառայեն նրա ստեղծարար նպատակներին:

Կարևոր է իմանալ, թե կյանք մտնող երիտասարդության գիտակցության, վարքագծի, գաղափարաբարոյական դիրքորոշումների վրա ինչպես է ներազդում մեր սոցիալիստական իրականությունը, որտեղ համատեղ ապրում ու գործում են սոցիալիզմի պայմաններում աճած ու դաստիարակված սերունդներ: Նոր սերունդների տնտեսական, սոցիալ-քաղաքական, գաղափարախոսական պայմանները մեծապես նպաստում են նրանց գիտակցության մեջ ներարկելու սոցիալական հավասարության ու

արդարության գաղափարներ: Դրա համար անհրաժեշտ են աշխատանքի նոր պրակ-
տիկ մեթոդներ, քանզի լուսավորչական եղանակներով կարելի է իրականացնել կո-
մունիստական գաղափարների լոկ մակերեսային, հայեցողական ուսուցում: Ակտիվ
համոզված մարտիկներ կարող են դաստիարակվել միայն սոցիալական պրակտիկա-
յում, հասարակության կյանքում սոցիալիստական ու կոմունիստական սկզբունքների
հաստատմամբ ու զարգացմամբ:

Սերունդների հաջորդայնության ապահովման մեխանիզմը կոչված է մարդկանց
տալ հնարավորություն գործնականում համոզվելու սոցիալիստական իդեալների ու
արժեքների ուժի ու ճշմարտացիության մեջ: Հարկավոր է երիտասարդներին նույնպես
ներառել տարբեր հասարակական ոլորտներում, սկսած սկզբնական բջիջներից, ապա-
հովել նրանց մասնակցությունը սոցիալական վերափոխումներին, հասարակական ու
պետական կառավարմանը: Հասարակությունն անհրաժեշտաբար պետք է իմանա հե-
տագա հաջող զարգացման համար ինչ է կատարվում կյանք մտնող սերնդի գիտակ-
ցության ու վարքագծի մեջ, նպատակներում, պահանջմունքներում ու հետաքրք-
րություններում: Հարկ է հանգամանորեն քննել, թե ինչն է էապես գործում սո-
ցիալիստական սերունդների ձևավորման վրա, ինչը դժվարացնում:

Երիտասարդ մարդը անցյալի և ներկայի մասին կարիք ունի օբյեկտիվ, ճշմար-
տացի ինֆորմացիայի: Կարիք ունի անկեղծ, փոխադարձ հարգալից երկխոսության
ավագ սերնդի ներկայացուցիչների, առաջին հերթին կոմունիստների, կուսակցության
ու կոմերիտմիության վետերանների հետ: Ցավոք, երկար տարիներ այդ երկխոսու-
թյունը չի կայացել: Նման պայմաններում երիտասարդի ձևավորվող աշխարհայացքը
հաստատուն չէ և կարող է երերալ իրական կյանքի հետ առաջին իսկ բախումից:

Մեր գիտնականները, գրողները, հրապարակախոսները մեծ պարտք ունեն երի-
տասարդության առջև: Հարկավոր է օբյեկտիվորեն, կշռադատված լուսաբանել պատ-
մական կամ արդիականության այս կամ այն իրադարձությունը, միշտ նկատի առնե-
լով, որ երիտասարդությունը շատ ուշադիր ու զգայուն է ամեն նոր խոսքի, ինֆորմա-
ցիայի նկատմամբ:

Սերունդների հաջորդայնությունը ինքնաբերաբար չի կազմավորվում, այն չի
կարող հենվել սոսկ ուսուցողական հնարքների վրա: Այստեղ շատ կարևոր է իմանալ,
որ ամեն մի երիտասարդ մարդ, որպեսզի սովորի մասնակցել գործունեության որևէ
կազմակերպված ձևում, պետք է ունենա ինքնակրթության, ինքնադաստիարակության
ներքին ծրագիր, առաջադիմելու կամք: Անհատի մոտ պետք է մշակվի պահանջմունք՝
յուրացնելու կուլտուրայի նվաճումները, սոցիալիստական արժեքները: Կարողանա
խստապահանջ լինել իր իսկ նկատմամբ՝ միշտ իր առջև դնելով որոշակի դրական
նպատակներ:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում սևեռուն ուշադրություն դարձվեց
այս խնդրին և միանգամայն տեղին նշվեց. «Մենք պետք է գործնականում լիակա-
տար քաղաքական վստահություն ցուցաբերենք երիտասարդության նկատմամբ,
փոխենք երիտասարդության հետ շփման բուն եղանակը. «որդիների» նկատմամբ
«հայրերի» շփում-խրատատվությունը պետք է իր տեղը զիջի շփում-երկխոսությանը:
Եթե մենք ուզում ենք լիովին վերականգնել երիտասարդության վստահությունը,
պետք է սովորենք խոսել նրա հետ, խոսել ինչպես հավասարը հավասարի հետ,
բացեիբաց, ազնվորեն և ընդսմին հիշել, որ միայն ճշմարտությունը կօգնի մեզ: Ինչ-
քան ճշմարտություն՝ այնքան էլ հավատ»:

---

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՆՈՐ ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆ

**Վ. ՄՈՏԻԼԵՎ**

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1988 Թ. ՓԵՏՐՎԱՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ, որը քննարկեց սովետական դպրոցի վերակառուցման հարցը, ընդունեց բարձրագույն կրթությամբ մասնագետների պատրաստման որակի բարձրացմանն ուղղված կարևոր որոշումներ: Պլենումի որոշումներն առանձնակի նշանակություն ունեն բարձրագույն տնտեսագիտական կրթության զարգացման համար: Պլենումում նշվեց. «Այսօր մենք սուր կերպով զգում ենք տնտեսագիտական թեքումով մասնագետների պակասը՝ առանձնապես կառավարման բնագավառում: Կադրերի տնտեսագիտական պատրաստությունն ընդհանրապես բարելավում է պահանջում»:

Տնտեսագիտական բուհերի համակարգում, ինժեներների տնտեսագիտական պատրաստության ընթացքում և քաղաքական ու տնտեսագիտական կրթության ցանցում լուծվում է մի կարևոր խնդիր՝ տնտեսագիտական մտածողության դաստիարակումը, մտածողություն, որին պետք է տիրապետեն հատկապես ղեկավարները տնտեսական շինարարության արդի փուլում:

Երկրում սկսված արմատական տնտեսական ռեֆորմը ենթադրում է գիտակցության վերակառուցում և նոր տիպի տնտեսագիտական մտածողության դաստիարակում: «Տնտեսական մեխանիզմի ամեն մի վերակառուցում, ինչպես հայտնի է, սկսվում է գիտակցության վերակառուցումից, մտածողության ու պրակտիկայի ստեղծված ստերեոտիպներից հրաժարվելուց, նոր խնդիրների հստակ ըմբռնումից: Իսկ դա առաջին հերթին վերաբերում է մեր տնտեսական կադրերի, կառավարման կենտրոնական օղակների աշխատողների գործունեությանը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 53):

Ո՞րն է տնտեսագիտական նոր մտածողության էությունը, որին պետք է տիրապետեն ղեկավար կադրերը: Ինչո՞վ է այն տարբերվում տնտեսագիտական մտածողության հին ոճից, որն իշխում էր երկրի զարգացման նախընթաց փուլում: Բանն այն է, որ 70-ական թվականների վերջի և 80-ականների սկզբի լճացման տարիներին տնտեսագիտության և կադրերի հասարակական գիտակցության մեջ շեշտակիորեն ուժեղացել էին դոգմատիկ միտումները, չէին լուծվում, շրջանցվում էին հասարակական կյանքի հասունացած պրոբլեմները: Մի շարք տեսական պրոբլեմների լուսաբանման գործում գերիշխում էր սխոլաստիկ պատկերացումը:

Տնտեսագիտական նոր մտածողությունը դրսևորվում է հասունացած տնտեսական պրոբլեմները մարքս-լենինյան դիալեկտիկական մեթոդի կիրառման հիման վրա համարձակ նորարարական լուծման միջոցով: Նոր մտածողությունը, որին պետք է ամենքը տիրապետեն,— ասել է Մ. Ս. Գորբաչովը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում,— դա դիալեկտիկական մտածողություն է, իսկ դիալեկտիկան, ինչպես գրել է Կ. Մարքսը, ոչ մի բանի առաջ չի խոնարհվում, և իր բուն էությամբ քննադատական է և հեղափոխական»: Դիալեկտիկայի ստեղծագործաբար կիրառումը ենթադրում է մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հակասությունների բացահայտում և այդ հակասությունների վերծում զարգացման ու առաջընթացի ակունքի:

60-ական թվականների սկզբում հասարակական գիտությունների դասավանդման

---

ՄՈՏԻԼԵՎ ՎԵՆԻԱՄԻՆ ՎՈԼՖՈՎԻՉ— Մոսկվայի ֆինանսական ինստիտուտի պրոֆեսոր, տնտեսագիտության դոկտոր

ձևերն աչքի էին ընկնում կենդանի կյանքից խույս տալու անպտուղ սխոլաստիկ տեսականացումների միտումով: Ճիշտ է, այդ ժամանակաշրջանում էլ առավել հեռատես տնտեսագետ գիտնականները շարունակում էին ուսումնասիրել տնտեսական մեխանիզմը, նրա կատարելագործման ուղիները, պլանային մարմիններին տալիս էին սոցիալիստական արտադրության ինտենսիվացմանն ուղղված հանձնարարականներ: Բայց պետության տնտեսական քաղաքականության մեջ այդ գիծը տարվում էր առանց պատշաճ հաստատակամության և հետևողականության: Բազմաթիվ օգտակար հանձնարարականներ ու որոշումներ թղթի վրա էին մնում, չէին կենսագործվում: Էկոնոմիկան շարունակում էր զարգանալ հիմնականում էքստենսիվ եղանակով, տնտեսության կառավարումը իրականացվում էր առավելապես վարչական մեթոդներով: Այսպիսով, մեծանում էր խզումը տեսության ու պրակտիկայի միջև, խոսքն ու գործը իրար չէին բռնում:

ՍՄԿԿ Կենտկոմը 1985 թ. ապրիլյան պլենումից հետո հսկայական ջանքեր գործադրեց, որպեսզի վերջ տրվի լճացման երևույթներին, էկոնոմիկայում հաղթահարվի արգելակման մեխանիզմը, որը երկիրը հասցրել էր նախաճգնաժամային իրադրության: Այսպիսի պայմաններում լավագույն քաղաքականությունը ժողովրդի առջև էկոնոմիկայի վիճակի ճշմարտացի նկարագրի օբյեկտիվ բացահայտումն է: Երբ աշխատավորներն իմանում են պլանների իրականացման գործում թույլ տրված ձախողումների պատճառները, նրանք գիտակցաբար ամեն ինչ անում են, որպեսզի հաղթահարեն ծագած դժվարությունները: Տնտեսագիտական նոր մտածողությունը կողմնորոշվում է դեպի զարգացման դժվարությունների և հակասությունների աներկյուղ բացահայտում, քանի որ դա լճացման երևույթների հաղթահարման միակ ուղին է: Դրանք անտեսելը կամ թաքցնելը խորապես վտանգավոր կլիներ:

Ժամանակակից տնտեսագիտական մտածողությունը հիմնվում է արդյունավետության և որակի կատեգորիաների վրա, նշել է ականավոր սովետական գիտնական Լ. Ի. Աբալկինը (տե՛ս Լ. Ի. Աբալկին «Տնտեսագիտական մտածողության նոր տիպը», Մ., 1987, էջ 29): Դա մտածողություն է հավասարակշռվածության և համամասնության կատեգորիաներով: Որպեսզի մարդիկ նորովի մտածեն, այնուհետև գրել է նա,— պետք է նրանց դնել նոր պայմանների մեջ: Տնտեսագիտական նոր տիպի մտածողություն ձևավորելու համար վիթխարի դեր է խաղում տնտեսական մեխանիզմի վերակառուցումը (նույն տեղը, էջ 45): Սակայն տնտեսական ռեֆորմն էլ չի կարող հաջողության հասնել առանց ղեկավարության տնտեսագիտական մտածողության ու ոճի վերակառուցման: 1964—1965 թթ. տնտեսական ռեֆորմի իրականացման գործում ի հայտ եկած անհաջողությունների վերլուծությունը հանգեցնում է այն հետևության, որ ղեկավար կադրերն այն ժամանակ չէին վերակառուցել աշխատանքի ոճը, չէին հրաժարվել տնտեսավարման էքստենսիվ մեթոդներից, չէին տիրապետել նոր տիպի տնտեսագիտական մտածողությանը: Մինիստրությունները պետք է իրենց աշխատանքը վերակառուցեն՝ հրաժարվելով կառավարման վարչական մեթոդներից և կողմնորոշվեն դեպի կառավարման տնտեսագիտական մեթոդները: Նրանք պետք է հրաժարվեն այնպիսի ֆունկցիաներից, որոնք առավելապես ներհատուկ են ձեռնարկություններին, և իրենց ջանքերը կենտրոնացնեն զարգացման հեռանկարային ծրագրերի մշակման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, ճյուղի հավասարակշռված և համամասնական զարգացման վրա: Ազատվելով ձեռնարկության նկատմամբ մանր խնամակալության դերից, մինիստրության աշխատողները հնարավորություն են ստանում զբաղվելու ճյուղի զարգացման հեռանկարի ուսումնասիրմամբ, իրենց վստահված ձեռնարկությունների և հաստատությունների գիտական պոտենցիալի օգտագործմամբ, աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմամբ:

Այսպիսով, պետք է միաժամանակ լուծվի երկակի մի խնդիր՝ էկոնոմիկայի կառավարման և ղեկավար կադրերի տնտեսագիտական մտածողության ոճի ու մեթոդների (հետևաբար՝ նաև որոշումների) կատարելագործումը:

Այսպիսի պայմաններում մեծ է մարքս-լենինյան քաղաքատնտեսության դերը: Լճացման տարիներին քաղաքատնտեսությունը վերածվել էր մի այնպիսի գիտության, որը կոչված էր գովերգելու ձեռք բերվածը և հետին թվով հիմնավորելու ընդունվող որոշումների անհրաժեշտությունը: Քաղաքատնտեսությունը հնազանդորեն հետևում էր տնտեսական քաղաքականության զիգզագներին՝ «գիտական փաստարկների» զինանոցը վերակառուցելով ամեն անգամ, երբ փոխվում էր քաղաքական ուղղությունը: Այդ պատճառով տնտեսական կադրերը քաղաքատնտեսությունը համարում էին դեկ-



լարատիվ գիտություն, որն ի վիճակի չէ կոնկրետորեն վերլուծելու սոցիալիստական արտադրությունը, ռեալ օգնություն ցույց տալու պրակտիկային: Դա տնտեսավարների և առանձնապես ինժեներատեխնիկական անձնակազմի շրջանում տեխնոկրատական հայացքների ու տնտեսագիտական տեսության նկատմամբ նիհիլիզմի առաջացմանը սնուցիչ միջավայր էր ծառայում:

Ի դեպ, քաղաքատնտեսությունում և այդ բնագավառի այլ գիտություններում հասունացել է նոր պրոբլեմներն ստեղծագործաբար լուծելու անհրաժեշտությունը ամենից առաջ արմատական տնտեսական ռեֆորմի կիրառման առնչությամբ: Տեղին է հիշեցնել, որ 60-ական թվականների կեսին քաղաքատնտեսությունում վեճ էր տեղի ունենում, թե որոնք են սոցիալիզմի օրոք ապրանքադրամային հարաբերությունների առաջացման պատճառները: Բայց էկոնոմիկայում դրանց դերն ակնհայտորեն թերագնահատվում էր: Պետական ձեռնարկությունները սոցիալիստական ապրանքարտադրողներ չէին համարվում, տնտհաշվարկի դերը նսեմացվում էր, նրա սկզբունքների հետևողականորեն կենսագործումը հետաձգվում էր: Այն տնտեսագետները, ովքեր առաջարկում էին անցնել արտադրության միջոցների մեծածախ առևտրի, աջակցության չարժանացան:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում, որն ընդունեց կուսակցության XXVII համագումարը, ստեղծագործաբար լուսաբանվել է ապրանքադրամական հարաբերությունների լիակատար օգտագործման պրոբլեմը: Արտադրության արդյունավետության բարձրացման, բաշխման, փոխանակության և սպառման նպատակով կարևոր է ավելի լրիվ օգտագործել ապրանքադրամական հարաբերությունները՝ սոցիալիզմի օրոք դրանց բնորոշ նոր բովանդակությանը համապատասխան: Անհրաժեշտ է ուժեղացնել խնայողության ռեժիմը, աշխատանքի որակի և քանակի վերահսկողությունը ռուբլիով, օգտագործել տնտեսական լծակների և խթանների ամբողջ զինանոցը, ամրապնդել պետական բյուջեն, բարձրացնել ռուբլու գնողունակությունը (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 200): Այսպիսով, վերջ տրվեց ապրանքային արտադրությունը սոցիալիզմին հատուկ լինելու կամ չլինելու վերաբերյալ սխոլաստիկ վեճերին և միաժամանակ վերջնականապես հաղթահարել այն տնտեսագետների դիմադրությունը, ովքեր հանդես էին գալիս ապրանքադրամական հարաբերությունների զարգացման դեմ: Միայն ապրանքադրամական հարաբերությունների հետագա ծավալման հիման վրա հնարավոր կլինի հաղթահարել որակյալ ապրանքների դեֆիցիտը, հավասարակշռել պահանջարկը և առաջարկը, մեծածախ և մանրածախ գների ռեֆորմ կատարել: Մասնավորապես նկատի է առնվում պահանջարկը և առաջարկը լիովին արտացոլող ճկուն գների համակարգի սահմանումը, գների մերձեցումն ապրանքների արժեքին, ինչպես նաև գներում որակը և սպառողական հատկանիշները հաշվի առնելը: Հետագայում՝ որակյալ ապրանքներով շուկայի հագենալուն զուգընթաց հնարավորություն կստեղծվի իջեցնելու գները, որոնք կարտացոլեն արտադրողականության աճի համեմատ ինքնարժեքի իջեցումը (ապրանքների դեֆիցիտի առկայության դեպքում գները չի կարելի իջեցնել, քանի որ դա կհանգեցներ սպեկուլյացիայի և այլ չարաշահումների):

Տնտեսական ռեֆորմի ընթացքում մինիստրությունները և գերատեսչությունները պետք է հաստատեն արտադրության միջոցների մեծածախ առևտուր: Արդեն այժմ, սոցիալիստական ձեռնարկության (միավորման) մասին օրենքին համապատասխան, վերջիններիս իրավունք է վերապահվում վաճառելու, փոխանակելու և վարձակալության տալու շենքերը, կառուցվածքները, սարքավորումները: Ձեռնարկություններին տրվում է ամբողջ գույքին, հիմնական ֆոնդերին և շրջանառու միջոցներին տիրելու, այն օգտագործելու և տնօրինելու իրավունքը:

Այսպիսով, նորովի է լուծվում սոցիալիստական սեփականության հարցը: Նախկինում ֆոնդերին տիրելու և դրանք տնօրինելու իրավունքը վերապահված էր մինիստրությանը: Հիմա վերջ է տրված այն վեճին, թե այդ իրավունքը կարելի՞ է արդյոք վերապահել ձեռնարկություններին: Հիշյալ իրավական հարցի լուծումը հօգուտ ձեռնարկության՝ կնպաստի աշխատանքային կոլեկտիվում տնտեսատիրոջ զգացումի դաստիարակմանը: Հետևաբար, հաջողությամբ է պսակվել տնտեսագիտական տեսության շատ հարցերից մեկի լուծումը: ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում նշվեց. «Հատկապես պետք է ասել սոցիալիստական սեփականության մասին: Տեղի էր ունեցել այն բանի վերահսկողության լուրջ թուլացում, թե ով և ինչպես է տնօրինում սոցիալիստական սեփականությունը: Այն հաճախ ներսից կրծոտվում էր գերատեսչականությամբ և տեղայնությամբ, դառնում էր ասես «ոչ մեկինը»՝ ձրի, իրական

տեր չունեցող, շատ դեպքերում սկսել էր օգտագործվել անաշխատ եկամուտների կորզման համար»: «Անանուն» սեփականության մասին պատկերացումները հանգեցնում էին հափշտակումների և տնտեսական հանցագործությունների «ստվերային էկոնոմիկայի» անպատիժ գոյության վերաբերյալ պատրանքներ հարուցում:

Ձեռնարկությունների, մինիստրությունների, բանկերի և վարկային համակարգի մասին ընդունված նոր օրենքները իրավաբանորեն ամրապնդում են տնտեսական ղեկավարման նոր ձևերի փորձի հաջողությունները, նպաստում ապրանքադրամական հարաբերությունների զարգացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը, աշխատանքային կոլեկտիվներում սոցիալիստական սեփականության նկատմամբ տնտեսատիրոջ վերաբերմունքի դաստիարակմանը: Լենինը մեզ կտակել է՝ աչքի լույսի պես պահպանել այդ սեփականությունը, հետամուտ լինել հումքի ու նյութերի, էլեկտրաէներգիայի տնտեսմանը:

Յուրաքանչյուր աշխատավորի անհատական շահերը ինչպե՞ս կապակցել կոլեկտիվի և պետության շահերին: Սա տնտեսական շինարարության դժվարին պրոբլեմն է, որը դարձյալ առնչվում է սոցիալիստական սեփականության հարցերի լուծմանը: Վ. Ի. Լենինը սովորեցնում է. «Ո՛չ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխությամբ ծնված խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա, աշխատեցեք կառուցել նախ ամուր կամուրջներ, որոնք մանրգյուղացիական երկրում պետական կապիտալիզմի վրայով տանում են դեպի սոցիալիզմ. այլ կերպ դուք չեք մոտենա կոմունիզմին, այլ կերպ դուք տասնյակ ու տասնյակ միլիոնավոր մարդկանց չեք մոտեցնի կոմունիզմին» (ԵԼԺ, հ. 44, էջ 181—182):

Ձեռնարկությունների (ներգործարանային, բրիգադային, արտադրամասային և այլ ստորաբաժանումների) լրիվ տնտհաշվարկի անցնելն աշխատավորների անձնական շահերը միակցում, միաձուլում է կոլեկտիվի շահերին: Ծախույթի բաշխման նոր նորմատիվները հնարավորություն են տալիս ընդհանուր առմամբ համաձայնեցնելու ձեռնարկությունների և պետության շահերը, քանի որ տնտեսավարման արգասավոր մեթոդների շնորհիվ ստացված շահույթների մեծ մասը մնում է աշխատավորական կոլեկտիվներին: Ծախերը հմտորեն օգտագործելու միջոցով՝ տեխնիկական առաջադիմությանը և բարեկեցության աճին հետամուտ լինելը կարևոր լծակ է տնտեսական ղեկավարների, այդ թվում մինիստրությունների և գերատեսչությունների համար: Եվ ոչ մի բան այնքան չի վնասում թե անհատի, թե կոլեկտիվի և թե պետության շահերին, որքան աշխատավարձի համահարթումը, երբ աշխատողը եկամուտ է ստանում ոչ թե ըստ աշխատանքի, այլ այն բանի, որ ինքը ներկա է աշխատանքին (թեև նա ժամանակի զգալի մասը կարող է իզուր կորցնել, սակայն նրա համար միևնույն է՝ «դուրս կգրվի» միջին աշխատավարձը): Ի դեպ, չպետք է վախենալ անբանին, ծույլին կամ խոտանարարին աշխատավարձի ցածրացումով, տուգանքներով կամ վարչական տույժերով պատժելուց, որպեսզի նա թանկարժեք աշխատաժամանակն անտեղի չվատնի հաճախակի «ծխելաժամերի» կամ արտադրամասում աննպատակ թրևգալու վրա:

Սոցիալիզմի օրոք սոցիալական արդարության պրոբլեմը պետք է կապակցել նյութական բարիքների ոչ թե համահարթված բաշխմանը, այլ աշխատանքի քանակի ու որակի խստիվ հաշվառմանը, ըստ որում չպետք է վախենալ աշխատանքային մեծ ավանդի համար մեծ աշխատավարձ վճարելուց: Ըստ աշխատանքի բաշխման այս սկզբունքը լավ արդյունք է տալիս նաև աշխատանքային կոլեկտիվների նկատմամբ կիրառելիս: Սոցիալիստական մրցությունում լավագույն ցուցանիշներ ձեռք բերած ձեռնարկությունները պետք է ավելի լավ խրախուսվեն նյութապես և բարոյապես: Եվ չպետք է բոլոր ձեռնարկությունների աշխատանքը միատեսակ գնահատել, երբ մինիստրությունը վերցնում է լավ աշխատող կոլեկտիվների շահույթների զգալի մասը, որպեսզի այն հատկացնի վնասաբեր ձեռնարկությանը: ՍՍՀՄ նոր օրենսդրությունը բանկավարկային համակարգին հանձնարարում է մինիստրությունների, կառավարության առջև հարց հարուցել այն ձեռնարկությունները լուծարկելու մասին, որոնք շարունակաբար աշխատում են վնասով և մոտ ապագայում շահութաբեր աշխատանքի հասնելու հեռանկարներ չունեն: Բանկերի վրա դրվում են նաև աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ ռուբլու միջոցով վերահսկողության ֆունկցիան: Բանկերը՝ որպես հասարակական հաշվետվական ապարատ, կոչված են լրիվ տնտհաշվարկը լայնորեն արմատավորելու ժողովրդական տնտեսության ճյուղերում, հետամուտ լինելու, որ ձեռնարկություններն աշխատեն առանց վնասի, լինեն շահութաբեր: Դրա համար բանկերը պետք է տնտհաշվարկի սկզբունքները լիովին օգտագործեն հենց իրենց աշխատանքում: Ցավոք, բանկերը որոշ տարիներ պետության բյուջեից հավելավճար էին ստանում: Իրենց հերթին նրանք զիջում էին ձեռնարկությունների պարտքերը՝ փակելով նրանց վնասները: ՍՄԿԿ XXVII համագումարում ընդգծվեց, որ բանկերը պետք է բարձրացնեն վարկերի դերը: Վարկային համակարգը կոչված է նպաստելու ձեռնարկությունների ինքնածախսածածկմանը և ինքնաֆինանսավորմանը: Նրանք չպետք է զբաղվեն վատ աշխատող ձեռնարկությունների անհատույց ֆինանսավորմամբ:

Ուժեղացվում է վարկի դերը կապիտալ շինարարությունում, որտեղ վարկը տրվում է շինարարության նորմատիվային ժամանակահատվածով (օրինակ, 5 տարով) և որը պետք է վերադարձնել ձեռնարկության գործարկումից հետո, կապիտալ ներդրումների հատուցման համեմատ:

Արդյունավետ որոշումներն ընդունվում են տնտեսագիտական նոր տիպի մտածողության անցնելու հիման վրա: Այդպիսի մտածողությունը հեղափոխական տեսության համարձակությունը զուգակցում է տնտեսական որոշումների նորարարական ոգուն և գործունեությանը: Այդ առնչությամբ տեղին է հիշեցնել ձեռներեցության և գործարարության մասին, որոնց սովորելու կոչ էր անում Վ. Ի. Լենինը սովետական իշխանության առաջին իսկ տարիներից: Նա գտնում էր, որ 20-ական թվականների կոմունիստները պետք է սովորեն առևտուր անելու արվեստը և դա զուտ տվյալ պահի, միայն Նէպի ժամանակաշրջանի կոչ չէր: Փաստերը ցույց են տալիս, որ մենք մինչև հիմա էլ լրիվ ծավալով չենք լուծել այդ խնդիրը, օրինակ, չենք կարողանում կարգավորել ռեկլամը, իսկ երբեմն էլ հարգալիր սպասարկել գնորդին, ռացիոնալ կազմակերպել առևտրական ցանցը:

Հիմա շատ են գրում ձեռներեցության, մրցակցության և երբեմն էլ՝ շուկայում պետական ու կոոպերատիվ ձեռնարկությունների նույնիսկ կոնկուրենցիայի մասին: Մրցակցությունը հնարավոր է, եթե ձեռնարկությունն իր ապրանքները վաճառի իջեցված գներով (ոչ թե ցածր որակի պատճառով գները իջեցնելով, այլ աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ ապրանքների ինքնարժեքը ցածրացնելով): Մինիստրությունները չպետք է խանգարեն այնպիսի գների սահմանմանը, որոնք վնաս են բերում վատ աշխատող ձեռնարկություններին, և որոնց արտադրության ծախսերը բարձր են:

Եվ այսպես, սոցիալիստական ձեռներեցության շնորհիվ պետք է պլանաչափորեն և գիտակցաբար օգտագործվեն արժեքի և արժեքային այլ լծակների՝ գների, շահույթների, վարկերի, տոկոսի մասին օրենքների մեխանիզմը: Գների ռեֆորմի և տընտեսական ռեֆորմի այլ ուղղությունների նախապատրաստումը սուր կերպով առաջադրում է ղեկավարների տնտեսական մտածողության տիպը և ոճը վերակառուցելու հարցը: Այդ խնդրի լուծման գործում մեծ դեր է պատկանում տնտեսագիտական կրթության համակարգին, որի վերակառուցումը կոչված է մասնագետների մեջ դաստիարակելու և զարգացնելու նոր տիպի տնտեսագիտական մտածողություն: Սա կադրերի պատրաստության որակը բարձրացնելու գլխավոր խնդիրներից է: ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումում նշվեց, որ դպրոցական կրթության երկրում սկսված ռեֆորմը, նրա տեմպերը և խորությունը չեն կարող մեզ բավարարել: Խոսքը վերաբերում է ուսուցման բովանդակությանը, ձևերին ու մեթոդներին, դասավանդման գիտական մակարդակին, պրակտիկայի հետ բարձրագույն դպրոցի առնչությանը և այլ հարցերի:

Մասնագետների պատրաստության գործը ամենից առաջ պայմանավորված է դասախոսությունների գիտական մակարդակով: Դասավանդման մեջ նորը պրոբլեմային դասախոսություններն են, որոնք արտացոլում են հայրենական և համաշխարհային գիտության վերջին նվաճումները: Դասախոսները գիտական աշխատանքի արդյունքները ներդնում են ուսումնական պրոցեսի մեջ: Ստեղծագործաբար մատուցվող պրոբլեմային դասախոսությունների ընթացքում ունկնդիրներն անում են «ուսումնական հայտնագործություններ», այսինքն վերստին բացահայտում են ստույգ եզրակացությունների համար անհրաժեշտ հիմնավորումները: Այդպիսի դասախոսությունների ժամանակ հաճախ հաջողվում է գտնել այլընտրանքային լուծումներ, որոնք ունկնդիրներին օգնում են ինքնուրույնաբար ձևակերպելու ճիշտ հետևություններ: Ի տարբերություն սովորական նկարագրական դասախոսությունների, պրոբլեմայիններն ավելի

նոր գիտելիքներին տիրապետելու ձգտումով: Ուսանողի մասին ընդունված է ասել, որ «դա ոչ թե անոթ է, որը պետք է լցարկել, այլ ջահ է, որը կարելի է վառել»: Սակայն գիտելիքների ձեռքբերման տենչով համակվում են նրանք, ովքեր լավ են նախապատրաստվել դպրոցում: Իսկ նրանք, ում հանրակրթական պատրաստությունը, գրագիտությունն անբավարար են, ցածր է ընդհանուր կուլտուրան, հազիվ թե կարողանան այդպիսի տենչով տոգորվել:

Բարձրագույն դպրոցի վերակառուցման մեջ մեծ է հասարակագիտական ամբիոնների դերը, որոնք կոչված են սովորողներին զինել մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ողջ հարստությամբ: Քաղաքատնտեսությունը մասնագետների մեջ դաստիարակում է տնտեսագիտորեն մտածելու հմտություն: Տիրապետելով քաղտնտեսության կատեգորիաների համակարգին, ուսանողները հասնում են տրամաբանական մտածողության նոր աստիճանի, տիրապետում դիալեկտիկական տրամաբանության սկզբունքներին: Տնտեսագիտական տեսությունը գիտական հետազոտության ներքին լույսով ասես լուսարկում է տնտեսական պրակտիկայի խճճված հարցերը (թեկուզ հենց գնագոյացման բարդ հարցերը): Մարքսիստական գիտության մեջ ճշմարտության չափանիշ է համարվում պրակտիկան: Տեսության և պրակտիկայի համապատասխանությունն այս կամ այն վերացարկված կառուցվածքների ճշմարտացիության ստուգման միակ միջոցն է: Տնտեսամաթեմատիկական տիպի շատ մոդելներ վատ են գործում այն պատճառով, որ կամ հենվում են կեղծ պատկերացումների վրա, կամ էլ չեն համապատասխանում իրականության ռեալ միտումներին: Եվ ընդհակառակը, որքան ստույգ է լինում մոդելի կոնցեպտուալ տեսակը, այնքան արժեքավոր կլինեն մոդելից ստացված հետևությունները, դրանք այնքան ավելի լրիվ կհամապատասխանեն իրականությանը, պրակտիկային: Արդի փուլում ուսանողներին սովորեցնում են տնտեսական պրոցեսները մոդելավորել ԷՀՄ-ի օգնությամբ: Բուհերի զինումը բավարար քանակությամբ էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներով հնարավորություն կընձեռի ապահովելու ուսանողների լիակատար կոմպյուտերային գրագիտությունը:

Գործի հաջողությունը մեծապես պայմանավորված է կադրերի տնտեսագիտական մտածողության մակարդակով, որը տնտեսական մեխանիզմի կատարելագործման գրավականն է:

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ, ՏԵԽՆԻԿԱՅԻ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՓՈԽԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Վ. ՄԱՆՈՒԿՅԱՆ**

ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ զարգացման արդի փուլը բնութագրվում է սոցիալ-տնտեսական խոշոր խնդիրների լուծման գործում գիտատեխնիկական առաջադիմության դերի ուժեղացմամբ: Դա պայմանավորված է ԳՏԱ-ի արագացման և մասշտաբների ընդլայնման պրոցեսով: ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց արագացնել գիտատեխնիկական առաջադիմության տեմպերը, վերջինս համարելով արտադրության արդյունավետության բարձրացման և ինտենսիվացման վճռական պայման: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում ասված է. «... ըստ ամենայնի արագացնել գիտատեխնիկական առաջադիմությունը: Վճռականորեն բարձրացնել գիտության և տեխնիկայի դերը արտադրողական ուժերի որակական վերակառուցման մեջ՝ էկոնոմիկան համակողմանի ինտենսիվացման ռելսերի վրա փոխադրելու, հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում»:

Գիտատեխնիկական առաջադիմության հաջող իրականացման համար հիմք են ծառայում գիտության, տեխնիկայի և արտադրության փոխադարձ կապերի սերտացումը, նրանց փոխազդեցությունների կատարելագործումը: Դա հասարակության պահանջմունքները առավել լրիվ բավարարելու, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակը բարձրացնելու լայնամասշտաբ ծրագրի կենսագործման հանգուցային պրոբլեմն է:

Հասարակության առաջադիմության, արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների որակական թռիչքի առանցքը գիտությունն է, ընդ որում ոչ միայն բնագիտությունը, այլ նաև գիտության մյուս ճյուղերը տեխնիկականից մինչև հասարակական գիտությունները:

Այսօր, նշում է Մ. Ս. Գորբաչովը, «Անհրաժեշտ է գիտության խնդիրներին նայել նորովի ժամանակի պահանջների՝ նրա դեպի հասարակական արտադրության կարիքները, իսկ արտադրությանը դեպի գիտությունը վճռական շրջադարձի պահանջների լույսի տակ: Այդ դիրքերից պետք է վերլուծվեն ու ամրապնդվեն գիտությունը, տեխնիկան և արտադրությունը միավորող բոլոր օղակները»:

Արտադրությունը որպես բնության հետ կատարվող նյութափոխանակության, անհրաժեշտ նյութական պայմանների ստեղծման համար մարդկային գործունեության յուրահատուկ տիպ բնության ակտիվ վերափոխման պրոցես է: Այն իր մեջ է ներառնում բնության նկատմամբ մարդկանց առնչությունը, արտադրողական ուժերն ու արտադրական հարաբերությունները, որտեղ արտադրաուժերն արտացոլում են արտադրության պրոցեսի բովանդակությունը, իսկ արտադրահարաբերությունները՝ մարդկանց գիտակցությունից անկախ այն կապերը, որոնք առաջանում են նրանց միջև հասարակական արտադրության, նյութական բարիքների փոխանակության ու բաշխման պրոցեսում: Այս ամբողջ համակարգի մեջ առաջին պլանում են գիտության, տեխնիկայի ու տեխնոլոգիայի և արտադրության ու նրա պրոցեսների միջև եղած փոխազդեցությունների պրոբլեմները:

Ժամանակակից պայմաններում գիտությունը վերակառուցվում է որպես համակարգ: Արտադրությանը և տեխնիկային հետևելով՝ այն նաև առաջ է անցնում դրանցից: Սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլում գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի արագացմամբ հասունանում են մի շարք գործնական պրոբլեմներ: Օրինակ, գիտական հիմնարար հետազոտությունների աճ, արտա-

---

ՄԱՆՈՒԿՅԱՆ ՎԱՀԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆԻ— Երևանի «էլեկտրոն» գործարանի ինժեներ

թյուններ կատարել նաև երկրի այլ տնտեսական շրջանների համար: Հանրապետությունը երկրի ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական վերակառուցմանը կարող է մասնակցել այնպիսի առաջատար ուղղություններում, ինչպես ռադիոէլեկտրոնիկան, սարքաշինությունը (այդ թվում՝ գիտական), էլեկտրատեխնիկան (էլեկտրաշարժիչներ, կաբել և այլն), գործիքաշինությունը, քիմռեակտիվները: Այդ խնդրի իրականացմանը կարող են հաջողությամբ մասնակցել ոչ միայն հանրապետության գիտությունների ակադեմիան, այլև ճյուղային գիտահետազոտական ինստիտուտները, բուհերը, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունները, արտադրական միավորումները:

Գիտական ու տեխնիկական առաջադիմությունը և գիտական պոտենցիալի առավել ինտենսիվ օգտագործումը հանրապետության նյութական արտադրության ճյուղերի հետագա զարգացման ուղին է: Շարունակվում է գիտատեխնիկական առաջադիմությունը որոշող արդյունաբերության՝ սակավմետաղատար և սակավէներգատար ճյուղերի առավելապես զարգացման կուրսը:

Գիտատեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղություններից մեկն է առաջավոր տեխնոլոգիաների արագ յուրացումը, առաջադիմական, բազային տեխնոլոգիաների ստեղծման, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ ընդհանուր միութենական և հանրապետական նպատակային կոմպլեքսային գիտատեխնիկական մի շարք ծրագրերի մշակումն ու ներդրումը, արտադրության ավտոմատացումը և մեքենայացումը:

Ընթացիկ հնգամյակում իրականացվում է մեքենայացված, հոսքնթաց ու ավտոմատ գծերի, կոմպլեքսայնորեն մեքենայացված և ավտոմատացված տեղամասերի ու արտադրությունների, ռոբոտատեխնիկայի և մանիպուլյատորների կիրառմամբ ճկուն արտադրական սիստեմների լայն արմատավորում: Մինչև հնգամյակի վերջ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ընդհանուր առմամբ կներդրվեն նոր տեխնիկայի գծով շուրջ հինգ հազար կարևորագույն միջոցառումներ: Դրանց միագումար տնտեսական արդյունքը կկազմի շուրջ 400 միլիոն ռուբլի, որը 100 միլիոն ռուբլով ավելի է, քան նախորդ հնգամյակում:

Հնգամյակի ընթացքում ազգային եկամտի էներգատարությունը կնվազի 7—9 տոկոսով, առավել խնայողաբար կօգտագործվեն հումքը և նյութերը: Զգալիորեն աճում են ժողովրդատնտեսական շրջանառության մեջ ներգրավվող երկրորդային ռեսուրսների ծավալները:

Նախատեսվում է 85 նոր անվանման այնպիսի արտադրանքի յուրացում, որն իր տեխնիկատնտեսական ցուցանիշներով համապատասխանի համաշխարհային լավագույն նմանօրինակներին:

Ժողովրդական տնտեսության ճյուղերի կառուցվածքային վերակառուցումը կապահովի մեքենաշինության զարգացման տեմպերի աճը, նրա գիտատար ճյուղերի և արտադրությունների առաջնային զարգացումը: Ներկայումս յուրացվում է միկրոսխեմաների, ռոբոտների և ռոբոտատեխնիկական համալիրների ու համաշխարհային ստանդարտների մակարդակով այլ իրերի պատրաստման համար չափիչ տեխնիկայի սարքերի, վերահսկողության ու կարգավորման միջոցների, գերճշգրիտ օպտիկամեխանիկական սարքավորումների թողարկումը:

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում փոխվել են արտադրության և գիտության փոխհարաբերությունների նախկին ձևերը: Այդ փոփոխությունները կատարվում են հոգևոր և նյութական արտադրության նոր ձևերին համեմատ: Արտադրությունը դառնում է գիտության կիրառում, իսկ ինքը գիտությունը՝ արտադրության պրոցեսի ֆունկցիա:

Արտադրությունը նյութական պայմաններ է ստեղծում գիտական հետազոտությունների և փորձարկումների համար, ձևավորում է պրակտիկ պրոբլեմներ, որոնց լուծումներն առաջ են բերում նոր գիտատեսական մոտեցումներ կամ հարցադրումներ:

Գիտության և արտադրության փոխհարաբերության զարգացումն անցնում է տարբեր փուլեր, դրսևորվելով տարբեր դերերում: Ոչ միայն գիտությունն է դառնում արտադրության ֆունկցիա, այլ նաև արտադրությունն է վերափոխվում գիտության ֆունկցիայի: Երբ հասարակության տեխնիկական պահանջները ստանում են հրատապ նշանակություն, դրանք նախ հիմնավորվում են գիտականորեն, ապա նոր իրականացվում արտադրության մեջ:

Ամեն մի նոր գիտական սկզբունք տեխնիկապես մշակելու և արտադրության մեջ ներդնելու համար նախապես պետք է բազմակողմանիորեն հիմնավորվի: Վերջինիս



բացակայությունը շատ մեծ վնասներ կարող է պատճառել ժողովրդական տնտեսությանը, բնությանը, մարդկանց առողջությանը:

Ցավոք, մենք առիթներ ունեցել ենք ականատես լինելու այն իրողությանը, երբ մի շարք գիտական, ավելի ճիշտ կլինի՝ այսպես կոչված գիտական խոշորածավալ միջոցառումները իրականացնելուց առաջ բազմակողմանիորեն չեն հիմնավորվել, ընդունվել և իրականացվել են այնպիսի գլոբալ ծրագրեր, որոնք իրոք անդառնալի վնասներ են պատճառել և ժողովրդական տնտեսությանը, և բնությանը: Միութենական բազմաթիվ օրինակների շարքում հիշենք թեկուզ մեր հանրապետության քիմիացումը, Սևանի պրոբլեմը և այլն և այլն:

Քանի որ գիտատեխնիկական հեղափոխության ծավալումը հաճախ կենսոլորտի վրա թողնում է բացասական հետևանքներ, այն անխուսափելիորեն կյանքի է կոչում մարդկային գործունեության մի այլ ուղղություն՝ կուլտուր-էկոլոգիական հեղափոխության իրականացում, որի նպատակն է նոոսֆերայի (փոփոխված պայմանների համապատասխան ոլորտի) ստեղծում: Նոոսֆերայի ստեղծումը հասարակությունից պահանջում է ավելի շատ միջոցներ ու աշխատանքի ծախսում, քան գիտատեխնիկական հեղափոխության իրականացումը: Բայց դա չի նշանակում, թե մարդկությունը կարող է հրաժարվել գիտատեխնիկական հեղափոխությունից: Պետք է գիտակցել, որ ԳՏՀ-ն լուծում է մարդու նոր մակարդակի բարձրացրած պահանջմունքների բավարարման խնդիրը: Այդ բոլորը ընդլայնում են մարդկային գործունեության ոլորտները և շղթայական ռեակցիայի նման մեծացնում հասարակական աշխատանքի շրջագիծը:

Զարգացման բարձր տեմպերի հիմնական պայմանը գիտատեխնիկական գիտելիքների արագացված ներդրումն է արտադրության մեջ: Իսկ արտադրության պրոցեսը կանոնավորվում է մի կողմից հասարակության բոլոր անդամների ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր պահանջմունքների բազմակողմանի ապահովմամբ, մյուս կողմից՝ արտադրության կազմակերպմամբ և արտադրողականության բարձրացմամբ: Այս սոցիալ-տնտեսական նպատակադրումը կարող է իրականացվել միայն այն դեպքում, երբ առկա են արտադրողական ուժերի զարգացման բոլոր հնարավորությունները:

Գիտատեխնիկական առաջընթացը կոմպլեքսային պրոցես է, որը երաշխավորվում է ամբողջովին վերցրած իր արտադրողական ուժերի կատարելագործմամբ, աշխատանքի առարկաներով ու միջոցներով, արտադրության ճիշտ կազմակերպմամբ, հասարակության նյութական և հոգևոր կյանքի մակարդակի բարձրացմամբ, աշխատավորների կրթական մակարդակով:

Համամիութենական XIX կոնֆերանսում առանձնահատուկ շեշտվեց, որ կուսակցության տնտեսական և սոցիալական ստրատեգիայի հիմքը գիտատեխնիկական առաջադիմության արագացումն է և ամենից առաջ նրա ժամանակակից փուլի նվաճումներին տիրապետելը՝ կապված ավանգարդային տեխնոլոգիաների՝ միկրոէլեկտրոնիկայի, ռոբոտատեխնիկայի, սարքաշինության, ինֆորմատիկայի, կենսատեխնոլոգիայի զարգացման, նախօրոք առաջադրված հատկություններով նյութերի ստեղծման հետ:

Գիտության ու տեխնիկայի զարգացման մեջ նկատվում են դրական տեղաշարժեր, մեծացել է պահանջկոտությունը արտադրանքի տեխնիկական մակարդակի նկատմամբ, կրճատվել են նոր առաջադիմական արտադրատեսակների արտադրության յուրացման ժամկետները: Ավելի ճկուն է դարձել գիտատեխնիկական կազմակերպությունների ցանցը, նպատակային խնդիրների լուծման համար ստեղծվել են սկզբունքորեն նոր կառուցվածքային ձևավորումներ՝ միջճյուղային գիտատեխնիկական համալիրներ, ինժեներական կենտրոններ, ժամանակավոր կոլեկտիվներ: Երկրում ստեղծված է ավելի քան 500 գիտաարտադրական միավորում: Մեր հանրապետությունում ստեղծվել և հաջողությամբ գործում է 15 գիտաարտադրական միավորում: Ավելացել են գիտության փորձափորձարարական բազայի ամրապնդմանը հատկացվող կապիտալ ներդրումները: Ոչ պակաս կարևոր նշանակություն ունի նաև գիտական կազմակերպությունների սկսված օրգանական ներգրավումը տնտհաշվարկային հարաբերությունների համակարգի մեջ:

Միևնույն ժամանակ գիտատեխնիկական առաջադիմության քնագավառում կան լուծման կարոտ հարցեր: Դեռևս չեն գտնված այդ կարևոր գործի մեջ աշխատավորական կոլեկտիվների շահերի ներգրավման արդյունավետ մեխանիզմներ:

Գիտատեխնիկական առաջադիմության վրա ներգործության գլխավոր միջոցը տնտեսական մեխանիզմի վերակառուցումն է: Հենց այդ մեխանիզմը պետք է նպատակամղի արտադրության անընդհատ կատարելագործման գիտական և տեխնիկական վերազինման:

# ՄԻԱՍՆԱԿԱՆ ՔԱՂՕՐ. ԻՆՉՊԻՍԻ՞Ն Է ՆՐԱ ՀԱՏՈՒՅԹԸ

Վ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՆԵՐԿԱ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ավելի ու ավելի է կարևորվում աշխատավորների հետ կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար և պատասխանատու աշխատողների հանդիպումների անհրաժեշտությունը: Դրանք անփոխարինելի միջոց են աշխատավորական կոլեկտիվների սոցիալ-տնտեսական զարգացման հարցերին մոտիկից առնչվելու, հասարակական կյանքի հասունացած խնդիրները ժամանակին լուծելու համար: ՀԿԿ Էջմիածնի շրջկոմը և շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները հենց այդ նպատակին են ծառայեցնում միասնական քաղօրերը, որոնք, ըստ էության, աշխատավորության շրջանում տարվող գաղափարաքաղաքական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու կարևոր միջոց են:

Միասնական քաղօրերի անցկացման գործում կարևորը աշխատանքի արդյունքն է, սոցիալական հատույցը: Դրանք պետք է նպաստեն նախատեսված նպատակների իրագործմանը, այն պարզ ճշմարտության հաստատմանը, որ արագացման առաջընթացի այլ ուղի, քան լարված ու անձնվեր աշխատանքը, պարզապես չկա: Կուսակցության շրջանային կոմիտեն մշակել է միասնական քաղօրերի անցկացման համակարգ: Գործի հաջողության առաջին նախապայմանը համարում ենք քաղօրերն անցկացնողների ընտրությունն ու հաստատումը այն հաշվով, որ նրանց ներհատուկ լինեն գաղափարաքաղաքական հասունությունը, կուսակցական սկզբունքայնությունը, օբյեկտիվությունն ու պահանջկոտությունը, քաղաքական, տնտեսական և մեթոդական գիտելիքներով զինվածությունը:

Յուրաքանչյուր միասնական քաղօրվա թեմայի հրապարակումից հետո շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը մշակում է մեթոդական հանձնարարականներ, առանձնացնում անհրաժեշտ գրականություն, կազմակերպում խմբակային կոնսուլտացիաներ, որտեղ պարբերաբար հանդես են գալիս կուսշրջկոմի քարտուղարները, ժողովրդական դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների գործկոմների նախագահները, կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար և պատասխանատու այլ աշխատողներ: Կոլեկտիվներում քաղօրերն անցկացնողների թեկնածությունը ընտրելիս խստորեն հաշվի ենք առնում աշխատանքային տեղամասերում գործերի վիճակը, ծագած առանձին դժվարությունները, աշխատավորներից ստացված դիմում-բողոքների, առաջարկությունների բնույթը: Այլ կերպ ասած, ղեկավար կադրերի ուշադրությունն առաջին հերթին բևեռվում է այն տեղամասերի վրա, որտեղ առավել անհրաժեշտ են գործնական միջամտությունն ու օգնությունը:

Միասնական քաղօրերի ներգործությունը, նրա դաստիարակչական հատույցը, իհարկե, ամենից առաջ գնահատվում են կոնկրետ արդյունքով: Այգեշատ և Հայթաղ գյուղերում երկար ժամանակ չէր լուծվում երիտասարդ ընտանիքներով բնակեցված նոր թաղամասերում գիշերային լուսավորության ցանցի անցկացման հարցը: Խնդիրը գործնականում լուծվեց միասնական քաղօրվա ժամանակ բարձրացված հարցի քննարկումից հետո: Այդ ձևով շրջանում լուծվել են նաև սոցիալական բնույթի այնպիսի

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ՎԱՐԽԻՐՀԻ ՆԱՀԱՊԵՏԻ— ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի քարտուղար



կարևոր հարցեր, ինչպիսիք են Արաքս, Ջրառատ գյուղերի գազիֆիկացումը, մի քանի բազմաբնակարան տների ջեռուցման ցանցի նորոգումը, որոշ գյուղերում՝ պաղպաղակի, սուրճի և զովացուցիչ ջրերի տաղավարների տեղադրումը, Ծաղկունյաց գյուղում՝ պարզ տիպի խաղահրապարակների կառուցումը և այլն:

Գաղափարաքաղաքական աշխատանքի ներգործության ապահովումը անմիջականորեն պայմանավորվում է այն հանգամանքով, թե աշխատավորական կոլեկտիվները որքանով են դառնում դաստիարակության կենտրոններ, ինչպիսի ազդեցություն են ունենում գործերի վիճակի բարելավման վրա, նպաստում մարդկանց աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացմանը, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի արմատավորմանը: Այս իմաստով էլ միասնական քաղօրերի հատույցը պայմանավորված է նաև նրանով, թե դրանց միջոցով տեղերում որքանով են ապահովվում կուսակցության ու կառավարության որոշումների վերաբերյալ աշխատավորների իրազեկությունը, հետ մնացող տեղամասերում գործերի վիճակի շտկումը, ինչպես է կազմակերպվում աշխատավորների սոցիալ-կուլտուրական պահանջմունքների բավարարմանն առնչվող գործնական առաջարկությունների և դիտողությունների հաշվառումը, մարդկանց ակտիվ կենսադիրքի, անբասիր վարքագծի ձևավորումը:

Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները հիմնականում բարձր պատասխանատվությամբ են նախապատրաստում և անցկացնում միասնական քաղօրերը: Նրանք լավ են օգտագործում հասարակական հիմունքներով գործող քաղլուսակբիենտների, գաղափարախոսական ակտիվի, այն անձանց հնարավորությունները, ովքեր ունեն մարդկանց համոզելու և իրենց հետևից տանելու ընդունակություն: Ամբողջ խնդիրն այն է, որ այդ աշխատանքում իշխող է դառնում կարծիքների անկեղծ, շահամետ փոխանակումը, այն շաղկապվում է կոլեկտիվի գործերի, հասարակական կյանքի բոլոր ոլորտների դեմոկրատացման, վերակառուցման ու արագացման կուսակցության կուրսի հետ: «Մեր ամեն մի պլան օդում կախված կմնա,— ՍՄԿԿ XXVII համագումարում նշեց Մ. Ս. Գորբաչովը,— եթե այն անտարբեր թողնի մարդկանց, եթե մենք չկարողանանք արթնացնել մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը: **Հասարակությունը շրջել դեպի նոր խնդիրներ, դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը՝ այսպիսին է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ամենաառաջին պայմանը»** (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 120):

Շրջանում միասնական քաղօրերի պրակտիկան հաստատել է ընդհանուր առաջընթացի համար մարդկանց կարծիքների ուշադիր հաշվառման, դրանց կենսագործման անհրաժեշտությունը: Այդ նպատակով աշխատավորական կոլեկտիվներում քաղօրն անցկացնողները կուսշրջկոմ են ներկայացնում դրանց արդյունքների մասին ինֆորմացիոն թերթիկներ, որտեղ գրանցվում է նախաձեռնությունների, առաջարկությունների և դիտողությունների բովանդակությունը, նշում, թե ում են հասցեագրված դրանք և ինչպես են իրականացվելու: Շրջանային կոմիտեն դրանք ուսումնասիրում և ուղարկում է համապատասխան կազմակերպություններին ու անձանց: Այնուհետև շրջկոմի բաժինները վերահսկողություն են սահմանում դրանց կատարման նկատմամբ:

Ղեկավար մարմինների և աշխատավորների կապի ամրապնդման միջոց է դարձել շրջանի կազմակերպությունների զգալի մասում հարցարկղերի օգտագործման պրակտիկան: Առաջադրված հարցերի միջոցով ապահովվում է հանդիպումների ուղղվածությունը: Բանն այն է, որ քաղօրերի անցկացումից առաջ կուտակվում են բավականաչափ հարցեր, դիտողություններ ու առաջարկություններ, որոնք հանձնվում են դրանք անցկացնող պատասխանատու աշխատողներին: Կոլեկտիվների բարձրացրած հարցերը բազմաբնույթ են, ընդգրկում են մեր կյանքի բոլոր ոլորտները՝ աշխատանքային կարգապահության ամրապնդում և արտադրանքի որակի բարձրացում, տնտեսավարման նոր պայմանների անցնելու առաջարկություններ, սոցիալ-կուլտուրական վերափոխումներ և այլն: Դրանց լուծումն ուղղակիորեն նպաստում է աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական ուժերի ու հնարավորությունների առավելագույն մոբիլիզացմանը, վերակառուցման խնդիրների կատարմանը:

Միասնական քաղօրերի ընթացքում շատ հարցեր և պրոբլեմներ բարձրացվել են հանրապետական ու շրջանային մասշտաբով և ունեցել են հասարակական հնչեղություն: Դա մեր աշխատավորների քաղաքացիական ճիշտ դիրքորոշման, նրանց մոտ պետական ճիշտ մտածելակերպի դրսևորման, վերակառուցման ըստ ամենայնի պաշտպանության վկայությունն է: Այսպես, շրջանում հավանությամբ ընդունվեց Լենինյան

կոլտնտեսությունում անասնապահի տուն կառուցելու վերաբերյալ միասնական քաղօրվա անցկացման ժամանակ կոլտնտեսականների առաջարկությունը, որը պաշտպանություն գտավ կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի կողմից: Այսօր արդեն անասնապահի տիպային տներ ունեն նաև Լեռնուղու, Արշալույսի կոլտնտեսությունները: Շինարարական նման աշխատանքներ կատարվելու են շրջանի մի շարք այլ գյուղերում:

Լայն արձագանք է գտել նաև գյուղական բնակավայրերում մարզադպրոցների և մարզաբազաների կառուցման մասին առաջարկը: Դրա հիման վրա շրջանի Ոսկեհատ, Ջրառատ, Նորակերտ, Աղավնատուն, Առատաշեն և մի շարք այլ գյուղերում ստեղծվում է մարզական կառույցների լայն ցանց: Մեկ ուրիշ բնորոշ օրինակ. 1986 թվականի մայիսի 21-ին, երբ շրջանի Ակնալճի սովխոզում շրջսովետի գործկոմի նախագահ Ն. Եղիազարյանը միասնական քաղօր էր անցկացնում՝ «Հոգատարությունը մարդու, նրա աշխատանքի ու կենցաղի նկատմամբ կուսակցության քաղաքականության հիմնական հարցն է» թեմայով, աշխատավորներն առաջարկեցին ավանում կառուցել մշակույթի տուն: Ղեկավար մարմինները հավանություն տվեցին այդ առաջարկությանը և դիմեցին գործնական քայլերի այն իրականացնելու համար: Եվ, ահա, ընթացիկ տարվա փետրվար ամսին նորակառույց կուլտուրայի տունն իր հյուրընկալ դռները բացեց ավանի բնակչության առջև: Միասնական քաղօրերի ընթացքում աշխատավորական կոլեկտիվները բարձրացրել են էլեկտրիֆիկացման, գազիֆիկացման, ջրամատակարարման, հասարակական տրանսպորտի երթևեկության, նոր երթուղիների բացման, առևտրի, կապի, կենցաղային սպասարկման բարելավման և սոցիալ-կուլտուրական նշանակության շատ հարցեր, որոնք լուծվել են շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների գործնական միջամտությամբ:

Ժամանակը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ շրջանում ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումից հետո շոշափելի տեղաշարժեր են կատարվել էկոնոմիկայում, շինարարության, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքում, սպասարկման ոլորտում: Ամենուրեք պաշտպանություն են գտնում աշխատավորական լայն զանգվածների առաջարկությունները ու կարծիքները աշխատանքի կազմակերպման նոր ձևերի արմատավորման, խնայողության ռեժիմի ուժեղացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, նոր ռեզերվների հայտնաբերման, մարդկային գործոնի ակտիվացման վերաբերյալ:

Կուսակցության ղեկավարությամբ իրականացվող վերակառուցումը վերածվել է համաժողովրդական գործի: Դրանում ներգրավվել են նաև մեր շրջանի շատ կոլեկտիվներ: Այսպես, տնտեսավարման նոր պայմաններում աշխատելու նախաձեռնությունը պաշտպանություն է գտել և այժմ կիրառվում է պլաստմասսաների գործարանում, կենցաղային մետաղյա իրերի, տեղական արդյունաբերության շինիրերի կոմբինատներում, Էջմիածնի ԲՈՒԱՏԶ-ում, շրջանային կապի հանգույցում: Խնայողության ռեժիմի և աշխատանքի արտադրողականության բարձրացման նախաձեռնություններով միասնական քաղօրերում հանդես են եկել պահածոների, հացի գործարանների, Զովունի արտադրամիավորման մասնաճյուղի և մի շարք այլ ձեռնարկությունների աշխատավորական կոլեկտիվները:

Միասնական քաղօրերի անցկացման պրակտիկան ցույց է տալիս, որ աշխատավորական կոլեկտիվների հետ շրջանի ղեկավարների հանդիպումները միշտ չէ, որ գործնականում ապահովում են անհրաժեշտ հատույց: Երբեմն նրանց բարձրացրած հարցերի լուծումը ձգձգվում է հանրապետական վերադաս կազմակերպությունների մեղքով: Տարիներ շարունակ շրջկոմի պլենումներում, ակտիվի ժողովներում, առանձին սկզբնական կազմակերպություններում հարց է բարձրացվել քաղաքային մշակույթի տուն կառուցելու մասին: Սակայն ՀՍՍՀ պետպլանը նախատեսել է այդ հարցը քննարկել 1989—90 թթ. և կառուցել տասներեքերորդ հնգամյակում: Մինչդեռ 56 հազար բնակիչ ունեցող քաղաքը վաղուց պետք է ունենար իր մշակույթի տունը:

Ցանկալի կլինի, եթե միասնական քաղօրերի ժամանակ վերադաս ղեկավար և պատասխանատու աշխատողներն ավելի հաճախակի լինեն աշխատավորական կոլեկտիվներում, մոտիկից իրազեկ լինեն նրանց առաջադրած հարցերին, առաջարկություններին: Միասնական քաղօրերի արդյունավետության բարձրացմանը մեծապես նպաստում են ՀԿԿ Կենտկոմի հանրապետական քաղլսարան, շրջանային կոմիտեի քաղլուսկաբինետի կողմից կազմակերպվող սեմինարները:

Միասնական քաղօրը, որպես քաղաքական կամպանիա, ավելի ներգործուն կլինի, եթե հանրապետական և շրջանային թերթերը, սովորական ինֆորմացիոն հաղորդումներից բացի, վերլուծեին դրանց անցկացման առաջավոր փորձը, պարբերաբար անդրադառնային բարձրացված հարցերի կատարման ընթացքի լուսաբանմանը:



Ես մտադիր չեմ նույնացնել միասնական քաղօրերը և դեպուտատի հետ հանդիպման օրերը, սակայն մեր կարծիքով նպատակահարմար կլիներ, եթե հանրապետական վերադաս կազմակերպությունների ներկայացուցիչներից ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետներում աշխատավորության կողմից շրջանի ընտրված դեպուտատները միասնական քաղօրերի ժամանակ հանդիպեին իրենց ընտրող կոլեկտիվների հետ:

Վերը շարադրվածից թող այն պատկերացումը չստացվի, թե մեզ մոտ միասնական քաղօրերն անցնում են հավասար հաջողությամբ: Բնավ ոչ: Այդ գործում դեռևս կան թերություններ ու բացթողումներ: Առանձին տեղերում քաղօրերն անցնում են ոչ բավարար մակարդակով, աշխատավորների պասիվ մասնակցության պայմաններում: Միշտ չէ, որ այդ օրերին բարձրացված հարցերը ժամանակին լուծվում են, առաջարկություններին ու դիտողություններին ընթացք տրվում: Պրակտիկան հաստատել է, որ միասնական քաղօրերի ընթացքում ավելի շատ շոշափվում են տնտեսական, սոցիալ-կենցաղային բնույթի հարցեր, որոնցով զբաղվելը, առաջին հերթին, սովետական ու արհմիութենական կազմակերպությունների գործն է: Մինչդեռ Մեծամորի, Ջրառատի կոլտնտեսությունների, Այգեկի, Ակնաշենի սովխոզների համապատասխան կազմակերպությունները անհրաժեշտ պատասխանատվություն հանդես չեն բերում միասնական քաղօրերի նախապատրաստման և անցկացման համար:

Միասնական քաղօրերի բարձր մակարդակով նախապատրաստումն ու անցկացումը կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է: Շրջկոմի բյուրոյի նիստերում և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնում պարբերաբար քննարկվում են դրանց առնչվող հարցեր, միջոցառումներ են իրականացվում քաղաքական այդ կամպանիան հաջողությամբ անցկացնելու, այն վերակառուցման խնդիրների լուծմանը ծառայեցնելու համար: Շրջկոմի բյուրոն իր ընթացիկ տարվա մայիսի 18-ի նիստում քննարկեց գործարաններից մեկի կուսկազմակերպության հաշվետվությունը գաղափարախոսական աշխատանքի վիճակի մասին: Քննարկման ժամանակ համակողմանիորեն ընդհանրացվեց նաև միասնական քաղօրերի անցկացման աշխատանքը: Նշվեց, որ կուսկոմիտեն իր ուշադրության կենտրոնում է պահում միասնական քաղօրերի անցկացումը: Դրանց մասնակցում են շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական պատասխանատու աշխատողներ: Ամրապնդվում է գործարանի ղեկավարների հանդիպումների պրակտիկան ստորաբաժանումների աշխատավորական կոլեկտիվների հետ: Այդ հանդիպումների ժամանակ էլ նրանց միջև ծավալվում է սրտաբաց խոսակցություն, որը նպաստում է բարձրացված հարցերի լուծմանը: Բյուրոն խնդիր դրեց կուսկոմիտեի և դիրեկցիայի առջև է՛լ ավելի ուժեղացնել ուշադրությունը քաղօրերի նախապատրաստման ու անցկացման նկատմամբ, դրանք դիտել որպես վերակառուցման կարևոր պայման: Կուսկոմիտեից պահանջվեց ամրապնդել գաղափարախոսական աշխատանքի կապը կյանքի հետ, ղեկավար կադրերին լայնորեն ներգրավել այդ գործում, ամրապնդել աշխատանքային ու կատարողական կարգապահությունը, հասարակական կարծիք ստեղծել այն խախտողների նկատմամբ:

Հանրապետական մամուլում միասնական քաղօրվա թեմայի հրապարակումից հետո շրջկոմը կազմում և հաստատում է պլան-գրաֆիկ, կատարում թեմայի բազմակողմանի վերլուծություն, մեթոդական օգնություն է ցույց տրվում զեկուցողներին: Կարևոր է, որ քաղօրն անցկացնողները նախատեսված թեման սերտորեն կապում են տվյալ աշխատավորական կոլեկտիվի արտադրական, սոցիալական և դաստիարակչական կոնկրետ խնդիրների հետ: Նրանք բացահայտում են կուսակցության առաջադրած վերակառուցման կուրսի էությունը, նշում յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր մարդու անելիքը դրա իրականացման, ձեռնարկության, տնտեսության առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում: Ի՞նչն ենք մենք կոնկրետ կերպով անբավարար համարում քաղօրերի անցկացման գործում: Առանձին տնտեսություններում, հիմնարկ-ձեռնարկություններում դեռևս չի ամրապնդվում քաղօրերի նախապատրաստման և անցկացման գործում տնտեսական ղեկավարներին ակտիվորեն ներգրավելու պրակտիկան: Որոշ ղեկավարներ քաղօրերը դիտում են սոսկ որպես աշխատավորության հետ շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար և պատասխանատու աշխատողների հանդիպման, նրանց միջոցով աշխատավորների սոցիալական և այլ հարցերի լուծմանն ուղղված միջոցառում: Նման մոտեցումը, որ բնորոշ է Ծաղկունք, Հայթաղ, Ապագա, Ջրառատ, Ակ-

նաշեն, Մեծամորի կոլեկտիվ և պետական տնտեսությունների, պլաստիկ արտադրա-
միավորման, «Ագրոշին» № 1 տրեստի ՇՄՇ-ների կոմպլեքսմակերպություններին ու
տնտեսական ղեկավարներին, չի բխում միասնական քաղօրերի անցկացման նպա-
տակներից: Նրանց պարտավորեցրել ենք փոխել իրենց վերաբերմունքը միասնական
քաղօրերի նախապատրաստման ու անցկացման նկատմամբ: Հարկ է հաշվի առնել, որ
քաղօրը մասսայական միջոցառում է և դրան մասնակցում են մեծ թվով աշխատա-
վորներ: Հետևաբար, ոչ միայն ցանկալի, այլև անհրաժեշտ է, որ տեղերում կուսակ-
ցական, սովետական և տնտեսական ղեկավարները առանձնակի պատասխանատվու-
թյամբ վերաբերվեն դրանց: Դա կմեծացնի աշխատավորների իրազեկությունը գոր-
ծերի իրական վիճակի և հետագա խնդիրների մասին:

Կուսշրջկոմը հետամուտ է լինում, որպեսզի տեղերում ամրապնդվի աշխատա-
վորների առաջարկությունների հաշվառման, քննարկման և դրանց կատարման ըն-
թացքին անդրադառնալու պրակտիկան, բարձրացնում է քաղօրեր անցկացնողների
պատասխանատվությունն այն հաշվով, որպեսզի նրանք հսկողություն սահմանեն աշ-
խատավորների բարձրացրած հարցերի լուծման միջոցառումների նկատմամբ: Քաղօ-
րերի ժամանակ բարձրացված հարցերի հրապարակայնության ապահովման նպա-
տակով նախատեսել ենք յուրաքանչյուր քաղօրվա արդյունքները համակողմանիորեն
լուսաբանել շրջանային թերթում ու ռադիոյով:

Վերակառուցումը նորանոր պահանջներ է առաջադրում գաղափարախոսական
աշխատանքին, որի դաստիարակչական ներգործությունն ամբողջությամբ նպատա-
կամղվում է մարդկանց մոտ նորովի մտածելու և գործելու ունակության ապահովմա-
նը: Այս խնդրի շրջանակներից դուրս չի մնում միասնական քաղօրերը վերակառուց-
մանը համարժեք դարձնելու աշխատանքը:

---

# ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ՝ ԱՄԵՆ ՄԻ ՕՂԱԿՈՒՄ

«Լույս» արտադրական միավորման Ղափանի լուսատեխնիկական գործարանն այս տարվա սկզբից անցել է տնտեսավարման նոր պայմանների: Կոլեկտիվի համար այդ բեկումնային քայլի նախապատրաստման աշխատանքները վաղուց էին սկսվել: Ձեռնարկության ղեկավարությունը և կուսբյուրոն լավ էին հասկանում, որ կազմակերպական-տնտեսագիտական խնդիրներից ոչ պակաս, գուցե և ավելի կարևորը, բանվորների ու ինժեներատեխնիկական անձնակազմի շրջանում բացատրական աշխատանքի ծավալումն է, տնտեսական արմատական ռեֆորմի էության պարզաբանումը, նոր եղանակի առավելությունների ու յուրահատկությունների հստակ մեկնաբանումը: Եվ այդ առաջնահերթ գործին են այստեղ ծառայում քաղաքական ագիտացիայի, կուսակցական և տնտեսագիտական ուսուցման բոլոր օղակները: Այս առումով հատկանշական է գործարանի դիրեկտոր Յու. Բենիամինյանի ծավալած գործունեությունը: Նա ձեռնարկության մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քաղդպրոցի պրոպագանդիստն է: Ունկնդիրները հիմնականում արտադրության միջին հրամանատարներ են: Քաղդպրոցի պարապմունքներում արծարծվում են նաև տնտեսավարման նոր եղանակին առնչվող խնդիրները: Հերթական պարապմունքներից մեկում, օրինակ, քննարկվեց «Լրիվ տնտհաշվարկ, ինքնաֆինանսավորում և ինքնածախսածածկում» թեման: Մինչ պարապմունքին անդրադառնալը, մի քանի խոսք պրոպագանդիստի մասին: Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտն ավարտելուց հետո Յու. Բենիամինյանը 1968 թվականին աշխատանքի է անցնում Ղափանի պղնձահանքային կոմբինատում, ապա՝ այլ ձեռնարկություններում: 1979 թվականին նշանակվում է լուսատեխնիկական գործարանի գլխավոր ինժեներ, մեկ տարի անց՝ դիրեկտոր:

Տնտեսական ղեկավարը նաև դաստիարակ է: Արտադրական ամեն մի հարց վերջին հաշվով լուծվում է մարդու միջոցով: Ուստի ղեկավարը զուտ տեխնիկական, տեխնոլոգիական, կազմակերպական խնդիրներին զուգընթաց, պարտավոր է մշտապես, ամեն օր զբաղվել նաև բանվորների ու ծառայողների դաստիարակությամբ, այսինքն՝ կոլեկտիվում բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի ստեղծման ու պահպանման հարցերով:

Այս անվիճելի ճշմարտությունը, ցավոք, տնտեսական ոչ բոլոր ղեկավարներն են ըմբռնում, և հաճախ, տարվելով բացառապես արտադրական պրոբլեմներով, մոռանում են մարդուն, նրա հոգսերն ու հետաքրքրությունները, հազվադեպ են զրույցներով ու զեկուցումներով հանդես գալիս կոլեկտիվի առջև, զլանում են ջերմ խոսք ասել բանվորներին, նույնիսկ բարևել նրանց:

Յու. Բենիամինյանն այս պարզ ճշմարտությանն, անշուշտ, մեկից չհասավ: Տարիներ պահանջվեցին: Բայց, երբ անհրաժեշտ գրականության, կուսակցական փաստաթղթերի ընթերցումից և ավելի շատ սեփական, երբեմն էլ դառը փորձից հետո, հանգեց այդ ճշմարտությանը, այլևս մարդկանց հետ զբաղվելը, խորհրդակցելը, համոզելը դարձավ նրա՝ որպես տնտեսական ղեկավարի, աշխատանքի անքակտելի մասը: Մարդկանց հետ շփվելը, բանավիճելը, նրանց լսելը վերածվեց պահանջի: Այդ համոզմամբ էլ նա ստանձնեց պրոպագանդիստի պարտականությունը և ահա մեկուկես տասնամյակ է, ինչ մեծ պատասխանատվությամբ է կատարում կուսակցական կարևոր հանձնարարությունը:

— Յու. Բենիամինյանը մեր շրջանի լավագույն պրոպագանդիստներից է,— ասում է Ղափանի կուսշրջկոմի քարտուղար Բելա Դանիելյանը,— նրա աշխատանքի առաջավոր փորձը ընդհանրացվել և տարածվել է: Պրոպագանդիստի հեղինակությունը պայմանավորված է նրա պրոֆեսիոնալ մակարդակով, մարդկանց հետ աշխատելու հմտությամբ, ունկնդիրներին բանավեճի մեջ ներգրավելու և այդ բանավեճին ցանկալի ընթացք տալու վարպետությամբ, սուր պրոբլեմները չշրջանցելու դիրքորոշմամբ: Լուսատեխնիկական գործարանում հաջողությամբ են լուծվում բնակարանային շինարարության, մարդկանց աշխատանքի ու

կենցաղի պայմանների բարելավման հարցերը, կոլեկտիվում ստեղծվել է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ: Այս ամենի մեջ քիչ չէ պրոպագանդիստ-դիրեկտորի ավանդը:

Պատահում է, որ «պաշտոնական կարծիքով» պրոպագանդիստը անթերի է: Ե՛վ իր ունկնդիրներին գիտե, և՛ հանախումների մատյանի գրառումներն են իդեալական վիճակում... Բայց պարապմունքի ընթացքում տեսնում ես ունկնդիրներից շատերն անտարբեր են, մեկը օրաթերթն է նայում, մյուսի մտքերը լսարանից հեռու են, պարապմունքն անցնում է հարթ, տաղտկալի: Երբ ավարտվում է պարապմունքը, մարդիկ շտապում են տուն, և անմիջապես մոռանում, թե ինչի մասին էին խոսում: Անշուշտ, նման պարապմունքը ոչ մի արդյունք չի տալիս: Յու. Բենիամինյանի վարած պարապմունքը զերծ է նման կարգի թերություններից:

... Եվ, այսպես, նրա պարապմունքի մասին: Պրոպագանդիստը մեկ-երկու րոպեի ընթացքում հիշեցրեց նախորդ պարապմունքի հարցերը, և ապա անցավ նոր թեմայի շարադրմանը: Ի դեպ, Բենիամինյանը լայնորեն է կիրառում պարապմունքը վարելու ռեֆերատային ձևը. սովորաբար տրված թեմայի վերաբերյալ 2—3 ունկնդրի նախապես հանձնարարում է ռեֆերատներ կազմել, ինքն էլ օգնում է համապատասխան գրականությամբ, ուղղություն տալիս: Ապա հաջորդ պարապմունքի ընթացքում, ունկնդիրները լսում են այդ ռեֆերատները, քննարկում:

Այս անգամ պրոպագանդիստը շեղվել էր այդ ձևից: Նա որոշել էր անձամբ հանդես գալ հանգամանալի զրույցով: Նախապես կազմել էր թեմային վերաբերող մեծադիր սխեմաներ, դիագրամներ, որոնք փակցվել էին պատին: Զրույցի սկզբում պրոպագանդիստը համառոտակի խոսեց կուսակցության XXVII համագումարի մշակած՝ մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսի նշանակության, տնտեսական արմատական ռեֆորմի անհրաժեշտության ու նպատակների մասին, պարզաբանեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի նյութերի հիմնական դրույթները: Այնուհետև նա հանգամանորեն անդրադարձավ լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման ու դրանց հետ առնչվող հարցերին: Նախապես ուրվագծելով ուսումնասիրվող պրոբլեմի հիմնական կոնտուրները և տալով տեսական հիմնավորումը՝ նա առանձնացրեց մի քանի կարևոր ենթաթեմաներ ու սկսեց մանրամասնորեն շարադրել դրանց էությունը: Որպեսզի կարողանա բևեռել ունկնդիրների ուշադրությունը և պահպանել նրանց ակտիվությունը, նա դիմում էր ցուցադրական նյութերի օգնությանը, հարցեր ուղղում այս կամ այն ունկնդրին, կոնկրետ օրինակներ վկայակոչում ձեռնարկությունից: Թեման մեծապես հետաքրքրում էր բոլորին, նրանք ձգտում էին իմանալ մանրամասներ, ընկալել հարցի նրբությունները: Այդ հետաքրքրությունը միանգամայն բնական էր. չէ որ շուտով կոլեկտիվը սկսելու էր աշխատել տնտեսավարման նոր պայմաններում, իսկ գործի հաջողությունը զգալիորեն պայմանավորված է այդ քաղդպրոցի ունկնդիրների՝ արտադրության միջին հրամկազմի լավատեղյակությամբ ու գործիմացությամբ:

— Լրիվ տնտհաշվարկի դեպքում,— շարունակեց պրոպագանդիստը,— առաջին պլան է մղվում բարձր շահութաբերության ապահովումը: Նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքների ստացում՝ վերջին հաշվով սա է ինքնաֆինանսավորման հիմնական նպատակը: Այստեղից՝ նյութական, աշխատանքային և ֆինանսական միջոցների խնայողաբար ծախսման խստագույն ռեժիմի հաստատումը դառնում է պարտադիր պայման: Դրանով պետք է շահագրգռված լինի կոլեկտիվի ամեն մի անդամ՝ բանվորից մինչև դիրեկտորը:

Պարապմունքի ընթացքում առավել հանգամանորեն արծարծվեցին շահութաբերության, հիմնական ֆոնդերի գոյացման ու բաշխման հարցերը: Պրոպագանդիստը նշեց, որ մինիստրության մի շարք ձեռնարկությունների թվում իրենց գործարանը ևս մասնակցում է գիտափորձի, որի էությունը հետևյալն է. եթե լրիվ տնտհաշվարկի անցած ձեռնարկությունների աշխատավարձի ֆոնդը կայուն է, ապա գիտափորձի պայմաններում (թեև այլ ցուցանիշների նկատմամբ պահանջներն ավելի խիստ ու բարձր են) արդյունավետ աշխատանքի դեպքում աշխատավարձի ֆոնդը կարող է փոփոխվել, աճել: Նշանակում է հնարավորություն է ստեղծվում նկատելիորեն բարձրացնել մարդկանց աշխատավարձը: Այս հանգամանքը ավելի է մեծացնում կոլեկտիվի ամեն մի անդամի նյութական շահագրգռությունը վերջնական լավագույն արդյունքի հասնելու գործում:

Մի յուրահատկություն ևս. գիտափորձի պայմաններում ձեռնարկությունը յուրաքանչյուր աշխատողի հաշվով ամեն տարի պետական բյուջե է մուծում 300 ռուբլի՝ արտադրական հիմնական ֆոնդերի ամորտիզացիայի համար: Հետևաբար, կոլեկտիվը շահագրգռված է, որ ավելորդ արտադրական հիմնական ֆոնդեր չպահի, ինչպես նաև աշխատողների թվաքանակը հասցնի նվազագույնի, անընդհատ բարձրացնի աշխատանքի արտադրողականությունը:



— Այդ դեպքում ու՞ր են գնալու աշխատանքից ազատվածները. չէ՞ որ դա կարող է գործազրկության վտանգ ծնել,— հարցրեց ունկնդիր Գ. Հովհաննիսյանը:

— Նման վտանգ չկա,— պատասխանեց պրոպագանդիստը:— Մարդիկ վերաորակավորվելու են, անցնելու արտադրության այլ ճյուղեր, զգալի մասը՝ սպասարկման ոլորտ, կոոպերատիվներ և այլն: Ինչ վերաբերում է կոնկրետ մեր գործարանին, ապա, ինչպես գիտեք, վերջերս գործարկեցինք ավտոլամպերի արտադրության առաջին հոսքային գիծը, որտեղ աշխատում են 70 բանվորներ: Շուտով գործարկվելու է նաև երկրորդը. նոր տեղամասում երկհերթ աշխատանքի կազմակերպումով մենք կստեղծենք ևս 150 աշխատատեղ: Հետևաբար, մեր ձեռնարկությունում ոչ միայն աշխատողների թվաքանակի կրճատումներ չեն լինի, այլ նույնիսկ մենք կկարողանանք աշխատանքի ընդունել զգալի թվով երիտասարդների: Այս տարի նախատեսված է լիովին յուրացնել արտադրական նոր հզորությունները և թողարկել 1,5 միլիոն ավտոլամպ, որը բավականին շահութաբեր արտադրատեսակ է:

Ինչի՞ց են գոյանում արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացման, սոցիալական ու աշխատանքի վարձատրման ֆոնդերը, ինչպե՞ս են դրանք բաշխվում: Կոլեկտիվին մեծապես հուզող այդ հարցերի շուրջն իրենց մտորումներն արտահայտեցին ունկնդիրներ Օ. Ստեփանյանը, Գ. Խաչատրյանը և ուրիշներ: Ինժեներ Ժ. Բադալյանն առաջարկեց աստիճանաբար անցնել լյումինեսցենտային լուսատուների թեթևացած կոնստրուկցիաների օգտագործմանը, որը տնտեսապես ավելի նպատակահարմար է: Այդ նորույթի արմատավորումը կնպաստի շահութաբերության բարձրացմանը:

— 1988 թվականին,— շարունակեց պրոպագանդիստը,— գործարանը պետք է թողարկի 17,5 միլիոն ռուբլու ապրանքային արտադրանք՝ 2,2 միլիոն ռուբլով ավելի, քան նախորդ տարի: Ինչպես տեսնում եք, աճի տեմպերը բավական բարձր են, դրանք գերազանցում են հնգամյակի ցուցանիշները: Միաժամանակ նախատեսված է ապահովել 5 միլիոն ռուբլու շահույթ, որի 22 տոկոսը հատկացվում է ձեռնարկությանը: Իսկ որքան ավելանա շահույթը, այնքան ավելի շատ միջոցներ կգոյանան նյութական խրախուսման ֆոնդի համար, որը, ի դեպ, բաշխելու է աշխատավորական կոլեկտիվի նորընտիր խորհուրդը: Այսպիսով, պարզ երևում է, որ գործարանի զարգացման, նոր տեխնիկայի արմատավորման, բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացման, բնակարանային և սոցիալ-կուլտուրական օբյեկտների շինարարության ծավալների հարցերը անմիջականորեն պայմանավորված են մեզանից յուրաքանչյուրի սրտացավ ու բարեխիղճ աշխատանքով: Այս հիմնական դրույթը պետք է լավ ըմբռնեն ու զգան կոլեկտիվի բոլոր անդամները:

Եվ այսպես, ամեն մի հարցի պարզաբանումից հետո, պրոպագանդիստն այն կապում էր կոլեկտիվին առաջադրված խնդիրների, կոնկրետ անելիքների հետ, ձգտում նրան, որ պրոբլեմն անհանգստացնի յուրաքանչյուր ունկնդրի, ամեն մեկը զգա իր անձնական մասնակցության ու պատասխանատվության բաժինն այդ գործում: Ինչպես նաև լավ պատկերացնի դժվարությունները, բարդությունները: Այսօր, երբ հրապարակայնորեն քննարկվում են երկրի առաջընթացի, վերակառուցման, աշխատավորական կոլեկտիվների ամենասուր պրոբլեմները, մարդիկ այլևս չեն հանդուրժում շաբլոնը, կեղծիքը, ձևականությունը, կիսաճշմարտությունը:

Պարապմունքն ավարտվել է: Ունկնդիրներից շատերը չեն շտապում հեռանալ: Զրույցը շարունակվում է մեր երկրում տեղի ունեցող վերակառուցման ու դեմոկրատիայի ընդլայնման, տնտեսական ռեֆորմի, աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման արմատական վերակառուցման հարցերի շուրջ:

— Պրոպագանդիստի վրա,— ասում է Յու. Բենիամինյանը,— այսօր դրվում է ոչ միայն տեսական գիտելիքների տարածման, դրանք տվյալ կոլեկտիվի և կուսկազմակերպության աշխատանքի վերակառուցման կոնկրետ հարցերի հետ սերտորեն կապակցելու խնդիրը, այլև աշխատավորների նախաձեռնությամբ ծնված վերակառուցման փորձի ընդհանրացման շատ կարևոր գործը: Այս առումով քաղաքական և տընտեսագիտական ուսուցումը ներկայումս ստանում է նաև մի նոր դեր՝ վերակառուցման առաջավոր փորձի ընդհանրացման և տարածման ֆունկցիան: Իմ խորին համոզմամբ վերակառուցման, դեմոկրատիայի ընդլայնման համար պայքարին պրոպագանդիստները պետք է ավելի ակտիվորեն մասնակցեն:

Զրույցին միջամտում է կուսբյուրոյի քարտուղար Մ. Հարությունյանը.

— Խնդիր է դրվում այս տարի կուսակցական ուսուցման վերակառուցումը համատեղել տնտեսագիտական պարտուսի հետ: Եվ ահա հարց է առաջանում. բանվորները պետք է պարապեն սոցիալիստական տնտեսավարման դպրոցներում: Իսկ կոմունիստ-բանվորները, ինչպես ենթադրվում է, բացի այդ, պարտավոր են հաճախել նաև կուսակցական ուսուցման համակարգի քաղդպրոցների պարապմունքները: Մի՞թե դա ռեալ է. ինձ թվում է՝ ոչ:

... Ղափանի լուսատեխնիկական գործարանում վերջերս ամփոփվեցին 1988 թվականի վեց ամսվա արդյունքները, այսինքն՝ տնտեսավարման նոր պայմաններում աշխատանքի առաջին քայլերը: Ինչպիսի՞ք են դրանք:

— Եթե բնորոշելու լինենք մեկ բառով՝ բավարար,— հեռախոսային զրույցի ժամանակ հայտնեց Յու. Բենիամինյանը:

— Ավելի մանրամասնորեն...

— Եկեք դիմենք թվերին. պայմանագրային պարտավորությունների պլանը, որն այժմ հիմնական ցուցանիշ է, կատարել ենք 100 տոկոսով: Անցյալ տարի նույն ժամանակաշրջանում այն 95 տոկոս էր: Աշխատանքի արտադրողականությունը աճել է 18 տոկոսով, ապրանքային արտադրանքի ծավալը՝ 12 տոկոսով: Շահույթը կազմել է 2,4 միլիոն ռուբլի, որն առաջադրանքից 247 հազար ռուբլով ավելի է, իսկ անցյալ տարվա նույն ժամանակահատվածի ցուցանիշը գերազանցում է զգալիորեն: Դա նշանակում է, որ կաճեն արտադրության ընդլայնմանը և վերակառուցմանը, սոցիալական զարգացմանը և կոլեկտիվի անդամների նյութական խրախուսմանը հատկացվող միջոցները:

— Աշխատավարձի աճ նկատվու՞մ է:

— Այո՛, միջին աշխատավարձը աճել է 8 տոկոսով, իսկ աշխատանքի վարձատրման ֆոնդը կազմել է 548 հազար ռուբլի՝ պլանավորվածից 90 հազար ռուբլով ավելի:

Այսպիսով, տնտեսական արմատական ռեֆորմը, նշանակում է նաև վերակառուցումը սատիճանաբար ավելի խոր արմատներ է գցում: Դրան, անկասկած, նկատելիորեն նպաստում են ձեռնարկությունում գործող կուսակցական, տնտեսագիտական և կոմերցիական ուսուցման 17 դպրոցները, ուր ընդգրկված են 417 բանվորներ և ծառայողներ: Մեծ թվով ունկնդիրներ բարձրարդյունավետ աշխատանքի հիանալի օրինակ են ցույց տալիս, իրենց առաջարկներով նպաստում արտադրության կատարելագործմանը: Նրանց շարքերում են Զ. Անտոնյանը, Դ. Գևորգյանը, Ժ. Մինասյանը, Մ. Ղոնյանը, Թ. Թորոսյանը, Ա. Սողոմոնյանը, Ս. Մելքոնյանը, Ա. Հովհաննիսյանը և շատ ուրիշներ:

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման վերակառուցումը, ինչպես և վերակառուցումն ամբողջությամբ, թեև կուսակցական աշխատանքի երկարատև ժամանակաշրջանի խնդիր է, բայց այն չի կարելի վաղվան թողնել, հետաձգել: Այդ աշխատանքը պետք է անել այսօր, հիմա՝ շոշափելի արդյունքներ ձեռք բերելով դաստիարակության համակարգի ամեն մի օղակում: Այդ համոզմունքով է աշխատում նաև հմուտ պրոպագանդիստ Յու. Բենիամինյանը:

Մոտենում է քաղաքական և տնտեսագիտական կրթության նոր ուսումնական տարին: Ինչպես ամենուրեք, Ղափանի լուսատեխնիկական գործարանում ևս այդ առթիվ նախապատրաստական լայն աշխատանքներ են տարվում, կոմպլեկտավորվում են բոլոր օղակների դպրոցները, թարմացվում է պրոպագանդիստների կազմը... Այս ամենը՝ հաշվի առնելով համամիութենական XIX կուսկոնֆերանսի որոշումները, գաղափարախոսական աշխատանքին ներկայացվող նոր պահանջները: Այո՛, վերակառուցումը, հեղափոխական վերափոխումների մեր ժամանակը ճշգրտումներ, հին ստերեոտիպերի հաղթահարում է թելադրում բոլոր բնագավառներում: Դա առավելապես զգացվում է գաղափարախոսության ոլորտում, մասնավորապես քաղաքական և տնտեսագիտական ուսուցման համակարգում, որը նոր մտածողության դաստիարակման, մարդկային գործոնի ակտիվացման հիմնական լծակներից մեկն է:

Դ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

---

Սովետներ. նախաձեռնություն և գործարարություն

# ՈՒՇԱԴԻՐ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ԴԻՄՈՒՄՆԵՐԻՆ

Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ, ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ գործերի կառավարմանը աշխատավորներին մասնակից դարձնելը կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրներից է: Կուսակցությունն ամեն ինչ անում է, որպեսզի սովետական քաղաքացիները կարողանան լիովին օգտվել իրենց իրավունքներից՝ մասնակցել արտադրության և հասարակության զարգացման հարցերի լուծմանը, պայքարել սոցիալիստական բարոյականության նորմերից և սկզբունքներից ամեն տեսակի շեղումների դեմ, քննադատել թերությունները և անմիջականորեն մասնակցել դրանց վերացմանը: Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների հետ աշխատավորների կապի լավագույն միջոց են նրանց նամակներն ու դիմումները: Եվ օրինաչափ է, որ ՍՄԿԿ XXVII համագումարը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, ժողովրդի ինքնակառավարման ապահովման գործում կարևորեց նաև քաղաքացիների դիմումների և առաջարկությունների, հասարակական կարծիքի դերը և խնդիր դրեց արմատապես բարելավել ու կատարելագործել դրանց հետ տարվող աշխատանքը: Այդ կապակցությամբ ընկ. Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ նշեց. «Մենք պետք է է՛լ ավելի լավ օգտագործենք ուղղակի դեմոկրատիայի զարգացման այնպիսի հուսալի կանալներ, ինչպիսիք են քաղաքացիների ժողովները, ընտրողների պատվիրանները, աշխատավորների նամակները, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, հասարակական կարծիքը բացահայտելու, մասսաների պահանջներին ու տրամադրություններին օպերատիվ կերպով, զգայուն արձագանքելու բոլոր միջոցները»:

Քաղաքացիներն իրենց դիմումներում ու նամակներում լիովին պաշտպանում են վերակառուցման, սոցիալիստական դեմոկրատիայի խորացման գործում արմատական փոփոխությունների կուսակցության մշակած կուրսը և սուր քննադատության են ենթարկում այն ամենը, ինչը խոչընդոտ է վերակառուցմանը: Նամակներում նրանք բարձրացնում են հասարակական հնչեղության հարցեր, առաջարկություններ ու դիտողություններ, որոնք հաշվի են առնվում Գերագույն սովետի նախագահության, մշտական հանձնաժողովների գործունեության մեջ, ինչպես նաև սոցիալ-տնտեսական զարգացման պլաններում՝ սովետների ու նրանց մարմինների որոշումները մշակելու և ընդունելու ժամանակ:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1968 թվականի ապրիլի 12-ի հրամանագրում նշված է, որ սովետական հասարակարգի արդի պայմաններում գանգատները, որպես կանոն, մի ձև են քաղաքացիների իրավունքների և օրենքով պաշտպանվող նրանց շահերի խախտման փաստերն արձանագրելու համար, միջոց են այդ խախտումները վերացնելու և կանխելու համար: Դրանք նաև վկայում են պետական ու հասարակական շատ մարմինների աշխատանքում տակավին գոյություն ունեցող լուրջ թերությունների մասին:

---

ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԵՐԳԵՅ ՀԱԶԱՐԱՊԵՏԻ— Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության բաժնի վարիչ

Պաշտոնատար անձինք քաղաքացիների առաջարկություններին, դիմումներին ու գանգատներին ընթացք տալիս պարտավոր են խորամուխ լինել դրանց էության մեջ, անհրաժեշտության դեպքում պահանջել հարկավոր փաստաթղթեր, տեղերում ստուգումներ անցկացնել և ձեռնարկել հարցի օբյեկտիվ լուծման միջոցներ:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հասցեով 1987 թվականին քաղաքացիներից ստացվել են 5.280 դիմում: Բաժիններում կատարված ընդունելությանը մասնակցել է 4.434 քաղաքացի, ընդ որում 1.118-ին ընդունել է նախագահության ղեկավարությունը:

Նախագահության ապարատի աշխատողները կանոնավոր կերպով անցկացնում են աշխատավորների նամակների, գրավոր ու բանավոր դիմումների քննարկումներ և հսկողություն սահմանում դրանցում բարձրացվող հարցերի լուծման նկատմամբ: Ընդունելությունը հիմնականում կատարում են մեր՝ քաղաքացիների ընդունելության և աշխատավորների նամակների քննարկման վերահսկողության բաժնի աշխատողները աշխատանքային օրվա բոլոր ժամերին: Սակայն ամենօրյա ընդունելությամբ զբաղվում են նաև մյուս բաժինների վարիչները: Իսկ շաբաթվա երեք օրերին նրանց ընդունում է նախագահության ղեկավարությունը:

Ընդ որում ըստ սահմանված կարգի նախագահության ապարատում ստացված դիմումների բովանդակության, դրանց բնույթի մասին իրազեկ են պահվում նախագահության նախագահը, նրա տեղակալը կամ նախագահության քարտուղարը, ապա նրանց գրավոր հանձնարարությունից հետո դիմումներին համապատասխան ընթացք է տրվում: Առավել ուշագրավ դիմում-գանգատները, ինչպես նաև վերադաս մարմիններից ուղարկվող նամակները վերցվում են հսկողության տակ, ստուգվում Գերագույն սովետի դեպուտատների, նախագահության անդամների և ապարատի աշխատողների միջոցով:

Քաղաքացիների անձնական ընդունելության, նրանց դիմում-գանգատներին համապատասխան ընթացք տալու և տեղերում հարցերը կոնկրետ կերպով լուծելու գործին զգալիորեն նպաստում է նաև հանրապետությունում դեպուտատի միասնական օր սահմանելը, որի ընթացքում միայն վերջին մեկուկես տարվա ընթացքում դեպուտատների մոտ անձնական ընդունելության է եղել 9.567 քաղաքացի:

Վերջին տարիներին ուսումնասիրվել և նախագահության քննարկմանն է ներկայացվել քաղաքացիների դիմումներին ընթացք տալու վերաբերյալ օրենսդրության պահանջների կատարման աշխատանքը՝ հանրապետության շրջանային, քաղաքային սովետների գործկոմներում, մի շարք գերատեսչություններում և կազմակերպություններում:

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության որոշմանը համապատասխան նրա ղեկավարությունը, նախագահության անդամները և բաժինների վարիչները անհատական ընդունելություններ են կատարում նաև շրջանային, քաղաքային գյուղական և ավանային սովետների գործկոմներում, ձեռնարկություններում, հիմնարկներում, կոլտնտեսություններում, սովխոզներում: Նրանք 1987 թ. տեղերում ընդունել են ավելի քան 22.300 քաղաքացի:

Նախագահությունում ստացված դիմումների 28 տոկոսը վերաբերում է օրինականության և իրավակարգի ապահովմանը: Դրանցում քաղաքացիները պահանջներ են ներկայացնում իրենց իրավունքների և օրինական շահերի պաշտպանության անհրաժեշտության վերաբերյալ, հաղորդում չարաշահումների, սոցիալիստական սեփականության հափշտակումների, հետաքննության ընթացքում տեղի ունեցող քաշքշուկի փաստերի մասին, խնդրում վերանայել դատարանների վճիռները: Այս առնչությամբ նախագահությունը անդրադարձել է հանրապետության իրավապահպան մարմիններում քաղաքացիների նամակներն ու գանգատները քննարկելու պրակտիկային և արձանագրել, որ թերություններ կան ինչպես դրանք ժամանակին քննարկելու առումով, այնպես էլ քննարկումների որակի հարցում: Իրավապահպան մարմինների ղեկավարությանը հանձնարարվել է մշակել և իրականացնել միջոցառումներ աշխատավորների նամակների ու դիմումների հետ տարվող աշխատանքը բարելավելու և կատարելագործելու համար, սահմանել խիստ կարգ, որի պայմաններում բացառվեն դիմումների ձևական-բյուրոկրատական քննարկումները, խուսագրությունների փաստերը, դիմողին տրվի հստակ պատասխան, հիմնավորվի նրա խնդրանքի օրինական կամ ոչ օրինական լինելը, համոզիչ կերպով նշվի գանգատների բավարարման կամ մերժման շարժառիթները: Նրանց առաջարկվել է գործուն վերահսկողություն սահմանել ստացվող նամակների հաշվառման նկատմամբ, բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունը դրանց պատասխանների հավաստիության համար, օպերատիվ կարգով քննարկել ապարատում քաղաքացիների նամակներին ու դիմումներին ընթացք տալու հարցը, պարբերաբար ընդհանրացնել այդ աշխատանքը և արդյունքները քննարկել կոլեգիայի նիստերում:

Աշխատավորների դիմումների ու նամակների հետ տարվող աշխատանքի արմատական բարելավումը պետք է դառնա սովետական և տնտեսական մարմինների գործունեության գլխավոր խնդիրներից մեկը: Նրանք պարտավոր են մշտապես զբաղվել բնակավայրերի սոցիալական զարգացման, բնակչության աշխատանքային պայմանների կարգավորման, նրան մատուցվող բազմազան սպասարկումների մակարդակը բարձրացնելու հարցերով: Սակայն, ցավոք, ամենուրեք չէ, որ ժամանակին հոգ են տանում այդ ամենի մասին: Հենց այն հանգամանքը, որ մեր հանրապետությունից ավելի շատ նամակներ, դիմումներ ու գանգատներ են ուղարկվում Մոսկվա, ինքնին ցույց է տալիս, որ մեր շատ վերադաս մարմիններ պատշաճ ուշադրություն չեն նվիրում աշխատավորների դիմումներում առաջ քաշված պահանջների կատարմանը: Ստուգումներից պարզվել է, որ առանձին կազմակերպություններում դիմում-գանգատներին ընթացք տալու գործը հաճախ վստահվում է երկրորդական աշխատողների, որոնք դրանք գրանցում են անփութորեն, ժամանակին իրազեկ չեն պահում ընթացքին ու արդյունքներին կամ տալիս են ոչ համոզիչ պատասխան, դիմում-գանգատներ ծնող պատճառների մասին չեն կազմում ամփոփագիր և չեն կատարում քաղաքացիների ընդունելության և բանավոր գանգատների հաշվառում:

Քաղաքացիների ընդունելությունից, ստացված նամակներից և կատարված ստուգումներից պարզվում է, որ առանձին տեղական սովետներում, մինիստրություններում, գերատեսչություններում և հիմնարկներում դեռևս անհոգի վերաբերմունք գոյություն ունի քաղաքացիների դիմում-գանգատներին ընթացք տալու նկատմամբ: Դրա հետևանքով տեղիք է տրվում դիմում-գանգատների հոսքի: Կուսակցությունը խիստ դատապարտում է նման մոտեցումը՝ ելնելով Լենինի այն ցուցումից, որ եթե մենք բարեխղճորեն կարգապահություն ենք սովորեցնում բանվորներին ու գյուղացիներին, ապա մենք պարտավոր ենք սկսել հենց մեզնից:

Ծատ են դիմում-գանգատներ ծնող պատճառները: Դրանցից մեկը կապված է աշխատանքային օրենսդրության խախտման հետ: Հաճախ է պատահում, որ առանձին հիմնարկների ղեկավարներ անհիմն կերպով, անտեսելով արհմիութենական ֆաբրիկա-գործարանային ու տեղական կոմիտեների կանոնադրության 38-րդ հոդվածը, աշխատողներին հեռացնում են աշխատանքից, և դրա հետևանքով մարդիկ բախում են իրավասու մարմինների դռները՝ իրենց օրինական իրավունքը վերականգնելու համար: Այսպես, աշխատանքային վեճերի հարցով 1987 թ. հանրապետության ժողովրդական դատարանները 362 վճիռ են արձակել և 194 աշխատողների (կամ դիմողների 53,6 տոկոսը) վերականգնել նախկին աշխատանքում, ընդ որում հարկադիր պարապուրդի համար հիմնարկ-ձեռնարկություններից գանձվել է 27.674, իսկ պաշտոնատար անձանցից՝ 4.052 ռուբլի: Բազմաթիվ օրինակներից նշեմ մեկը: ՀՍՍՀ «Գիտելիք» ընկերության գիտատեխնիկական նվաճումների պրոպագանդայի և ներդրման տան հրատարակչության խմբագրական ծառայության ավագ խմբագիր Գ. Ասրյանը 1987 թ. հուլիսի 2-ին դիմել էր աշխատանքում վերականգնվելու և հարկադիր պարապուրդի հարցով: Երևան քաղաքի Սովետական շրջանի ժողդատարանը հուլիսի 14-ի նիստով նրան վերականգնեց նախկին աշխատանքում և հարկադիր պարապուրդի համար դիրեկտոր Ս. Հակոբյանից հօգուտ հայցվորի գանձեց 390 ռուբլի: Մեկ ուրիշ փաստ. շատ հաճախ մարդկանց աշխատանքի են ընդունում՝ չպահանջելով աշխատանքային գրքույկ կամ այն չի լրացվում սահմանված կարգով: Այդ բնույթի գանգատների հիման վրա ստուգվել և պարզվել է, որ երկար տարիներ նույն տեղում աշխատող շատ-շատերը չունեն աշխատանքային գրքույկներ: Եղել են նաև դեպքեր, երբ մարդիկ ազատվել, գնացել են, բայց աշխատանքային գրքույկները նրանց չեն հանձնվել:

Դիմում-բողոքների պատճառ է դառնում այն հանգամանքը, որ առանձին արդյունաբերական ձեռնարկություններում առողջության համար վտանգավոր տեղամասերում աշխատող բանվորների հրամանները ճիշտ չեն ձևակերպում, որի հետևանքով չի կենսագործվում պետական կենսաթոշակների մասին ՍՍՀՄ օրենքը արտոնյալ պայմաններով և չափով կենսաթոշակներ նշանակելու վերաբերյալ:

Բազմաթիվ դիմում-գանգատներ են ստացվում այն մասին, որ անբավարար է կենսագործվում գյուղական վայրերում աշակերտներին տրանսպորտով անվճար փոխադրելու մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1968 թ. հուլիսի 9-ի

հրամանագիրը: Այդ առումով վիճակը հատկապես վատ է Ապարանի, Թալինի, Սիսիանի, Հրազդանի, Արարատի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ շրջաններում: Ավտոձեռնարկությունների ղեկավարները անտարբերությամբ են վերաբերվում այդ գործին:

Դիմումների և գանգատների հոսքը մեծ է նաև հետևյալ պատճառով. քաղաքաշինության նպատակով իրացվում են քաղաքացիների սեփական տները, կնքվում են պայմանագրեր՝ տեղում բնակարան հատկացնելու մասին, մինչդեռ իրացումից հետո անցնում է 3—4 և ավելի տարի, բայց նրանց բնակարան չի հատկացվում: Միանգամայն հասկանալի է, որ տնատերերը տարիներ շարունակ վճարում են մասնավոր բնակարանի վարձ և նրանց մոտ առաջանում է օրինական դժգոհություն:

Բազմաթիվ դիմումներ և գանգատներ են ստացվում բնակարան ստանալը ձըգձգելու, բնակելի շենքերը մեծ թերություններով շահագործման հանձնելու, ջրամատակարարման, վերելակների անկանոնության, ջեռուցման, լուսավորության ցանցերի վատ վիճակի, թաղամասերի անբարեկարգ, հակասանիտարական դրության և այլ հարցերի վերաբերյալ:

Առանձին հիմնարկների և ձեռնարկությունների ղեկավարներ, խախտելով գոյություն ունեցող օրենքները, առանց համապատասխան սովետների և գերատեսչությունների համաձայնության, պայմանագրային կարգով աշխատանքի են վերցնում մարդկանց՝ 3 տարվա ընթացքում նրանց համապատասխան բնակտարածությամբ բավարարելու պայմանով, իսկ երբ լրանում է ժամանակը և վերջիններս բնակարան չեն ստանում, ստիպված դիմում են վերադաս մարմիններին:

Ուսումնասիրություններից պարզվել է նաև, որ հանրապետությունում Հայրենական մեծ պատերազմի հաշմանդամները, զոհված զինծառայողների ընտանիքների անդամները դեռևս բավարար չափով չեն օգտվում օրենքով իրենց վերապահված արտոնություններից: Այդ առնչությամբ ստուգումներ են կատարվել Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում, բացահայտվել են թերություններ՝ դիմողներին բնակարաններ հատկացնելու, աշխատանքում տեղավորելու, կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու գործում: Այդ հարցը քննության է առնվել Գերագույն սովետի նախագահության նիստում և վճռական միջոցներ են ձեռնարկվել կուսակցության և կառավարության որոշումները անշեղորեն կենսագործելու նպատակով:

Դեռևս պատշաճ բարձրության վրա չէ աշխատավորների դիմումներին և գանգատներին ընթացք տալու վերահսկողությունը: Դրանք հիմնականում թողնվում են գործկոմի տարբեր բաժինների և վարչությունների իրավասությանը, իսկ նրանք էլ այդ գործը կատարում են ըստ իրենց հայեցողության: Դատապարտելի է նաև այն արատավոր պրակտիկան, երբ քաղաքացիների դիմումներն ու գանգատները վերադարձվում են այն անձանց, որոնց դեմ է ուղղված բողոքը: Դա նույնպես տեղիք է տալիս օրինական դժգոհությունների:

Դեռևս զգալի է բնակարանային-կոմունալ տնտեսության հարցերին վերաբերող ստացվող դիմումների քանակը: Դրանցում քաղաքացիները գանգատվում են բնակարանային պրոբլեմի դանդաղ լուծման, բնակելի տների գործարկման ժամկետների խախտման, դրանք ժամանակին ձմռանը չնախապատրաստելու մասին: Այդպիսի նամակներ նախագահությունում համեմատաբար շատ են ստացվել Սովետական, Լենինյան, Սպանդարյանի, Ծահումյանի, Աբովյանի, Արտաշատի, Մարտունու, Էջմիածնի, Վարդենիսի շրջաններից:

Տարեցտարի ավելանում են նաև աշխատանքի տեղավորվելու և աշխատանքից ազատվելու մասին նամակները: Նախագահությունում դիմումներ են ստացվել նաև ներման, պարգևատրումների, քաղաքացիության, սոցիալական ապահովության և այլ հարցերի վերաբերյալ: Ընդ որում զգալի են կրկնվող և կոլեկտիվ դիմումները: Իսկ դա ցույց է տալիս, որ համապատասխան մարմինները անբավարար են կատարում իրենց պարտականությունները, անհրաժեշտ հոգածություն չեն դրսևորում մարդկանց հուզող հարցերը լուծելու գործում:

ՍՍՀՄ սահմանադրության 147-րդ հոդվածում ասվում է, որ իրենց լիազորությունների շրջանակներում ժողովրդական դեպուտատների տեղական սովետներն ապահովում են տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացումն իրենց տերիտորիայում: Նրանք վերահսկողություն են իրականացնում այդ տերիտորիայում գտնվող վերադաս ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների կողմից օրենսդրության պահպանման նկատմամբ, կոորդինացնում և վերահսկում են նրանց գործունեությունը հողօգտագործման, բնության պահպանության, շինարարության, աշխատանքային ռեսուրսների օգտագործման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, բնակչության սոցիալ-կուլտուրական, կենցաղային և այլ սպասարկման բնագավառում:



ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից, մասնավորապես XXVII համագումարից հետո Գերագույն սովետի նախագահությունը է՛լ ավելի է ուժեղացրել հսկողությունը տեղական սովետներում քաղաքացիների դիմումների հետ տարվող աշխատանքի նկատմամբ: Գերագույն սովետի, շրջանային, քաղաքային, գյուղական, ավանային սովետների դեպուտատների մասնակցությամբ քաղաքացիների ընդունելության և աշխատավորների նամակների քննարկման մեր բաժինը նախապատրաստել և նախագահության քննարկմանն է ներկայացրել ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո քաղաքացիների դիմումներում բարձրացված սոցիալական, բնակարանային-կոմունալ տնտեսության հարցերի լուծման նպատակով ժողովրդական դեպուտատների Հոկտեմբերյանի շրջանային և Դիլիջանի քաղաքային սովետների կատարած աշխատանքը: Նախագահության քննարկման առարկա են դարձել նաև վերակառուցման և պետական կյանքի դեմոկրատացման պայմաններում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետում, նրա նախագահությունում և ժողովրդական դեպուտատների տեղական սովետներում 1987 թ. քաղաքացիներից ստացված առաջարկությունների, դիմումների ու գանգատների հետ տարվող աշխատանքի կատարելագործման, Արտաշատի շրջանային և քաղաքային սովետների գործկոմներում բնակարանային, կոմունալ-կենցաղային պահանջների վերաբերյալ քաղաքացիների դիմումների քննարկման ժամանակ սոցիալական արդարության և հրապարակայնության սկզբունքների պահպանման հարցերը: Նշվել են այդ ասպարեզներում կատարված դրական աշխատանքը, բացահայտվել են թերություններն ու բացթողումները:

Այդ քննարկումները ինքնանպատակ չեն եղել, մեր բաժինը հետևել է ընդունած որոշումների կատարմանը և համապատասխան զեկուցագրեր ներկայացրել նախագահության ղեկավարությանը: Այսպես, որոշումից մեկ տարի հետո Գերագույն սովետի դեպուտատներ, նախագահության անդամ Լ. Իսկանդարյանի, մշտական հանձնաժողովի անդամ Հ. Ալեքսանյանի, տեղական սովետների դեպուտատներ Ս. Կարապետյանի, Մ. Ավետիսյանի, Ա. Մելիքսեթյանի մասնակցությամբ ուսումնասիրել ենք նախագահության ընդունած որոշման կատարման ընթացքը Հոկտեմբերյանի շրջանում: Պարզեցինք, որ Մեծամոր ավանում արդեն շահագործման է հանձնվել «Գարուն» արտադրամիավորման կարի ֆաբրիկան, մշակույթի պալատը, մարզահամալիրը, 280 տեղանոց մանկապարտեզը: Շրջանի հարյուրավոր ընտանիքներ ստացել են տնամերձ հողամասեր, գազիֆիկացրել բնակարանները: Ուժեղացել է ուշադրությունը սոցիալական օբյեկտների նորոգման նկատմամբ. 1986 թ. 32-ի դիմաց, 1987 թ. նորոգվել է 50 օբյեկտ: ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ հաստատվել է շրջանային հիվանդանոցի և պոլիկլինիկայի շենքի կառուցման նախագիծը: Ուսումնասիրությունը նաև ցույց տվեց, որ տրանսպորտի, հասարակական սննդի, առևտրի, կենցաղսպասարկման ոլորտի ձեռնարկությունների աշխատանքի բարելավման վերաբերյալ որոշման առանձին կետերի կատարման գործում դեռևս վճռական փոփոխություններ չեն նկատվում:

Իհարկե, ճշմարտության դեմ մեղանչած կլինենք, եթե ասենք, թե բոլոր տեղական սովետներն են հետևողականորեն կատարում իրենց վերապահված սահմանադրական իրավունքներն ու պարտականությունները: Նրանց թույլ հսկողության հետևանքով ժամանակին կամ բնավ չեն լուծվում սոցիալական զարգացման շատ հարցեր, որոնք կենսական անհրաժեշտություն են աշխատավորների համար: Այստեղից էլ ծագում են դժգոհությունները, որոնք տեղիք են տալիս բողոքների ու դիմումների հոսքի: Բավական է նշել, որ միայն 1987 թվականին տեղական սովետների բոլոր օղակներում ստացվել է 149.377 դիմում, ընդունելության է եղել 184.991 մարդ: Առավել մեծ քանակ են կազմում բնակարանային տնտեսության հարցերին նվիրված դիմումները: Բնակչության կոմունալ սպասարկման նկատմամբ ցուցաբերվող անբավարար ուշադրության պատճառով բազմաթիվ գանգատներ են ստացվում անկանոն ջրամատակարարման և ջերմամատակարարման, վառելիքով անբավարար ապահովման, գազիֆիկացման բացակայության, բնակելի շենքերի շրջակայքի անբարեկարգության, ճանապարհների շինարարության ու նորոգման վատ որակի մասին: Այդ բնույթի դիմումների աճ կա Սովետական, Իջևանի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի, Արագածի շրջանային սովետներում:

Տարօրինակն այն է, որ հաճախ ժամանակին չեն լուծվում նաև բնակչության համար շատ կարևոր այնպիսի հարցեր, որի համար կան լայն հնարավորություններ: Այս-

պես, նախագահության միջամտությունից հետո միայն մի շարք քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներում (Երևանի, Իջևանի, Արտաշատի, Լենինյան, Սպանդարյանի, 26 կոմիսարների) դրական լուծում է ստացել տարածքի սանիտարական վիճակի և բարեկարգման, կանաչապատման, էլեկտրիֆիկացման ու ռադիոֆիկացման վերաբերյալ դիմումներում բարձրացված հարցերի կեսը:

Բնակչության սպասարկման ցածր մակարդակի առիթով զգալիորեն շատ են տրանսպորտի և կապի, առևտրի, հասարակական սննդի և կենցաղային սպասարկման հարցերի վերաբերյալ դիմումները: Դրանք վկայում են, որ հիշյալ բնագավառներում տեղ գտած թերությունները դանդաղ են վերացվում հատկապես Ամասիայի, Ազիզբեկովի, Ապարանի, Սպիտակի, Եղեգնաձորի, Արտաշատի, Ղուկասյանի, Մեղրու, Բաղրամյանի, Գորիսի, Կրասնոսելսկի, Ծամշադինի շրջանային ու գյուղական սովետների գործկոմներում:

Գյուղական վայրերում հողօգտագործման և անձնական օժանդակ տնտեսության հոգսերը հաճախ են դիմումների ու բողոքների առիթ դառնում: Դրանց առատությունը վկայում է, որ բազմաթիվ նամակներ ու դիմումներ շոշափում են ոչ թե անձնական, այլ հասարակական հրատապ նշանակության հարցեր: Դրանցում խնդրանքներ ու ցանկություններ են արտահայտվել դպրոցների, մանկապարտեզների, առողջապահության, կուլտուրայի ու սպորտի օբյեկտների նյութատեխնիկական բազան ամրապնդելու, ուսումնադաստիարակչական աշխատանքի, մարդկանց բուժսպասարկման, հանգստի կազմակերպման մակարդակը բարձրացնելու մասին: Այդպիսի պահանջների հիման վրա նախագծվել ու կառուցվել են դպրոցական ու նախադպրոցական հիմնարկների, մշակույթի և առողջապահության շենքեր, բացվել են առևտրի, հասարակական սննդի ու կենցաղային ծառայության օբյեկտներ:

Տարիներ շարունակ քաղաքացիների առաջ քաշած այս կարգի հարցերի լուծման նպատակով սովետների գործկոմներում կազմվում է միջոցառումների պլան և հետևողական հսկողություն է սահմանվում դրանց իրագործման նկատմամբ: Այսպես, քաղաքացիների իրավացի պահանջների ու առաջարկությունների հիման վրա 1987 թ. Երևանի Սովետական շրջանում բացվել են № 193 դպրոցը, երեք մսուր-մանկապարտեզ, Մեղրու շրջանում՝ Կուրիս և Վահրավար գյուղերի փակված դպրոցների դռները, Ծվանիձոր գյուղում կառուցվեցին մանկապարտեզի և փոստի բաժանմունքի շենքերը, Գուգարքի շրջանի Ծահումյան գյուղում ընթացքի մեջ է 90 տեղանոց մանկապարտեզի, Հայդառլիում՝ միջնակարգ դպրոցի, Դեբետում՝ 300 տեղանոց ակումբի շենքի շինարարությունը: Հատկացվել է 3,6 հեկտար հողամաս Գուգարքի շրջկենտրոնում 250 մահճակալով կենտրոնական շրջանային հիվանդանոց և պոլիկլինիկա կառուցելու համար: Ստեփանավանի շրջանում մշակվում է «Առողջապահություն» կոմպլեքսային ծրագիր, որի իրականացմամբ զգալիորեն կբարելավվեն գյուղական ամբուլատորիաների և ֆելդշերամանկաբարձական կետերի շենքային պայմանները:

Տեղական սովետներում աշխատանքի հարցերով ստացվել են 13.991 խնդրանքներ, առաջարկություններ ու գանգատներ, որոնց 70 տոկոսը դրական լուծում է ստացել: Մարտունու, Վարդենիսի, Արագածի, Սիսիանի, Արարատի, Ղափանի, Աշտարակի, Ղուկասյանի շրջանային սովետներում դրանց զգալի քանակի առկայությունը գործադիր կոմիտեների անբավարար աշխատանքի վկայությունն է:

Սոցիալական ապահովությունը աշխատավորներին հուզող և պետական կարևորության հարց է, որի լուծման գործում կան բավականաչափ թերություններ: Եվ բնական է, որ շարունակվում են դիմումներ ստացվել սոցիալական ապահովության մարմինների աշխատանքի թերությունների, կենսաթոշակների, հաշմանդամության խմբերի որոշման քաշքշուկի և այլ հարցերի վերաբերյալ: Հետևաբար, պահանջվում է այս ասպարեզում կատարել արմատական բարեփոխումներ, մշտապես հոգ տանել աշխատավորների պահանջները ժամանակին բավարարելու մասին:

Ավելի քան 28.000 առաջարկություններ, դիմումներ ու գանգատներ վերաբերում են օրինականության և իրավակարգի ապահովմանը: Դրանց 74,6 տոկոսը վերաբերում է գրանցման հարցերին, հաղորդումներ պարունակում քաղաքացիական կացության ակտերի գրանցման անօրինական մերժումների, նոտարական գործողությունների խախտումների մասին: Բազմաթիվ դիմումներում շոշափվում են սոցիալիստական սեփականության հափշտակումների, շորթումների, կաշառքի, պաշտոնեական դիրքի չարաշահումների փաստեր: Դրանցում ցանկություն է արտահայտվում՝ ուժեղացնելու հիշյալ երևույթների դեմ պայքարը, առաջ քաշվում ամենուրեք կոմունիստական բարոյականության նորմերի հաստատման անհրաժեշտությունը: Մարդկանց գոհացնում



է այն հանգամանքը, որ կուսակցության և կառավարության համապատասխան որոշումներից հետո կրճատվել են այնպիսի բացասական երևույթներ, ինչպիսիք են ոգելից խմիչքների չարաշահումը, թափառաշրջիկությունը, խուլիգանությունը: Եվ, բնականաբար, խիստ նվազել են այդ առթիվ ստացվող դիմում-բողոքները: Նախորդ տարիների համեմատությամբ, օրինակ, 1987 թվականին 36 տոկոսով պակասել է դրանց քանակը:

Ելակետ ընդունելով կուսակցության առաջադրած վերակառուցման կուրսի պահանջները՝ տեղական սովետները ձեռնարկել են քաղաքացիների դիմումների հետ տարվող աշխատանքի բարելավման գործնական միջոցներ: Գանգատներ հարուցող պատճառների վերացումը, սովետների աշխատանքի մասին բնակչությանը հաղորդում տալը, գործկոմների ղեկավարների ու պատասխանատու աշխատողների հանդիպումները աշխատավորական կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի, բաց նամակի օրերը, վերահսկողության ուժեղացումը և քաղաքացիների դիմումների հետ տարվող աշխատանքի մյուս ձևերը դրական ներգործություն են ունենում դրանց քննարկման արդյունավետության բարձրացման և ընթացք տալու վրա: Անցած տարի, օրինակ, դիմումներում առաջադրված հարցերի 65,7 տոկոսը դրականորեն է լուծվել:

Դրա հետ մեկտեղ, շրջանային և քաղաքային սովետների գործկոմներում կատարված ուսումնասիրությունները վկայում են, որ նրանց ենթակա մարմինների աշխատանքում դեռևս առկա են վրիպումներն ու թերությունները: Անբավարար է աշխատանքը սոցիալական հարցերի լուծման, քաղաքացիների գանգատներ առաջացնող պատճառները ժամանակին վերացնելու ասպարեզում: Արարատի, Ղափանի, Հոկտեմբերյանի քաղաքային, Աբովյանի, Արարատի շրջանային սովետներում ոչ միշտ է պատշաճ վերահսկողություն իրականացվում դիմումներում առաջադրված հարցերի փաստական լուծման նկատմամբ: Մի շարք գործկոմներում (Երևանի, Լենինականի քաղաքային, Սպիտակի, Եղեգնաձորի, Մարտունու, Արարատի շրջանային սովետների) տեղ են գտել սահմանված ժամկետների խախտումներ, ձևականություն, խուսագրություններ քաղաքացիներին և նախագահությանը ուղարկվող պատասխաններում: Սովետների գործկոմների, նրանց բաժինների ու վարչությունների աշխատանքի թերությունները վերադաս կազմակերպություններին, մասսայական ինֆորմացիայի միջոցներին ուղարկվող նամակ-բողոքների թիվն ավելանալու պատճառներից են:

Սովետներում ստացվող դիմումները միաժամանակ խոսում են այն մասին, որ աշխատավորները հավատում, հույսեր են կապում նրանց հետ սոցիալական հարցերի լուծման գործում: Նրանք հավատում են, որ սովետները առավել լիակատար կօգտագործեն իրենց լիազորություններն ու հնարավորությունները:

---

# ԲՈԳԴԱՆ ԿՆՈՒՆՅԱՆՑԸ ԵՎ ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՀԱՐՑԸ

Բոգդան Կնունյանցը հեղափոխական ականավոր գործիչ էր: 1897 թ. մտնելով Վ. Ի. Լենինի հիմնադրած Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» մեջ՝ դառնում է նրա հավատարիմ զինակիցներից մեկը, իր ամբողջ կյանքը նվիրում աշխատավոր ժողովրդի ազատագրման վեհ գործին:

Բ. Կնունյանցը Անդրկովկասում իր գաղափարակիցների հետ միասին հիմնում է սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ, ղեկավարում հեղափոխական շարժումները, հրապարակում պարբերականներ և ակտիվ թղթակցում լենինյան «Իսկրային»՝ հաղորդելով արժեքավոր տեղեկություններ կովկասյան կյանքից:

1902 թ. կեսերին Ստ. Շահումյանի, Ա. Զուրաբյանի և Ա. Խումարյանի հետ միասին Բ. Կնունյանցը Թիֆլիսում հիմնադրում է «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը», իսկ հոկտեմբերին լույս ընծայում նրա օրգան «Պրոլետարիատ» թերթը: Հենց առաջին համարում որպես առաջնորդող զետեղվում է այդ միության «Մանիֆեստը»: Նրանք հայտարարում են, որ իրենց «Միությունը» Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության ճյուղերից մեկն է և, նրա հետ միանգամայն համերաշխ, «կռվելու է հանուն Ռուսիայի պրոլետարիատի շահերի՝ ընդհանրապես և հայկականի-մասնավորապես» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, էջ 43): Շարադրելով իրենց ծրագրի հիմնական սկզբունքները՝ «Մանիֆեստի» հեղինակները, այդ թվում նաև Բ. Կնունյանցը, կանգ են առնում նաև գյուղացիական հարցի վրա և ցույց տալիս, որ ապրանքադրամական հարաբերությունների զարգացումը գյուղում առաջացրել է սոցիալական շերտավորում: Մի կողմից երևան են եկել հարուստներ, գյուղական բուրժուաներ, մյուս կողմից՝ ընչազուրկներ՝ գյուղական պրոլետարներ: Այդ պրոցեսը գնալով ավելի ու ավելի է խորանում և գյուղացիությանը դատապարտում աղքատության ու թշվառության: Դրությունից դուրս գալու համար անհրաժեշտ էր արմատապես հեղաշրջել գոյություն ունեցող կարգերը և ստեղծել հողի ու արտադրական գործիքների հասարակական սեփականություն: «Այդ նպատակը կարող է իրականացնել միմիայն յուր դասակարգային շահերը ըմբռնող պրոլետարիատը...» (նույն տեղը, էջ 47): «Մանիֆեստը», այդպիսով, նշմարում էր, որ գյուղացիության հարցը սերտորեն կապված է պրոլետարիատի, ռուս պրոլետարիատի հեղափոխության հաղթանակի հետ:

Բ. Կնունյանցը գյուղացիական հարցի մասին հատուկ աշխատություն չի գրել, բայց տարբեր առիթներով անդրադարձել է դրան՝ մեկնաբանելով այն մարքս-լենինյան դիրքերից: Դեռ 1903 թ. ՌՍԴԲԿ II համագումարում նա պահանջեց, որ կուսակցության ծրագրում պետք է մտցնել ագրարային հարցը և մերժեց օպորտունիստների ու էկոնոմիստների տեսակետը, որոնք գտնում էին, թե դա ոչ թե սոցիալ-դեմոկրատիայի, այլ բուրժուազիայի ու բուրժուական հեղափոխության խնդիրն է: Բ. Կնունյանցը հարց դրեց պայքարել ճորտատիրության բոլոր մնացուկների դեմ և բռնագրավել թե կալվածատիրական, թե վանքապատկան հողերը՝ հօգուտ գյուղացիության: Համագումարը չընդունեց նրա պահանջը, բայց հետագայում այն «կազմեց կուսակցության ագրարային ծրագրի բաղկացուցիչ մասերից մեկը» (Հ. Ինճիկյան, Եվ հեղափոխությունը դառեց: Երևան, 1978, էջ 44):

Վ. Ի. Լենինը բարձր գնահատեց Բ. Կնունյանցի (Ռուսովի) այդ կողմնորոշումը՝ գրելով, որ «Կովկասյան պատգամավորներն այստեղ միանգամայն ճիշտ դիրք էին գրավել զգալի չափով, հավանորեն, շնորհիվ այն բանի, որ ճորտատիրության բազմաթիվ մնացորդների տեղական ձևերին մոտիկից ծանոթ լինելը նրանց նախազգու-



…ագրը՝ է աբստրակտ-աշակերտական մերկ հակադրումներից, որոնք բավարարում էին Մախովներին» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 8, էջ 274):

Բ. Կնունյանցը համագումարում պաշտպանեց լենինյան տեսակետը գյուղացիական կոմիտեներ ստեղծելու հարցում, գտնելով, որ դրանք անհրաժեշտ են ինչպես ճորտատիրության մնացորդների դեմ պայքարելու, այնպես էլ օտրեզկաները (հողակտորները) վերադարձնելու համար: «Ինչու կապել գյուղացիական կոմիտեների ձեռքերը,— իրավամբ ասում էր նա,— թերևս նրանք ստիպված կլինեն բռնագրավել առանձին կալվածներ» (Հ. Ինճիկյան, նույն տեղը, էջ 44): Նրա այդ հարցադրումն ուներ տեսական ու գործնական կարևոր նշանակություն:

Գյուղացիական խնդրին Բ. Կնունյանցն անդրադարձավ նաև «Նոր թալան» հոդվածում, որը լույս տեսավ 1903 թ. հոկտեմբերին «Իսկրայում»: Նկարագրելով կովկասահայ բնակչության մասսայական ելույթները ցարական իշխանությունների դեմ, որոնք 1903 թ. հունիսի 12-ի օրենքով բռնագրավում էին հայոց եկեղեցապատկան շարժական ու անշարժ ունեցվածքը և դրանով նրանց կուլտուր-կրթական հաստատությունները զրկում նյութական միջոցներից, նա ցույց էր տալիս, որ այդ ելույթներին ակտիվ կերպով մասնակցեցին նաև գյուղացիները՝ անգամ «ամենախուլ անկյուններում»: Նրանք հայ բնակչության մյուս զանգվածների հետ միասին դիմում են կաթողիկոսին՝ խնդրելով՝ չզիջել ինքնակալական իշխանություններին, խոստանալով պաշտպանել նրան, «եթե գործը հասնի զինված ընդհարման»: Շուտով գյուղացիները խոսքից անցան գործի և շարժվեցին Էջմիածին՝ նպատակ ունենալով հայ բնակչության մյուս զանգվածների հետ միասին իշխանությունների դեմ կռվել «մինչև արյան վերջին կաթիլը»: Հատկանշական է, որ ճանապարհին նրանց թափորին միացան նաև ադրբեջանական գյուղացիները՝ հայտարարելով, որ իրենց պակաս անախորժություններ չի պատճառել ցարը» (Բոգդան Կնունյանց, Ընտիր երկեր, Երևան, 1978, էջ 79):

Այս հոդվածում Բ. Կնունյանցը շեշտում էր նաև գյուղացիական հարցի հետ կապված մի հանգամանք ևս, այն է՝ եթե հայ ազգայնական կուսակցությունները հունիսի 12-ի օրենքի կապակցությամբ կոչ էին անում պայքարել ոտնահարված ազգային իրավունքների ու ամբողջ ազգին հասցված վիրավորանքի համար, առաջարկում էին ««սգո զգեստ հագնել և ցույցի ժամանակ բարձրացնել սև դրոշակ», մի խոսքով՝ քարոզում էին պասիվ պայքար, ապա սոցիալ-դեմոկրատիան կոչ էր անում՝ «օգտագործել դժգոհությունը, այն հեղափոխական հունով ուղղել կառավարության դեմ և ինքնակալության հետ տեղի ունեցող բոլոր ընդհարումներում կանգնած լինել առաջին շարքերում» (նույն տեղը, էջ 78): Նա վճռականորեն դեմ էր պասիվ պայքարին և պահանջում էր «ոչ թե պաշտպանվել, այլ հարձակվել, ոչ թե լաց լինել, այլ պայքարել, հանդես գալ ոչ թե սգո սև դրոշակի ներքո, այլ՝ կարմիր, «հեղափոխական» դրոշակի ներքո»: Այսպիսով, սոցիալ-դեմոկրատիան հայ ժողովրդի, այդ թվում նաև գյուղացիական պայքարին տալիս էր ակտիվ ու նպատակասլաց բնույթ՝ այն ուղղելով համընդհանուր թշնամու՝ ինքնակալության դեմ:

Հայ ժողովրդի պայքարի, եկեղեցական գույքի ու սոցիալ-դեմոկրատիայի դիրքի մասին «Նոր թալան» հոդվածում հեղինակի առաջ քաշած դրույթները արժանացան «Իսկրայի» հավանությանը: 1903 թ. հոկտեմբերի 1-ի (14) համարում թերթը գրում էր. «Գոհունակությամբ նշում ենք, որ կովկասցի մեր ընկերները միանգամայն ճիշտ գնահատեցին հայկական եկեղեցական գույքի դեմ ցարիզմի ձեռնարկած արշավանքի քաղաքական նշանակությունը և իրենց օրինակով ցույց տվեցին, թե ընդհանրապես սոցիալ-դեմոկրատիան ինչպես պետք է վերաբերվի ամեն մի երևույթի նկատմամբ» (նույն տեղը, էջ 84):

Բ. Կնունյանցը պրոլետարիատի դերը աշխատավորության, այդ թվում՝ նաև գյուղացիության ազատագրության գործում ընդգծեց նաև իր «Մեր տակտիկայի և կազմակերպության մի քանի հարցեր» հոդվածում, որ լույս տեսավ 1903 թ. հոկտեմբերի 22-ին «Իսկրայում»: Մերկացնելով ազգայնական կուսակցությունների վարքագիծը, որոնք այսպես կոչված համազգային շահերը գերադասում էին դասակարգային շահերից և ձգտում էին ժողովուրդներին հակադրել իրար, նա պահանջում էր ազգային շահերը ենթարկել համադասակարգային շահերին և գտնում էր, որ Ռուսաստանի պրոլետարիատը, կանգնելով դրանց պաշտպանության ու ղեկավարության դիրքերում, **«կարող է դառնալ այն քաղաքական հզոր ուժը**, որ ընդունակ կլինի դառնալու երկրի բոլոր հեղափոխական ուժերի իսկական ավանգարդը և ի վերջո խորտակելու ինքնակալությունը» (նույն տեղը, էջ 95): Հեղինակի այս հոդվածը կա-

րևոր նշանակություն ունեցավ Կովկասի ոչ միայն պրոլետարիատի, այլև գյուղացիության դասակարգային ինքնագիտակցության արթնացման և բուրժուական կուսակցությունների, հատկապես հայ իրականության մեջ այդ շրջանում գերիշխող դիրքեր նվաճած դաշնակցության սխալ քաղաքականության քննադատության գործում:

1905 թ. հեղափոխությունը ցնցեց ինքնակալության հիմքերը և բազմապատկեց նրա դեմ պայքարողների բանակը: Բ. Կնունյանցը, որին այդ օրերին ցարական դատարանը դատում էր, հանդես եկավ մի համարձակ ճառով, որով մերկացրեց բռնապետության ներքին ու արտաքին հետադիմական քաղաքականությունը, շեշտեց նրա կործանման անխուսափելիությունը: «Մենք գտնվում ենք,— ասաց նա,— անհեղ, մեծ իրադարձությունների նախօրյակին: Պետերբուրգի պրոլետարիատի հերոսական ելույթից հետո, համառուսաստանյան հեղափոխական գործադուլներից հետո, չդադարող ագրարային հուզումներից հետո, վերջապես, կրթված հասարակության մինչ այդ իներտ զանազան խավերը ընդգրկած շարժումից հետո ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ ինքնակալության օրերը հաշված են»: Նա եզրափակեց իր խոսքը հետևյալ հայտարարությամբ. «Դե, դատեցեք, պպ. դատավորներ, իսկ մեզ ձեզ հետ միասին հեղափոխությունը կդատի» (նույն տեղը, էջ 112—113, 117):

Անձնուն լենինյանի այդ ճառը հրապարակվեց բոլշևիկյան անլեգալ «Վպերյոդ» շաբաթաթերթում 1905 թ. ապրիլի 17 (30)-ին՝ Վ. Ի. Լենինի ցուցումով «Դատ դատի դեմ» խորագրով և տարածվեց բոլոր կուսակցական կազմակերպություններում: Այն ագիտացիոն մեծ նշանակություն ունեցավ «ցարիզմի դեմ պրոլետարական հեղափոխության հաղթանակի համար մղված պայքարում» (Հ. Գ. Ինճիկյան, նշվ. աշխ. էջ 81):

«Ցարական մանիֆեստը ազատության մասին և մեր պահանջները» հոդվածում Բ. Կնունյանցը կրկին անդրադարձել է գյուղացիական հարցին: Այն լույս տեսավ անստորագիր, 1905 թ. հոկտեմբերի 20-ին (նոյեմբերի 2) «Իզվեստիա սովետա ռաբոչիխ դեպուտատով» թերթում: Մերկացնելով հոկտեմբերի 17-ի մանիֆեստի լիբերալ-բուրժուական բովանդակությունը՝ նա գրում էր, թե ինչ դեմոկրատիայի ու ազատության մասին կարող է խոսք լինել, երբ Ռուսաստանը դեռ գտնվում է կիսառազմական դրության մեջ, երբ ընտրական իրավունքից զրկված են ողջ պրոլետարիատը, ամբողջ ռուս ժողովուրդը, երբ 100 միլիոն գյուղացիությունը շարունակում է մնալ որպես կիսաազատ դաս, երբ մեր եղբայրները տառապում են բանտերում՝ որպես թե այլ և այլ, այդ թվում նաև գյուղացիական անկարգություններ կազմակերպելու համար (Բ. Կնունյանց, նշվ. աշխ., էջ 124):

Բ. Կնունյանցը պահանջում էր, հռչակել իսկական դեմոկրատական կարգեր, իսկական ազատություն, «անհապաղ վերացնել դասային արտոնությունները և գյուղացիներին իրավունքներով հավասարեցնել ռուսաստանյան մնացած բոլոր քաղաքացիներին»: Նա պահանջում էր «աշխատավոր ժողովրդի ձեռքը հանձնել ամբողջ հողը և արտադրության բոլոր տեսակները», անհապաղ հետ կանչել զինվորներին ու կոզակներին քաղաքներից ու գյուղերից և նրանց ազատել ոստիկանական ամոթալի ծառայությունից: Եթե կառավարությունը չկատարի աշխատավոր ժողովրդի կենսական շահերն արտահայտող այդ պահանջները, ապա պետք է «ավելի մեծ ուժով, է՛լ ավելի մեծ թափով հարվածենք թշնամուն և համաժողովրդական զինված ապստամբության հուժկու պայթյունով սրբենք բռնակալության վերջին հետքերը, խորտակենք ստրկության վերջին շղթաները բանվոր դասակարգի և գյուղացիության վրայից» (նույն տեղը, էջ 126):

Հեղինակը հայ մարքսիստներից թերևս առաջինն էր, որ տալիս էր Հոկտեմբերի 17-ի մանիֆեստի իսկական գնահատականը՝ նրա հռչակումից անմիջապես հետո և այլ սկզբունքային խնդիրների հետ միասին առաջ էր քաշում նաև գյուղացիական հարցի անհապաղ լուծման անհրաժեշտությունը:

Բ. Կնունյանցը խստորեն քննադատում էր բուրժուական կուսակցություններին, որոնք հեղափոխության տարիներին հողային հարցը փորձում էին լուծել ցարական միապետության առկայության պայմաններում: 1905 թ. նոյեմբերի 23-ին «Նովայա ժիզն» թերթում հրապարակած «Եվս մի բուրժուական կուսակցություն» հոդվածում նա վերլուծեց այդ օրերին կազմված «Ազատամիտների» կուսակցության ծրագիրը: Կնունյանցն այստեղ ցույց տվեց, որ այն ինչպես այլ խնդիրներում, այնպես էլ գյուղացիական հարցում պարփակվում է բուրժուական սահմաններում, քանի որ հողային պրոբլեմը կադետների նման նախատեսում է լուծել կալվածատիրական հողերը փրկագնելու ճանապարհով: Հեղինակը նշում է, որ գյուղացիությունը իր հարցը



կլուծի հեղափոխական ճանապարհով և բնավ չի ցանկանում հատուցել նրանց «ովքեր հարյուրավոր տարիներ իրենցից քամել են վերջին հյութերը»:

1905 թ. հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին Պետերբուրգում գրած նշանավոր «Թռուցիկներում» Բ. Կնունյանցը նշում էր, որ բանվոր դասակարգը հաջողությամբ սկսել է պայքարն ինքնակալության դեմ, որ նրան հարում են բնակչության բոլոր ընչազուրկ, այդ թվում, իհարկե, առաջին հերթին աշխատավոր գյուղացիությունը: Նա ցույց էր տալիս, որ իսկական ազատություն կարող է հռչակել միայն ժողովուրդը՝ իր շահերի համար պայքարող բանվոր դասակարգի գլխավորությամբ: Այդ դասակարգը նպատակ է դրել «բոլոր գործարանները, փաբրիկաները, հողերը և աշխատանքի համար անհրաժեշտ մյուս նման գործիքները որպես սեփականություն տալ ամբողջ ժողովրդին, որպեսզի դրանցով կարողանան աշխատել բոլորը և համատեղ օգտվեն ընդհանուր աշխատանքով ձեռք բերված հարստությունից: Հենց դա էլ կոչվում է սոցիալիզմ» (նույն տեղը, էջ 177): «Թռուցիկներում» հեղինակը խստորեն քննադատում էր նաև դումայական ընտրությունների կարգը և ցույց տալիս, որ Դուման ընտրում են բոլոր կալվածատերերը, կապիտալիստները և այլ կարգի հարուստները, իսկ միլիոնավոր բանվորներ, գյուղացիներ և աշխատավոր այլ զանգվածներ զրկված են այդ իրավունքից: Նա ընթերցողին բերում է այն եզրակացության, որ Դուման չի կարող լուծել ո՛չ բանվորական, ո՛չ գյուղացիական և ոչ էլ այլ կարևոր հարցեր:

1906 թ. Կնունյանցը հրապարակեց «Բանվորների դեպուտատների առաջին սովետը» խորագրով գրքույկը, որտեղ հանգամանորեն վերլուծում է Պետերբուրգի սովետի գործունեությունը՝ շոշափելով նաև գյուղացիական հարցը: Կնունյանցը ցույց է տալիս, որ ցարական վարչակարգը գյուղացիներին ենթարկում է անլուր ճնշումների ու բռնությունների, նրանց դրել է այնպիսի ծանր կացության մեջ, որ չեն կարողանում վճարել հարկերն ու տուրքերը: Ապա նշում է, որ ապստամբության օրերին մայրաքաղաքի սովետը որոշեց հարաբերությունների մեջ մտնել հեղափոխական կազմակերպությունների հետ և օգտագործել նրանց ուժերը: Իբրև այդպիսին ընտրեց նաև գյուղացիական միությունը և նրա հետ մտավ մարտական համաձայնության մեջ՝ «որպես հեղափոխական գյուղացիության կազմակերպություն»: Բայց սովետը չուներ իր ագրարային ծրագիրը: Բ. Կնունյանցը գտնում էր, որ դա սովետի բացասական կողմերից մեկն էր: Գյուղացիական միության ներկայացուցիչները, մասնակցելով սովետի նիստին, առաջարկություն մտցրին, որ ժողովուրդն իր վրա չի վերցնի նոր փոխառությունների վճարումը: Նրանց առաջարկությունն ընդունվեց և դրան ավելացվեց նաև այն, որ ժողովուրդը հրաժարվում է տուրքերի վճարումից:

Դրանք, իհարկե, մասսաների հեղափոխական պայքարն ակտիվացնող միջոցառումներ էին, որոնք շուտով տվեցին իրենց դրական արդյունքները:

Բ. Կնունյանցը գյուղացիական հարցի մասին իր հայացքներն ավելի հանգամանորեն շարադրեց «Գիտակից բանվորները ընտրական կամպանիայում» հոդվածում, որը գրել էր Պետերբուրգի բանտում և լույս ընծայել բոլշևիկյան «Առաջին ժողովածուում» 1907 թվականին: Նա այն համոզմունքն է հայտնում, որ գյուղացիները բանվորների «գլխավո՛ր ընկերներն են ազատության համար մղվող պայքարում»: Անշուշտ, նրանք բանվորներից պակաս գիտակից են, կազմակերպված ու փորձված, բայց բանվորները նրանց կօգնեն: Չէ որ բանվորները հազարավոր թելերով կապված են գյուղի հետ, նրանք գյուղում ունեն հարազատներ, ծանոթներ, բարեկամներ: Շատերը, ժամանակավորապես հաստատվելով քաղաքում, կրկին հետ կվերադառնան և նորից կապրեն իրենց համագյուղացիների հետ: Ահա այդ բոլոր կապերը պետք է օգտագործեն բանվորները և լուսավորեն գյուղը: Իսկ նրանք, ովքեր չեն գնում գյուղ, պետք է գործեն նամակներով: Գյուղացիները ուշադրությամբ լսում են նրանց և կարդում ուղարկած նամակները՝ «մինչև մաշվելը» (տե՛ս նույն տեղը, էջ 403):

Բանվորները պետք է գյուղացիներին բացատրեն քաղաքական կուսակցությունների ծրագրերը, պատմեն նրանց գործունեության մասին, «ցույց տան, թե ովքեր են պաշտպանում ազատությունը, ովքեր են նրա թշնամիները, ովքեր են նրա կեղծ անհուսալի բարեկամները»: Նրանք իրենց նամակների հետ հարկ է, որ գյուղ ուղարկեն թռուցիկներ, պրոկլամացիաներ, գրականություն և նպաստեն գյուղացիների քաղաքական գիտակցության բարձրացմանը՝ չմոռանալով, որ գյուղացիների համար իրենց խոսքն անհամեմատ ավելի շատ է կարևոր, քան ծախված տերտերների քարոզները և զեմստվոների ու ամեն տեսակ այլ պետերի քաղցր ճառերը:

Բ. Կնունյանցը գտնում էր, որ բանվորների ու գյուղացիների համագործակցության համար անհրաժեշտ է սերտ հարաբերություններ հաստատել փաբրիկաների ու գործարանների և գյուղացիների լիազորների միջև, հրավիրել համատեղ ժողովներ, քննարկել նրանց հուզող խնդիրները: Պետք է ստեղծել ժողովրդական վստահության արժանի դումա: Սակայն այդ դուման «ինքնին անզոր կլինի որևէ բան անելու, եթե նրա թիկունքում կանգնած չլինեն կազմակերպված, համախմբված ժողովրդական մասսաները: Կատարելով ընտրողների կամքը՝ դեպուտատները պետք է հույսերը դնեն այդ ընտրողների պաշտպանության վրա: Ժողովրդի անունից պայքարի դուրս գալով ջարդարարների ու մարդասպանների կառավարության դեմ՝ մեր դեպուտատները պետք է հավատացած լինեն, որ վճռական րոպեին ժողովուրդն ինքը կմիջամտի վեճին և սեփական ուժերով կճնշի թշնամու դիմադրությունը» (նույն տեղը, էջ 407):

Բոգդան Կնունյանցն առաջիններից մեկն էր, որ դեռ 1903 թ. խնդիր դրեց, որ սոցիալ-դեմոկրատիան պետք է ունենա իր ագրարային ծրագիրը, որ անհրաժեշտ է բռնագրավել արքունական, կալվածատիրական ու վանքապատկան հողերը և տալ գյուղացիներին: Նա իրավամբ նկատեց, որ 1905 թ. դեկտեմբերյան զինված ապստամբության ժամանակ մայրաքաղաքի սովետի գլխավոր վրիպումներից մեկն այն էր, որ չուներ որոշակիորեն մշակված ագրարային ծրագիր: Իր գաղափարակիցների հետ միասին Բ. Կնունյանցը մերկացրեց ցարական կառավարության 1905 թ. հոկտեմբերի 17-ի հրապարակած մանիֆեստը և ցույց տվեց նրա լիբերալ բուրժուական բովանդակությունը: Նա հանգամանորեն նշեց սոցիալ-դեմոկրատիայի դերը գյուղում և անհրաժեշտություն համարեց դումայական պայքարի զուգակցումը հեղափոխական շարժման հետ:

Բ. Կնունյանցը մահացավ 1911 թ. 33 տարեկան հասակում: Չնայած քիչ ապրեց, բայց կատարեց մեծ գործ՝ գրավելով իր արժանի տեղը լենինյան գվարդիայի շարքերում: Բ. Կնունյանցի թողած տեսական ժառանգությունը կարևոր նշանակություն ունեցավ բոլշևիկյան կուսակցության ոչ միայն պրոլետարական, այլև գյուղացիական մասսաների ազատագրական պայքարը ճիշտ ուղիով տանելու գործում:

ՀԱՍՄԻԿ ՀԱՄԲԱՐՅԱՆ

---



# ՆՈՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Մեծ Հոկտեմբերին նվիրված գրականության ցանկը մշտապես հարստանում է նորանոր ուսումնասիրություններով: Այն վերջերս լրացավ ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Բ. Ղարիբջանյանի նոր գրքի* լույսընծայմամբ, որն ընդգրկել է մեծ թվով աղբյուրներ: Այնտեղ ցույց է տրված, թե ինչպես Վ. Ի. Լենինը իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում, շարունակելով և զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հեղափոխական ուսմունքը, բազմակողմանիորեն մշակեց և հիմնավորեց Ռուսաստանում հեղափոխության օրյեկտիվ անխուսափելիությունը, որի իրականացումը Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի և նրա ավանգարդ բոլշևիկների կուսակցության ինտերնացիոնալիստական գործն էր:*

*Հեղինակը, խիստ քննադատելով բուրժուական տեսաբանների անհիմն պնդումները, ցույց է տալիս, որ լենինիզմը, Հոկտեմբերյան հեղափոխությունը երբեք չեն եղել սոսկ ռուսական երևույթ, այլ ունեն ինտերնացիոնալիստական բնույթ և ներազդում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման վրա:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն արմատապես փոխել է մարդկության պատմության զարգացման ընթացքը երկրագնդի բոլոր աշխարհամասերում, նոր իմաստ և բովանդակություն տվել համաշխարհային պատմությանը:*

*Այնուհետև գրքում լուսաբանված է Հոկտեմբերյան հեղափոխության դերը ցարական Ռուսաստանի կազմի մեջ մտնող նախկինում ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարում: Մասնավորապես սված է, որ սովետական երիտասարդ կառավարության առաջին իսկ կազմում Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսարիատի և նրան առընթեր լեհական, հայկական, բելոռուսական, հրեական, լատիշական, լիտվական և այլ ազգային կոմիսարիատների ստեղծումը լենինյան ազգային քաղաքականության կենսագործման վառ դրսևորումն էր:*

*Հայտնի է, որ բուրժուական պատմագրությունը կեղծել և այսօր էլ ջանք է թափում կեղծելու սովետական բազմազգ պետության քաղաքականության էությունը, ճգնում է խեղաթյուրել փաստերը և ապացուցել, որ բոլշևիկյան կուսակցությունը դադարել է ինտերնացիոնալ ուժ լինելուց և արտաքին ու ներքին քաղաքականության մեջ առաջնորդվում է զուտ ռուս ազգի շահերով: Հեղինակը մարքսիզմ-լենինիզմի դիրքերից հիմնավորապես քննադատում է բուրժուական պատմագրության այդ մտայնությունը: Միաժամանակ շեշտված է այն իրողությունը, որ Հոկտեմբերը ուղի հարթեց Ռուսաստանի բոլոր ազգերի ոչ միայն իրավական, այլև սոցիալ-տնտեսական իրավահավասարության համար:*

*Գրքում հեղինակն անդրադարձել է նաև Հոկտեմբերյան հեղափոխության տարեգրության մեջ մտած հազարավոր ինտերնացիոնալիստներին, որոնք մասնակցել են Ձմեռային պալատի գրոհին, Մոսկվայի Կրեմլի գրավմանը, հեղափոխական ու քաղաքացիական կռիվներին: Հեղինակը հետաքրքիր օրինակներով ցույց է տվել չեխ, հունգարացի, լեհ, պարսիկ, անգամ հնդիկ և այլազգի ոչ միայն առանձին ինտերնացիոնալիստների, այլև խմբերի մասնակցությունը Անդրկովկասում սովետական իշխանության հաստատմանն ու ամրապնդմանը:*

*Հեղինակը հանգամանորեն լուսաբանել է, թե անցած 70 տարիների ընթացքում մեծ Հոկտեմբերն ինչպես է նպաստել աշխարհի բոլոր երկրների աշխատավոր զանգվածների հեղափոխականացմանը, կոմունիստական կուսակցությունների առաջացման, ամրապնդման պրոցեսին, նրանց գործունեությանը:*

*Այնուհետև գրքում ասված է, որ ճակատագրի բերումով աշխարհով մեկ սփռված աշխատավոր հայության ճնշող մեծամասնությունը կանգնեց Հոկտեմբերի ազատարար դրոշի տակ, անհուն բերկրանքով ողջունեց Սովետական Հայաստանի ծնունդը և իր համեստ, բայց արժանի ներդրումն ունեցավ համաշխարհային հեղափոխական շարժման մեջ:*

* Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— «Մեծ Հոկտեմբերը պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակն է», «Հայաստան» հրատ., 1987, 223 էջ:

Հեղինակի բերած հետաքրքիր փաստերից երևում է, որ սփյուռքահայությունը՝ Ամերիկայի, Ֆրանսիայի, Հունաստանի, Բուլղարիայի, Սիրիայի, Իրաքի, Լիբանանի, աշխարհի մյուս երկրների առաջադեմ ուժերի հետ ուս-ուսի կանգնած սովետական երիտասարդ երկրի հետ համերաշխության շարժման դիրքերում։ Սփյուռքահայ աշխատավորության շատ ներկայացուցիչներ գինվորագրվեցին կոմունիստական շարժմանը, ստեղծեցին իրենց հայկական կոմունիստական, բանվորական, դեմոկրատական, երիտասարդական և այլ կազմակերպությունները, որոնք գործում էին տեղական կոմունիստական կուսակցությունների հետ համագործակցած։

Թե ինչպես էին հայ կոմունիստները ներգրավվում կոմունիստական շարժման մեջ՝ երևում է 1919 թ. Պլովդիվում կազմակերպված «Հայ բանվորական կոմունիստական միության» հայ աշխատավորությանն ուղղված կոչում, որը որպես գլխավոր խնդիր առաջ է քաշում հայ աշխատավորների մասնակցության անհրաժեշտությունը համաշխարհային պրոլետարիատի ինտերնացիոնալ պայքարի, Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների պաշտպանությանը։

Գրքի վերջին գլուխը նվիրված է մեծ Հոկտեմբերի ինտերնացիոնալիստական գաղափարների հաղթարշավին։ Այստեղ քննության են առնված մի շարք կարևոր, արդիական հարցեր։ Հետհոկտեմբերյան տարիների համաշխարհային հեղափոխական փորձը վկայում է ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության միջազգային նշանակությունը, բովանդակ աշխարհի ժողովուրդների հեղափոխական, ազգային-ազատագրական պայքարի հետագա ծավալման գործում նրա դերը։

Գրախոսվող աշխատությունն արժեքավոր ներդրում է մեծ Հոկտեմբերի ինտերնացիոնալիստական նշանակության լուսաբանման գործում։

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Հանձնված է շարվածքի՝ 21. 07. 88 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 17. 08. 88 թ.։ ՎՖ 04015։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 15.632։ Պատվեր՝ 1333։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։